ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՃԶԸ.

# ԳՈՒԳԱՐՔԻ ՎԱՆՔԵՐԸ

ԳՐԵՑ

ԴԿՏ. Հ. Հ. ՈՍԿԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1960

# DIE KLÖSTER
# DER PROVINZ GUGARK'

VON

Dr. P. HAMAZASP OSKIAN

MECHITHARIST



WIEN

MECHITHARISTEN-BUCHDRUCKEREI

1960

# ԳՈՒԳԱՐՔԻ ՎԱՆՔԵՐԸ

ԳՐԵՑ

ԴԿՏ. Հ. Հ. ՈՍԿԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1960



## ԵՐԿՈՒ ԽՕՍՔ

«Հանդէս Ամսօրեայ»ի 1957 Թ. 1—1959 Թ. 11 տարեշրջաններու մէջ զանազան խորագիրներով Գուգարքի վանքերու մասին լոյս տեսած յօդուածներու արտատպութիւնն է այս հատորը:

Ստիպուած եմ — լուսաբանելու համար — անգամ մը եւս (հմմտ. աստ էջ 318) արտայայտուելու, որ անոնց հրատարակութեան ընթացքին լոյս ընծայուեցան երկու շատ կարեւոր գրութիւններ: Առաջինը Կ. Ղաֆադարեանի «Սանահինի վանքը եւ նրա արձանագրութիւնները» (Երեւան 1957), որ դժբախտաբար այն ատեն ձեռքս հասաւ, երբ արդէն երկարատեւ տքնաջան աշխատանքէ յետոյ պատրաստած էի Հաղբատի եւ Սանահինի վանքերու արձանագրութիւններու համեմատական-քննական լիակատար հաւաքածոն, սակայն բարեբախտաբար անոր հրատարակութենէն առաջ՝ եւ ես լաւագոյն համարեցայ զայն մամուլի յանձնելէ հրաժարիլ: Զի թէեւ Սանահինի արձանագրութիւնները միայն նկատի ունէր, բայց յուսով եմ որ մերձաւոր ժամանակի մէջ նաեւ Հաղբա-

տի արձանագրութիւններն ալ նկատառումի
կ'արժանան: Հրաժարեցայ, զի Ղափադա-
րեան ջանք չէ խնայած իր երկին գիտական
արժէք տալու, մանաւանդ լուսանկարումնե-
րով: Երկրորդը՝ Եղիազարեանի Սանահինի
մասին գրած յօդուածները (Էջմիածին ամ-
սագիր, 1958, Թ. Ը. էջ 41, Թ. Թ. 47, Թ.
ԺԲ. էջ 56), որոնք լրջօրէն ուսումնասիրած
են նոյն վանքի շէնքերը, հիմնարկութիւնը եւ
հակիրճ պատմութիւնը: Այս գրութիւնը ա-
ւելի ուշ կրցանք ճարել: Անոր մէջ ամփո-
փուած են կէտեր, որոնք կրնային այս երկին
մէջ ամփոփուիլ եւ կէտեր ալ, որոնց մասին
դիտողութիւններ պիտի համարձակէինք
ընել:

Մեր այս հատորին մէջ Գուգարքի երկու
հոյակապ վանքերու նկարներէն շատ քիչ
դրուած են: Անոնցմէ ոմանց նկարները
կարելի է տեսնել Լուսանկար հաւաքածոյ
հնութեանց Արարատեան աշխարհին Բ. հտր.
եւ Եղիազարեան-Մարտիրոսեանի Հայոց
հին ճարտարապետութեան նշմարք (ռուսե-
րէն), տպ. Ս. Պետերբուրգ, 1911) գործե-
րու մէջ:

Հ. Հ. Ո.

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ
# (ԿԱՄ ԳՈՒԳԱՐՔԻ ՎԱՆՔԵՐԸ)

## 1· ԱԳԱՐԱԿ ԳԻՒՂԻ ՄԵՆԱՐԱՆԸ

Ագարակ գիւղի մերձ կայ մենարան մը, որ չեմ կարծեր թէ մենաստան եղած ըլլայ այլ անհատի մը ճգնարանը, ուր դուցէ ուրիշ հետեւորդ ալ ճգնած ըլլայ (Ջալալեան Ս. Վ., Ճանապարհորդութիւն ի Մեծն Հայաստան, Ա. մասն, Տփխիս 1842, էջ 125)։

## 2· Ս· ԱՆԱՊԱՏ, Ս· ԳԷՈՐԳԻ ԵՒ ՆԱՃԽՈՒՆ ՎԱՆՔԵՐԸ

Ասոնք, ինչպէս ուրիշ քանի մը ուխտատեղիներ[1] հաւանօրէն ունեցած ըլլան չատ ակաւաթիւ միաբաններ — բացառութիւն կազմելով Ս. Անապատը։ Կը գտնուին Մեծ ու Փոքր Բօլնիսի մէջ ու չուրջը եւ ունին քանի մը արձանագրութիւններ, որոնք արժէք չեն ներկայացներ։ Առաջինին մասին «Ծերունիք լուեալ ի հարց պատմեն թէ Անապատս այս լի էր միաբանութեամբ, ուր ժողվեալ պարարդէին ի մշտամոմունչ սաղմոսերգութիւնս, ամկայն յաւերել եւ յամայանալ փարթամ նահանգիս այսմիկ ի ձեռն անդութ լենկթամայ անչքացեալ աւերեցաւ եւ անապատս այս, միաբանք որոյ ցիր ցան եղեալ գնացին ի գանագան վանօրայս Հա–

---

[1] Թէ Խաչգունդ եկեղեցին ալ վանք ունեցա՞ծ է, չէ կարելի հաստատել (Արձագանք, 1884, էջ 631)։

*յատանի եւ եկեղեցիս այս մնայ յայսպիսի ողբալի դրութեան»* (*Ջալալեան, Ճամբորդութիւն, Բ. Մաս, էջ* 81—106, *հմմտ. Արձագանք*, 1884, *էջ* 42, *Նոր Դար*, 1889, *էջ* 129 *եւ Մշակ*, 1884, *Թ.* 181—182)։

### 3. ԱՆԴՐԷԻ ՎԱՆՔԸ

*Կայան բերդի դիմաց, Աթոռիկ գիւղին մերձ, Հաղբատէն բաւական հեռու. աւերակ։ Վարդան Արեւելցիին վարդապետական աթոռը եւ մշտնջենական հանգստավայրը* (*հմմտ. Արարատ*, 1887, *էջ* 306—307, *Ջալալեան, Ճամբ. ի Մեծն Հայաստան, Ա., էջ* 82 *եւ իմ Արցախի վանքերը, Վիեննա* 1953, *էջ* 178)։ *Արցախի վանքերէն մաս մը եւ փոխադարձաբար Գուգարքի վանքերէն մաս մը կարելի է մէկուն եւ միւսին վերագրել նկատի ունենալով դարերու ընթացքին սահմաններու ընդլայնումն ու անձկացումը* (*հմմտ. վարը*)։

### 4. Ս. ԱՍՏՈՒԱԾԱՄԱՅՐ ՎԱՆՔԸ

*Ս. Աստուածամայր վանքը բարձրացուած է Լալուարի ստորոտը, Ախտալի գիւղին մերձ։ Անոր մասին Ջալալեանց կը գրէ. «Մերձ սորա* (*Ախտալիի*) *է ուխտն Աստուածամայր հոյակապ եւ երկնանման կաթուղիկէիւ, որ զտեսողսն հիացուցանէ զարմանցմամբ, մանաւանդ արտաքին չքնաղ քանդակագործութիւնն բազմօք անցանէ զներկայ ճարտարապետութեամբ։ Եկեղեցին է կա—*

ուցեալ ի բարձրագոյն վիմի ի վերայ երկուց սեանց եւ գաւիթ նորա շրջապատեալ է ամրագոյն պարսպաւ։ Այս տեղի երբեմն եղեալ է եպիսկոպոսարան Յունաց, այլ թէ իսկապէս է Յունաց[2] թէ Հայոց, չէ յայտ» (Ճամբ. ի Մեծն Հայաստան, Ա., էջ 85)։ Եթէ Հայերու ալ վերաբերած չըլլայ բայց հոն Հայեր գտնուած են եւ հայկական ազդեցութիւն ու միջամտութիւն հոն եղած է, ինչպէս սա պարագայէն կարելի է եզրակացնել՝ «Մերձ սորա գոյ մատուռ եւ խաչ փոքրիկ, գրեալ ի վերայ խաչին Կանգնեցաւ խաչս օգնական Աւագայ յառաջնորդութեան Համազասպայ եւ ի ծինամծղարութեան Պետրէի ի թուին Հայոց ՈՂԳին» (անդ, էջ 85)։ Բնականաբար մեր եզրակացութիւնը ճիշդ կ'ըլլայ եթէ մատուռը վանքին մաս կը կազմէ։

Ջալալեանց կը շարունակէ իր նկարագրութիւնը՝ «Այս վանք յարտաքին կողմանէ գեղեցիկ է քան զմերձեկայ վանօրայս» եւ կը յաւելու «Որ եւ եղեւ ապաստանարան բազմաց յերեսաց թշնամեաց, բայց յետոյ աւերեցաւ ձեռամբ Օմէրին խանի եւ մեռան գերեցան աստի բազումք ի քրիստոնէից» (անդ, էջ 85. Հմմտ. Ազգր. Հանդ. 1901, է.—Ը., էջ 437—436, Եփրիկեան, Բնաշխ. Բառարան, Ա., էջ 76 եւ Արարատ, 1887, էջ 309)։

---

[2] Կարելի է զայն նաեւ վրական վանքերու շարքին մէջ դասել (Հմմտ. Ազգր. Հանդ. 1901, է.—Ը., էջ 427—436)։ Կոչուած է լոկ Ախտալիի վանքը։

## 5. ԲԱՐՁՐԱՔԱՇ Ս. ԳՐԻԳՈՐԻ ՎԱՆՔԸ ԿԱՄ ՃԵՐՄԱԿ ՎԱՆՔԸ

Դսեղ — այժմ Թումանեան — գիւղի հիւսիս արեւելեան կողմը եւ անկէ երեք քիլոմեթր հեռու բարձրացած է Մամիկոնեաններու անուան պատիւ բերող վանք մը որ կը կոչուի Բարձրաքաշ Ս. Գրիգորի կամ Ճերմակ վանք: Անոր մասին Գ. Սարգիսեան ունի կարեւոր ուսումնասիրութիւն մը, որմէ կը քաղեմ հետեւեալ ընդարձակ տեղեկութիւնները եւ զոր կը գնահատեմ մեծապէս, զի հեղինակը վանքը տեսած է, քննած է եւ իրմէ յառաջ հոն այցելողներու կարդացած արձանագրութիւնները նկատի առած է եւ համեմատած եւ ուղիղը ջանացած է երեւան հանել:

«Առաջին շէնքը, սկսած հիւսիսից երեք շէնքերէ կը բաղկանայ, առաջաշէն փոքր եկեղեցին է, որին Լալայեանը յայտնի չէ ինչ աղբիւրից քաղելով Ս. Յարութիւն անուն է տալիս: Դա փոքր չափերի (9, 7, 5, 2, մ.) մի պարզ սրահ է, կոփածոյ, մոյգ կապտագոյն բազալտից: Արեւելեան պատի ճակատը, աբսիդը, դռների շրջանակները, թաղակալ գօտին եւ զոյգ կիսամոյթերը, որոնց վրայ երբեմն յենուած է եղեր թաղը գօտկող կամարը, բաց վարդագոյն սրբատաշ քարից են: Տանիքը փլուած է եւ եկեղեցու ներսը մօտաւորապէս երկու մետր բարձրութեամբ փլուածքով լեցուած: Ունի երկու դուռ արեւմուտքից եւ հարաւից եւ աբսիդի կողքե—

րին խորաններ» (Էջմիածին, ամսագիր, 1951, Է.—Ը., էջ 56)։ Լալայեան կը հաղորդէ թէ Անսին է, փոքր եւ հասարակ քարից շինուած (Ազգր. Հանդ. 901, Է.—Ը., էջ 423)։

Սարգիսեան կը շարունակէ «Երկրորդ շէնքը Մեծ եկեղեցին ամբողջովին սրբատաշ, բաց դեղնագոյն եւ բաց վարդագոյն քարերից կառուցուած է։ Արեւելեան կողմից ունի շատ լայն եւ քիչ խորութիւն ունեցող ... աբսիդ, որի երկու կողքերին կան կրկնայարկ խորաններ։ Արեւմտեան կիսում, պատերից քիչ հեռու տեղաւորուած են երկու հատ բազմակող ... բազալտէ սիւներ գեղեցիկ խոյակներով, որոնց վրայ յենուած է բարձր գեղեցիկ միակ կանգուն մնացած կամարը, որի կենդրոնում վարդագոյն ներկուած, երկրաչափական քանդակ, մի մեդալիոն կայ։ Շատ գեղեցիկ եւ օրիգինալ բարդ քանդակներ ունի հարաւային սեան խոյակը, որը սալակտիտների վրայ՝ ճակատից ունի խաչանման քանդակներ, արանքներում ծաղկեքանդակ զարդեր։ Յարակից պատերի եւ սիւների միջեւ եղած բաժանմունքները ծածկուած են, հարաւայինը հորիզոնական, իսկ հիւսիսայինը գմբեթաձեւ խորշ ունեցող առաստաղով։ Հարաւային բաժանմունքի առաստաղը իրար միացրած երեք ուղղանկիւն եռանկիւններից է։ Եռանկիւններն իրենց հերթին կազմուած են իրար յարմարեցրած, զանազան չափերի սեպաձեւ քարերից։ Հիւսիսային բաժանմունքի առաստաղի քարերը, ցածի կողմից, զարդարուած

են կարմիր, սպիտակ եւ մոյգ կապոյտ գոյնե-րով նկարուած գեղեցիկ օրնամենտներով, որոնց մի մասը մինչեւ օրս էլ պահել է իր գոյների թարմութիւնը։ Սիւները կապուած են յարակից պատերի հետ տարբեր ձեւի փոքր կամարներով, հարաւային բաժանմունքում սլաքաձեւ, իսկ հիւսիսայինում աղեղնաձեւ։ Այս եկեղեցին ունեցել է երեք դուռ...։ Մի ժամանակ այս եկեղեցին ունեցել է բարձր գմբեթ — որ դատելով փլուած քի յայտնաբերած քարերից... պատուած է եղել գեղեցիկ երկրաչափական քանդակներ ունեցող գօտիներով — որ տանիքին հետ փլուել է»։ Էջմիածին, 1951, Է.—Ը., էջ 56։

Այս եկեղեցւոյն նկարագրութիւնն է Լալայեանցի մօտ այսպէս՝ Հիւսիսային կողմում մի ուրիշ դուռ բացւում է Ս. Աստուածածին եկեղեցու մէջ։ Սա եւս կիսաւեր է, ձեղունը բոլորովին քանդուած։ Սա միայն երկու ամբողջական սիւներ ունի, միւսները կիսասիւներ են։ Մեծ կամարները ռոմանական են եւ փոքրերը արաբական։ Սեղանը բոլորակաձեւ է, կողքերին մի մի խորան։ Արեւմըտեան պատի մէջ ունի մի դուռն (Ազգր. Հանդ. 1901, Է.—Ը., էջ 432)։ Ինչպէս կ'երեւայ Լալայեանց միւս դռները անտեսած է։

Երրորդ շէնքը՝ ժամատունը 14,4×13,2 մ. չափեր ունի, որը սովորական է այդպիսի շէնքերի համար։ Ունեցեր է բազալտէ չորս սիւներ եւ պատերին կից 8 հատ կիսասիւներ,

որոնց վրայից բարձրացող կամարների վրայ հաստած են եղել տանիքը եւ երդիքը: Սիւներից կանգուն մնացել են միայն երկուսը. Ժամատան հարաւային կիսում: Այդ սիւների եւ յարակից պատերի որմնասիւների վրայից բարձրացող փոքր կամարները եւ դրան վրայ հաստած միջնորմները դեռ եւս մնում են, սակայն խարխուլ վիճակում եւ առանց այդ բաժանմունքները ծածկող տանիքի: Ժամատունը... ունեցել է կրկնայարկ խորաններ որոնցից վերջին զոյգը փլել է, իսկ առաջին զոյգը խարխուլ վիճակում է:

Ժամատունը սկզբում ունեցել է երկու մուտք արեւմուտքից եւ արեւելքից եւ մի էլ հիւսիսից, դէպի մեծ եկեղեցին: Արեւմըտեան մուտքի ճակատը զարդարուած է վառ կարմիր տուֆ քարից պատրաստուած հնգաթեւ աստղերով: Արեւելեան մուտքի արտասովոր չափեր ունեցող լայն եւ բարձր բացուածքը հետագայում, մեր կարծիքով, օգտագործել են Մարզպանի որդիները... այդ տեղում աբսիդ կառուցանելու նպատակով: Աբսիդին խորութիւն տալու համար, ժամատան արեւելեան պատի գծից դուրս, կառուցուած է, մի կցորդ, որի ճակատը, երկթեքի տակ, զարդարուած է գեղեցիկ կերպով ոճավորուած երկգլխանի արծուի քանդակով: Արծիւը մագիլների մէջ ոչխար ունի բռնած: Դա Մամիկոնեանների տոհմի զինանշանն է (Էջմիածին, 1951, Է—Ը., էջ 57):

Նախորդ եկեղեցին Լալայեանց կ՚անուանէ Ս. Աստուածածին, իսկ այս ժամատունը եկեղեցի կը համարի եւ զայն կը կոչէ Ս. Գրիգոր: Կը գրէ՝ Սրանից հարաւայինը, որ



կոչւում է Ս. Գրիգոր, ամենից մեծն եւ իւր արեւելեան ճակատին կրում է Մամիկոնեան տոհմանիշը, երկգլխանի թեւատարած արծիւ, ճիրանների մէջ գառը բռնած: Եկեղեցին 26 մետր երկարութիւն ունի — նախորդին հետ չի համաձայնիր — եւ նոյն չափ լայ-

նութիւն — նմանապէս: Ձորս սիւների եւ ութ կիսասիւների վրայ բոլորում են ռոմանական կամարներ, որոնց վրայ յանկած ձեղունն եւ կաթուղիկէն այժմ քանդուած են: Աւանդութեան ասելով այս կաթուղիկէն այնքան բարձր է եղել, որ նրա խնձորը դաշտից երեւացել է: Սիւները ութանկիւնի են, իսկ կիսասիւները բաղկացած են երեքական, կիսաբոլոր միացած սիւներից, գեղեցիկ պատուադանով եւ գեղաքանդակ խարիսխով (Ազգր. Հանդ. 1901, էջ 422—423): Ունի սեղան մը եւ երկու խորան:

Որքան կ'երեւայ նկարագրութիւններէն Լալայեանց եւ Սարգիսեան աւերակներու խառնակութեան եւ ուրիշ պարագաներու հետեւանքով գոյգ եկեղեցիները (մէկը՝ ըստ Սարգիսեանի՝ ժամատուն) իրարու խառնած են եւ մէկունը միւսին վերագրած:

Բարձրաքաշի վանքի շէնքերը ունին բազմաթիւ արձանագրութիւններ: Ջալալեան մեզի կը ներկայացնէ անոնցմէ միայն 25 հատ (Ճամբորդութիւն, Ա., էջ 108— 18): Իսկ Սարգիսեան 41 հատ (Էջմիածին, 1951, Թ.— Ժ., էջ 40—45 եւ ԺԱ.—ԺԲ., էջ 44—51):

Ինչպէս ծանօթ է արձանագրութիւններու Ջալալեանի ընթերցումները շատ սխալաշատ են, մինչդեռ անիկա կրնար շատ աւելի ճիշդ կարդալ քանի որ սոյն արձանագրութիւններն անոր ժամանակին աւելի անեղծ ըլլալու են: Այս մասին այլուր պիտի անդրադառնանք:

*Սարգիսեանի արձանագրութիւններու ընթերցումները շատ խղճմտօրէն եղած են։ Նաեւ կը հաստատէ թէ Ջալալեան արձանագրութիւնները սխալ կարդացած է։*

*Բարձրաքաշի արձանագրութիւններէն միայն կարեւորները յառաջ կը բերեմ.*

*Սագաշէն եկեղեցին ունի սա արձանագրութիւնները.*

---

*Ես Սարգիս ծառա Տեառն յիշեցի պահեղ ուրն Տն. եռ(ու) զիմ հոգո պաշարն յեկեղեցիս յառաջնորդութեան Տիրացու Վզին եւ Յակոբա, եղբարքս եռուն Ա։ ուր։ պատարագ ի տաւնի սրբոյն Սարգսի, որ խափանէ դատի (ի) Տոնէ։ (Նոյնը կ՝ընէ Ջալալեանք)։*

---

*Ի ՈԿԲ թվիս Հա(յ)ոց (Ես Գրիգ)որ որդի Աչոտոյ իմ հաւր տըված հո(ղն) եւ այլ յաւելի եկեղեցիս եւ սպասաւո(րք եռ)ուն ի սուրբ Սարգսիս տաւնին Գ պատարագ մին Ա(չոտոյ մին) Խուչուչին եւ մի ինձ Գրիգ(որի)։ Արդ որ զ(ժամն) կամ զհողս խլէ ՅԺԸ սր. հայրապ(ետաց) նզոված է եւ մեր մեղացս պ(ար-տակ)ան առաջի Աստուծոյ։*

---

*Մեծ եկեղեցւոյ եւ ժամատան արձանագրութիւններէն՝*

---

*Ի թու ՈՁԸ Ես Համլիկ որդի Սմբատա եւ Թոռն Համազասպա յազգէ Մամիկոնեանց կրկին միաբանեցա իմ գերեզմանատանս եւ*

տմուսին իմ Մամքան եւ ետու յԱստուածածինս տաւնական եւ Կարմիրքարն իւր ամէն եռանդով եւ հաստատեցին ինձ յիշատակ մատուռն մի զոր յիմ անուն շինեց եւ ետ ինձ հաւրեղբայր իմ Մարզպան որ անխա°(փա)ն մեր լինի պատարագն որ անդ լինի : Բ : Մամգանայ արնեն ի չարաթն : Էթէ ոք յիմոց կամ յաւտարաց մեծաց կամ ի փոքունց զգեղն խլէ կամ հակառակ կա եւ զմեր յիշատակն խափանէ Յուդայի եւ խաչհանուացն մասնակից է ՅԺԸ հայրապետացն նզոված է , մեր պագի եւ մեր մեղացն պարտական է առաջի Այ: Եւ ես Տիրացու վղ ամէն եղբայրութրս ընկալա զսոցա յոյսն եւ հաստատեցի արձանագրով որ կատարէ աւրհնի յԱյ ամէն:

---

Ի թւ ՈՀ ի թագաւորութեան Գէորգա որդոյ Թամարին եւ յիշխանութեան մեծ Իւանէի աթաբակին եւ նորին զաւակաց Աւագին եւ Շահնշահին ես Մարզպան որդի Սարգսի թոռն Համազասպեանց յազգէ Մամիկոնեանց սկսա շինել զԲարձրաքաշս վանք եւ զգերեզմանատեղ ինձ եւ զամենայն եկեղեցիքս յիմ հալալ արդեանց շինեցի եւ զՄադկուտն զիմ հայրենիքն զանձագին արարի զՍերակագոմս որ աւերակ եր շինեցի եւ ատանգե(ցի) եկեղեցոյս եւ յՈղջարերդ այգի մեծ եւ զարդարեցի սպասիւք նշանիւք խաչիգրենաւք (թանկագ)նի եւ զերկու եկեղեցիքն զաւագ բեմն ինձ պատարագել զՔս հանապազ եւ զՋրաւրհնեացն աւրն Մամքանա ամուսնո

*իմո որ խափանել ջանա կամ... եւ հանել յեկեղեցւոյս կամ յիմոց կամ յաւտարաց մեր մեղաց եւ խղճի պարտակ(ան)...ցն նզո-(վ)եա(լ) եղից(ի եւ որ) հաստատ պահէ զա-ւանդս յԱստուծոյ եւ ի սրբոց նորին աւրհ-նեսցին ամէն* (Էջմիածին, 1951, Թ.—Ժ., էջ 44, նման մը անդ Թ. ԺԱ.—ԺԲ., էջ 49:

---

*...(Ա)շտ որդի Գ(ալրգէ) մեծաւ յու-սով... յԱծածինս : Բ : կոտավար : Ա : մաս(ն) յե(կեղ)եցին որ ի Խրախն : Ա : մա(ս)ն Ծաղ-կուտն եւ հաստատեցի Այ միջնորդութեամբ եւ վկաութբ եւ կամակցութբ մաւր իմո եւ Ասլանա եղբաւր իմո եւ սպասաւորք որ ուխ-տիս եւոուն ինձ (ապա նզովներ) առաջի Այ եւ եղեւ գրութիս յառաջնորդութեան Տիրա-ցու վդ. եւ հաւր Յակոբայ հաստատ է կա-մաւն Այ Նոր Կիրակէին սկսեն առնել զիմ ժամն եւ աւրհնին ի Տէ :*

---

*Ի թւ ՈՂԴի յառաջնորդութեան Տիրա-ցու վդ ես Ասլանբէկ որդի Մարծպանա չի-նեցի զ : Բ : մատուռս զ : Ա : յանուն Մլքանա ամուսնո իմո եւ տուի զ... եւ Ժ : դեհեկան տարենն յԱկոսաւարոյս եւ մեծածախ աւետա-րան ոսկով եւ մարգարտով եւ ակամբ պա-տուականաւք զարդարած եւ հաստատեցի ար-ձանս... անխափան մինչ ի գալուստն Քի. արդ էթէ ոք յիմոց կամ յաւտարաց հակ(ա-ռակ)կա եւ զինչ տուել եմ խլէ կամ ժամն*

խափանէ մեր խղճի եւ մեղաց . . . յԱյ եւ յամենայն սրբոց Նորա ամէն:

---

Ի թու ՈՁՁ Յառաջնորդութեան Տիրացու ես Աչոտ որդի Գուրգէ միաբանեցա վանիցս եւ ետու յԱստուածածնիս Բ: Բ մեծ կոտավար եւ հաստատեցի արձանագրով միջնորդութեամբ Այ եւ կամակցութեամբ Ասլանա եւ սպասաւորք սուրբ ուխտին ետուն ինձ ի պատարագ ի տարոջն երբաւր Ասլանա, արդ էթէ ոք հակառակ կա գրելոցս եւ զհողն խլել ջանա եւ հ(անել ի վանիցս եւ մի)աբանութենս խափանէ յիմոց կամ յաւտարաց իմ եւ իմ ազգի մեղացն պարտական է առաջի Աստուծոյ Կաէնի եւ Յուդայի մասնակից եղիցի: Յ(ԺԸ հայրապետաց նզո)վեսցի: Նոր կերակէին արնեն զիմ ժամն եւ ուրհնին յԱյ եւ ի սրբոց Նորայ ամէն:

---

Յանուն Աստուծոյ ես Աչոտ որդի Գուրգէ Թոռն Աչոտի եւ Գրիգոր որդի Մարծպանա չինեցաք զՓայտաշէնն զկէսն մէր եւ կէսն Նմա ես զիմ բաժինն էտու ի Բարձրաքաշս վանն հոգո ամուսնո իմո Խորիշահի զատեր Երքանա իւր կալարումն ազատ յամէն չարէ եւ խատտացան: Ի: պատարագ ի տարոջն անխափան արդ ով խափանել ջանա զինչ ափել իմ յիմոց կամ յաւտարաց ապէ նզովս եւ մեր մեղացն պարտական է առաջի Այ: Նոր կերակէին հետ իրար արնեն զժամն որ ի մերագրած է եւ ուր(հ)նին յԱյ:

---

*Ի թու ՈՂԵ Յառաջնորդութեան Տիրացու վդլին ես Քուրդ որդի Գաւկաւին յիմ տապանատանէն ի դուս եկի ի Սանահնէն եւ միաբանեցա Բարձրաքաշիս կամակցութեամբ Գրիգորո եւ Ասլանապէկա որդոց Մարծպանա: Եւ ըստ կարի աւգնեցի շինութեան տանս եւ արարի ինձ գերեզմանատուն եւ այլ զինչ ունիմ յետ իմ անցման այս եկեղեցոյս լինի վկայութեամբ Այ եւ մարդկան Ասլանպէկա եւ Գրիգորո Համլկա եւ Աշոտո. արդ ով այս գրելոցս հակառակ կա եւ խափանել ջանա իմ մեղացն պարտական է առաջի Այ Կաենի եւ Յուդաի (մ)ասնակից եղիցի Յինանց տանեն զիմ ժամն եւ աւրհնին յԱյ ամէն:*

---

*Ես Գրիգոր եղբայր Տեառն Հա(մազաս)պա առաջնորդի որ ուխտին Հաղ(պատա միա)բանեցայ եկեղեցոյս եւ շինեցի զմատուռն արդե(ամ)բ իմով եւ սպասաւորք որ ուխտիս խոստացան (ի)նձ Զ պատարագ ի տաւնի սբ. Գրիգորի Աղուհ(ա)ցիցն կատարիչքն աւրհնին ի Քէ ամէն:*

---

*Ի Թ. ՈՂԱ Ողորմութեամբն Այ ես Սէվծի ծառա Մարծպանա եւ ամուսին իմ Կատա շինեցաք զմատուռս եւ այլ արդիւնք յէկեղեցիս տվաք Տիրացու վղ եւ միաբանքս խոստացան Ը. աւր պատա(րա)գել զՔս յանուն մեր Դ ինձ եւ Դ Կատային կատարիչքն աւրհնեալ եղիցին:*

---

Ողորմութեամբն Այ եւ կամակցութեամբ իմ պատրոնին Գրիգորի ես Արղան որդի Սէվ–ձէ եւ ամուսին իմ Մամա միաբանեցաք որ ուխտիս եւ տվաք Կ․ դէ(կան) առաջնորդ սուրբ ուխտիս Երէմիա եւ միաբանք էտուն ։ Դ ։ աւր պատարագ Խաչգիւտին ։ Բ ։ Գեղանի իմ աղբաւրն ։ Ա ։ ինձ ; Ա ։ Մամային կատարի ։

---

Այս արձան․․․ր է յանուն միաբանաց որք յուսոփն Այ միաբանեցան եւ գոլու չափ աւգ–նեցին չ(ի)նութեան տանս եւ մեք սպասա–ւորք ս(ր)ուխտիս ընկալեալ գյոյսն նոցա խոստացաք պատարագել զՔս ըստ իւրա–քանչիւր անուան ։ Ա ։ աւր Սարկաւագ իրից (եղ)բաւր Կիկային եւ կնոջ ի(ւ)րո Բ(ո)ցա–գեղին եւ Խա(թ)ունկանն ։ Բ ։ աւր Խաչուտին եւ ամուսնո իւրո Ա ։ աւր Խաչատր(ին) Ա աւր Աչոտո Ա աւր Եգանայ․․․ որի ։ Բ ։ աւր Զա․․․ին որդո Հէրիքի․․․ բաթեն․․․ քահա–նայի ։ Ա ։ Սառա․․․ բզադին եւ Շուշա․․․ ։

---

Ի թուի ։ ՈՂԹ ։ եւ յառաջնորդութեան Տի–րացու վդ ես Խափրան եւ կենակից իմ Թա–մար միաբանեցաք սբ ուխտին եւ ըստ կարի մերում աւգնեցաք տանս տվաք զմեր հոգոյ բաժինն ի զաւիթս եւ ետուն մեզ է ։ աւր պա–տարագ ի տարոջն ի տաւնի Խաչգիւտին․․․ ։

---

Ես Մայիքս գաւեակ Խորիշահի գատեր Մարծպանիս միայնրանեցա եկեղեցոյս եւ

սպասաւորքս եառւն ինձ ։ Բ ։ ար պատարագ ի տաւնի Հոխիսիմեանց կատարիչքն աւրհնին յԱյ ։

---

Ես Գրիգոր որդի Մարծպանայ յետ մահուան հաւր իմո շինեցի զԳրիգորաշէն եւ եառւ յիմս վանքս եւ զՍէրեգոմուց տափն եւ զմեծ Կոռասարն յԱգադակի զՓայտաշինո կէսն զաւագ որ նշանն աւետարան պատուական գրեան եւ զարդ էկեղէօ եւ այլ ար(դիւնք)ի զավի(թս) Տիրացու վզ եւ մխաթանքս սահմանէցին զմատուռն որ ի ըեմին յաջո կուռէ անդ պատարագել զՔս յանուն իմ անխափան ։ արդ որ հակառակ կա եւ զինչ ավել եմ խլէ(յէկղէց)ոյս յիմոց կամ յաւտարաց իմ մեղացն պարտական է առաջի Այ եւ որ զիմ ժամն խափանէ դատի յԱյ եւ եւ Գրիգոր էառւ զԱվան(ին) կէսն եւ զայգին Մամքանա ամուսնո իմո եւ նա եւ յէկեղէցին ու ի յիշատակ հոգո իւ(րո եւ սպաս)աւորք որ ուխտիս սահմանեցին ի չարաթն Բ աւր պատարագել զՔս յանուն նորա . . . զաւանդս աւրհնի յԱյ եւ որ խափանէ դատի ամէն ։

---

ՌՂԶ. ի թվականութեանս Հա(յ)ոց եւ յիշխանութեան աւէգերակոյ իշխանաց իշխանի Աւա(գի որդո) աթապակ Իւանէի ես Պաւաշ որդի Վասակա եւ թոռն Խաղբակա միաբանեցա որ ուխտիս Բարձրաքաշիս եւ էառւ ի շինութիւն տանս Ծ ։ զէկան եւ սպաւաւորք որ ուխտիս սահմանեցին Ա. քառն աւր

ժամք ի տարոջն արդ ով խափանէ զգրեալս կամ չարնէ զիմ ժամն դատի յԱյ եւ իմ մե– ղացն պարտական է առաջի Այ (Հմմտ. Նաեւ Արձագանք, 1885, էջ 20)։

Բարձրաքաշ վանքի բոլոր արձանագրու– թիւնները չուզեցի յառաջ բերել, զի ուզեցի կրկնութենէ խուսափիլ քանի որ վեց տարի յառաջ գանոնք բոլորը Մ. Սարգիսեան հրա– տարակած է խղճամիտ ընթերցումէ յետոյ։ Նաեւ մատնանշած է Ջալալեանի սխալ կամ սրբագրեալ ու լրացուցեալ ընթերցում– ները։ Կը գրէ՝ Ինչ վերաբերում է Ջալա– լեանին պէտք է ասել որ նրա վերծանու– թիւնները չատ սակաւ բացառութեամբ սխալ– ներ ու տարբերութիւններ ունեն վիմագրերի տեքստի համեմատութեամբ, մանաւանդ յա– տուկ անունների ընթերցման մէջ (կը բերէ օրինակներ)։

Բացի այդ նա սովորաբար միշտ ուղղա– գրում է վիմագիր տեքստը գրաբարի պա– հանջների համեմատ փոխելով բառամիջի եւ վերջաւորութեան տառերը, երբեմն սխալ է վերծանում կրճատումները, փոխում է բա– ռերի տեղերը եւ այլն (Էջմիածին, ամսագիր 1951, Թ.—Ժ., էջ 40—45 եւ ԺԱ.—ԺԲ., էջ 44—51)։

Ինչպէս կը տեսնուի Բարձրաքաշի վանքի մասին քարերը կը խօսին եւ արձանագրու– թիւնները մեզի հասցուցած են անոր տխու– րամած պատմութիւնը։







Հետաքրքրական է Բարձրաքաշ անունը կամ յորջորջանքը, որ կը մնայ մեկնութեան կարօտ — մի՞թէ Բարձրէն տեսնուող եւ իրեն քաշող թէ սրտերը դէպի վեր ու բարձր տանող ու քաշող: Զոյգ եկեղեցիներու անուններ անոր կցուած են եւ կոչուած է Բարձրաքաշ Ս. Գրիգորի վանք (Հմմտ. Ազգր. Հանդ. 1901, Է.—Ը., էջ 433—424) եւ Բարձրաքաշ Ս. Աստուածածնի կամ Աստուածամօր վանք (Հմմտ. Ջալալեան, Ճամբ., Ա., էջ 105): Արձանագրութիւններու մէջ աւելի տեղ Ս. Աստուածածին կը նշանակուի: Ուստի Սարգիսեան կը գրէ՝ «Նկատի ունենալով որ իւրաքանչիւր կրօնական տիպի շէնք իր յատուկ անունն է ունեցել, թւում է թէ Աստուածածին եղել է մեծ եկեղեցու անունը, որ տարածվել է ամբողջ վանքի վերայ, ուստի աւելի ճիշդ կը լինէր յուշարձանների խմբի անունն ընդունել ըստ Ջալալեանի: Սակայն նկատի ունենալով որ գործածական է եղել նաեւ Բարձրաքաշ մականունը, որ թերեւս աւելի հին է եւ որ ինքը վանքի կառուցող Մարզպան Մամիկոնեանը իր հին արձանագրութեան մէջ յուշարձանների խումբը անուանում է Բարձրաքաշ վանք, մենք էլ իբրեւ հաւաքական անուն ընդունում ենք վերջինը» (Էջմիածին, 1951, Է.—Ը., էջ 58):

Բարձրաքաշ վանքի հիմնարկութեան թուականը եւ յարակից պարագաները մեր ծանօթութեան չեն հասած: Հիմնուելով հե-



տեսեալ յիշատակագրութեան վրայ պէտք է ընդունիլ որ հայկական հին վանքերէն է։ Համայ կը գրէ՝ «Ես ծառայս Քրիստոսի եւ աղախին անպիտան Համայս դուստր Մամիկոնին, որ ոչ դուստր ունէի եւ ոչ որդի յիշեցի զիմ մահին աւրն... եւ արարի ինձ յիշատակարան եւ գնեցի ի հալալ արդեանց իմոց զսուրբ եւ զհոգելից եւ զաստուածային տառս զսուրբ Աւետարանս եւ տուի Բարձրաքաղիս սուրբ ուխտին եւ սքանչելագործ սուրբ Գրիգորին, ի ձեռն սուրբ եւ աստուածանման հայրապետին Տէր Վահանայ եւ նորա ընդրեալ միաբանից յառաջնորդութեան սուրբ ուխտին Տէր Վահանայ եւ միաբանքս խոստացան ի տարին Բ. աւր պատարագել զՔրիստոս յիմ անունս...։ Արդ ով զայս սուրբ Աւետարանս ի սուրբ Գրիգորայ հանէ կամ խլելով կամ տանելով կամ էլ ցեղ եւ զիմ յիշատակ խափանէ առաջի Աստուծոյ իմ մեղացն պարտական է» (Մառ Ն., Ցուց. հայ. Ձեռ. Սեւանայ, էջ 2, Զարբհանալեան, Մատենադարան, էջ 158, Բիւզանդիոն 1900, Թ. 1158 եւն)։

Բարձրաքաղիս պէ՞տք է ընթեռնուլ Բարձրաքաշիս (Աճառեան Հ., Անձնանունների Բառարան, տեսնել Համայ անունը), զի շ եւ ղ տառերու շփոթում տեղի ունեցած է, դարձեալ զի այս յիշատակագրութիւնը եւ վերը յառաջ բերուած արձանագրութիւնները իրենց բովանդակութեամբ իրարու շատ կը մերձենան, եւ նաեւ որովհետեւ Մամիկո–

նեաններու յիշատակութիւն մը — Մամիկոնին — կարծես զգալի կ՚ընէ ։

Ընդհանրապէս ընդունուած է թէ՝ «Ի ձեռն սուրբ եւ աստուածանման հայրապետին Տէր Վահանայ» արտայայտութեան տակ կ՚ակնարկուի Վահան Կաթողիկոսը, որ տասներորդ դարու վերջին քառորդին կամ քիչ մը յառաջ հայ Եկեղեցւոյ ղեկը վարած է (Զարբհանալեան, անդ, էջ 158, Տաշեան Հ. Յ., Ակնարկ մը հայ հնագրութեան վրայ, Վիեննա 1898, էջ 20 եւ Գէլցէր Հ., Համառօտ պատմութիւն Հայոց, Վիեննա 1897, էջ 110 եւն) ։

Նկատի ունենալով վերը յիշուածները եւ այն պարագան որ Ս. Յարութիւն սագաչէն եկեղեցւոյ ճարտարապետութիւնը զայն Ժ. դարու գործ կը ներկայացնէ կը խորհիմ թէ Բարձրաքաշի վանքին հիմնարկութիւնը եղած պիտի ըլլայ այն շրջանին երբ Հռոմներէն հալածուած հայ վանականներ եկան Հայաստանի մէջ ցրուեցան եւ վանքեր ու եկեղեցիներ կառուցին, ուստի եւ Ժ. դարու երկրորդ կիսուն (Հմմտ. Ասողիկ, Պատմ., էջ 173—175. Չամչեան, Պատմ. Հայոց, Բ., էջ 823—825) ։ Յետոյ ժամանակի ընթացքին վանքը աւելի բարեզարդուած է եւ յաւելուածներով եւ նորանոր շինութիւններով ու վերաշինութիւններով ճոխացած (Հմմտ. Ազգր. Հանդ. 1901, Է.—Ը., էջ 428) ։

Պր. Յ. Քիւրտեան կը գրէ՝ «Յիշատակարանին մէջ յիշուած հայրապետը Բարձրա–

քաշի հայրապետն է, որուն հետ նոյն ատեն կը յիշուին ընդրեալ միաբանները նոյն ուխտին, թող որ քիչ վերջ աւելի որոշ կը յիշուի յառաջնորդութեան սուրբ ուխտին տէր Վահանայ, ուրեմն այս Յիշատակարանը գրուած չէ 966ին, այլ ԺԳ. դարու վերջը, ատեն մը երբ ողջ էր Մամիկոն եւ իր աղջիկը Համայ» (Բազմավէպ, 1956, էջ 250—251): Սակայն ի՞նչու կրկին եւ այնքան մերձ միեւնոյն անձի յիշատակութիւնը: Նկատի ունենալով այս եւ այն՝ որ Մամիկոն Ա. (եթէ ուրիշ Մամիկոն մը չէ ակնարկուածը) ԺԳ. դարուն ապրած է եւ Գուգարքի կամ Դսեղի Մամիկոնեանները ԺԲ.—ԺԴ. դարերու մէջ գործած են, կը խորհիմ թէ գուցէ լաւագոյն լուծումն ըլլար՝ ընդունիլ Վահան անուն եպիսկոպոս մը կամ Գուգարքի հայրապետ մը, որուն ձեռքով Համայ իր նուէրը կը մատուցանէ: Յետին շրջաններու հայրապետ մը ընդունելու պարագային՝ այդ Յիշատակագրութիւնը չի կրնար ծառայել հաստատելու՝ թէ Բարձրաքաշի վանքը Վահան կաթողիկոսի օրով գոյութիւն ունէր:

Մեծ եկեղեցին կամ Ս. Աստուածածին եկեղեցին հիմնուած է 1221ին, ինչպէս վերը յառաջ բերուած արձանագրութենէն յայտնի է: Անկէ յառաջ շինուած կը թուի եւ ապա նորոգուած Ս. Յարութիւն եկեղեցին, իսկ ժամատունը հաւանօրէն 1231—1245ին (հմմտ. Էջմիածին, Է.—Ը., էջ 58—61): Մեծ եկեղեցւոյն բարերարն եւ զայն բարձրացնել

տուողն է Մարծպան կամ Մարզպան Մամի–կոնեան, որ որդին է Սարգիսի եւ թոռը՝ Համազասպի։ Անիկա եւ անոր ազգականներն ու համակիրները Բարձրաքաշի վանքը ըրած են իրենց գերեզմանատեղին կամ դամբարանը (հմմտ. վերը)։

Յառաջ բերուած արձանագրութիւններէն կ'իմանանք թէ Բարձրաքաշի վանահայր կամ առաջնորդ եղած են Տիրացու — որ կարող անձ եղած ըլլալ կը թուի — Երեմիա, Յովսէփ եւ գուցէ Յովհաննէս։

Բարձրաքաշի վանքը սրտերը իրեն քաշող ու սիրուած վանք եղած է։ Ընդունած է նուէրներ ու նպաստներ եւ փոխարէն ենթարկուած պարտաւորութիւններու։ Երբեմն այդպէս, սակայն ապա անտեսուած ու քայքայումի ենթարկուած (էջմիածին 1951, Ե.—Ը., էջ 56—61)։

6. ԲՆԻ ՋՈՐԻ ՎԱՆՔԵՐԸ

Ծուլավէրի արեւմտա–հարաւային կողմը, բայց գրեթէ վեց վերստ հեռու, Բնի ձորի անտառապատ լանջին կը գտնուի հին վանք մը, որուն խախկան անունը կը մնայ անծա–

[3] Այս վանքի մասին հմմտ. Արձագանք 1884. էջ 20. Նոր դար, 1888, Թ. 136. Արաքս 1897, էջ 47—48. Յովսէփեան Գ. արքեպ., Խաղբակեանք կամ Պռօշեանք, Ա., էջ 97, 111 եւ 178. Թորամանեան Թ., Նիւթեր հայկ. ճարտարապետութեան պատմութեան, Բ., էջ 124. Էփրիկեան Հ. Ս., Բնաշխ. Բառարան, Ա., էջ 407. Նոյնը՝ կանխաւ Բազմ., 1901, էջ 11 եւն եւն։

նօթ, եւ որ ծանօթ է լոկ իբրեւ Բնի ձորի վանք, զի այս վանքէն բաւական հեռու կայ ուրիշ վանք մըն ալ, որ կը կոչուի Բնի ձորի ներքին վանք։

Բնի ձորի մեծ վանքը, ճշդագոյնը՝ եկեղեցին շինուած է հասարակ քարով եւ ունի 10 արշին երկարութիւն եւ 8 արշին լայնութիւն։ Կաթուղիկէն տասը գեղեցիկ սիւներու վրայ կեցած է։ Լոյս կ՚ընդունի երկու նեղ ու երկնկեկ պատուհաններէ։ Ներս կը մտցուի կամարակապ դռնէ մը, որուն ճակատակալ քարին վրայ գրուած է «Թվ. ՌՃԺԲ կամաւն ամենակալին Աստուծոյ Յ. Բ. շինեցաւ ձեռամբ Տէր Օհանէս քհ.»։ Շրջապատուած է կրկին պարիսպով, որուն ներքինին մէջ կան քանի մը կիսաւեր սենեակներ։ Եկեղեցւոյ շուրջ կը գտնուին քանի մը գերեզմանաքարեր, որոնցմէ ոմանք արձանագրութիւններով օժտուած են։ Տապանաքարի մը վրայ կը կարդացուի. Ես ի սաղէն Ծովանչէցի անուն իմ Թամազ կոչի, որ շինեցի սուրբ եկեղեցիս ի յիշատակ ծնողաց իմոց (Ազգր. Հանդ. 1901, Է.—Ը., էջ 332—333)։

7. ԳԱՂՁԱՅ Ս. ՍԱՐԳԻՍԻ ԵՒ ՄԱԿԱՐԱՑ ՎԱՆՔԵՐԸ

Գուլապերքի Կողրոփոր գաւառի Կոթի գիւղին արեւելեան կողմն է Գաղայ Ս. Սարգիսի կամ Սարգսի վանքը, որուն մասին խօսած եմ «Արցախի վանքերը» գրութեանս մէջ (Վիեննա 1953, էջ 217)։ Նոյն երկին

մէջ արտայայտուած եմ նաեւ Ս. Մակարի վանքի մասին (անդ, էջ 235—240)։ Այս վանքի նկատմամբ շատ լուրջ ուսումնասիրութիւն ունի Գ. Սարգիսեան, որ նմանապէս ուրիշ վանքերու մասին գնահատելի յօդուածներստորագրած է (Հմմտ. Բարձրաքաշի վանքը, Հանդ. Ամս. 1957, էջ 14 եւ Էջմիածին, ամսագիր 1953, Դ., էջ 33 Դեղձնուտի վանքը եւն)։ Այդ գրութեան մէջ կը տեսնուի թէ Սարգիսեան որքան բծախնդրութեամբ կարդացած է վիմագրութիւնները եւ ինչքան աչքառու եւ ակնբախ տարբերութիւններ կան անոր եւ Բարխուդարեանի ու Ջալալեանի ընթերցումներու մէջ։ Նաեւ նկարագրութիւններու մէջ ունի շատ ուշադիր եւ յատկանշական նկատողութք (Էջմիածին 1954, Բ., էջ 22, Գ., էջ 19, Դ., էջ 30, Ե., էջ 46, Մակարի վանքի մասին հմմտ. դեռ Ջալալեան, Ճամբ., Ա., էջ 150)։

Գաղայ Ս. Սարգիսի մասին Յովհ. Ղրիմեցին կը գրէ՝ «Կանգնել գխաչս սուրբ Սարգիս անուամբ ավօրեցան նախնիք ի հռչակաւոր Թաչէ անտի Գաղայ դաշտին, զոր ընդ եկեղեցւոյն որ անդէն կազմեաց եւ օրհնեաց սուրբն Մեսրոբ թարգմանիչն յանուն սրբոյն Սարգսի, եղեալ զատամն մի ի մասանց նորա ի Թաչի անդ, զորմէ գրէ Վարդան. «Եւ զԳողանուանի բերդ եւ զաւառ... (ուր) կայր սուրբ հռչակաւոր ուխտն...» (Հմմտ. Պատմ., էջ 145)։ Այս տեղի գաղաթան ուր կայ աւե–

բակ յիշատակեալ եկեղեցւոյդ կոչի մինչեւ ցայսօր ի բնակչաց Գաղայ սուրբ Սարգիս» (Թ. 329, Ձեռագիր Նոր Ջուղայի, էջ 86—87):

Գաղայ Ս. Սարգսի վանքը, Մակարի վանքը, ինչպէս այլուր (Հմմտ. Հանդ. Ամս. 1857, էջ 14) արտայայտուեցայ՝ Անդրէի վանքը[4] եւ ուրիշ քանի մը վանքեր, որոնց մասին վերոյիշեալ երկիս մէջ խօսած եմ, կրնան Գուգարքի եւ փոխադարձաբար Արցախի վանքեր նկատուիլ աչքի առջեւ ունենալով դարերու ընթացքին սոյն նահանգներու սահմաններու ընդլայնումներն ու անձկացումները:

---

[4] Այս վանքի մասին (Հմմտ. Հանդ. Ամս. 1957, էջ 14) կը բաղձամ սա յաւելումներն ընել: Երգնկեանց կը գրէ՝ «Ծալայից վերեւ փոքրիկ ձորալանջում եղել է աւելի խիտ բնակութիւն, այժմ Հաղբատացիք այս տեղ դոմեր են շինել... Հէնց այս դոմերի առաջ է գտնւում Ս. Անդրէի մենարանը բոլորովին խախտուած, որի միայն հիմնապատերն են երեւում, սորանում է գտնւում մէկ մեծ խաչարձան, իսկ տակն ալ սալաքար գերեզման, իր մէջ ամփոփելով մեր մեծ գիտնական Վարդան վարդապետ Բարձրաբերդցու մարմինը. գերեզմանաքարի վրայ փորագրուած է Թուականն Քրիստոսի 1273 (Ազգր. Հանդ. 1898. Ա., էջ 324): Իսկ Յովհաննէս Ղրիմեցի կանխաւ կը գրէր «ի Հաղբատաձոր երեւին կրկին մատրունք...: Երկրորդն է յայնկոյս գետոյ յանդիման բերդին Կայանոյ ի գագաթան մեծ ինչ բլրոյ առ երի Աթոռիկն կոչեցեալ տափաղլուխ բարձրաւանդին եւ սա կերտուած յանուն վիմայ փոքրագիր ի չափ տարածութեան մետասան կամ երկոտասան ոտնչափուց ընդ երկայն եւ եօթն ոտանց ընդ լայն: Այս մատուռն որ ըստ մեծագոյն մասին փլուզեալ այժմ կայ յանուն Անդրէի Առաքելոյ եւ է նոյն ինքն միայնարան մեծին Վարդանայ» (Թ. 239 Ձեռագիր Նոր Ջուղայի, էջ 88—89):

8. Ս. ԳՐԻԳՈՐԻ ՎԱՆՔԸ

*Կայենոյ Ախրդամանի մերձ է Ս. Գրիգորի վանքը, որուն «Վսեմ է կերտուածն ի ներքոյ եւ արտաքոյ»* (*Ջալալեան, Ճամբ.*, *Ա.*, *էջ* 127): *Ունի սա փոքրիկ արձանագրութիւնը. Ես Տալիթայս միաբանեցայ սուրբ ուխտիս Գրիգորի* (*անդ*, *էջ* 127): *Անոր մօտ է սպաչէն եկեղեցի մը որ կրնայ անոր վերաբերած ըլլալ:*

9. ԴՐՍԻ ՎԱՆՔԸ

*Այսպէս կոչուած է Կայենոյ բերդին եկեղեցին, ուր վտանգներու պարագային Հաղբատի միաբանները կը բերէին ու կը պահէին իրենց թանկագին գանձը — Ս. Նշանը*[5] *Ջալալեան, Ճամբ. ի Մեծն Հայաստան, Ա.*, *էջ* 81): *Անոր մասին պէտի խօսիմ, երբ Հաղբատի վրայ ընդարձակօրէն գրեմ:*

10. ԽՈՐԱԿԵՐՏԻ ԿԱՄ ԽՕՋԻԿ ՎԱՆՔԸ

*Հիմնուած է Աղ-Քէօրփիի հարաւ արեւելեան կողմը, Լալուարի ստորոտը, Սանահին վանքի եւ Ջանախչի գիւղի մօտերը եւ գիւղացիներէն գրեթէ միշտ կոչուած է Խօջիկ վանք:*

---

[5] *Հաղբատէն շատ հեռու չէ ծիվանք գիւղատեղին* (*Արարատ*, 1887, *էջ* 302), *կանգնուա՞ծ էր հոն արդեօք մենաստան մը: Ձեմ կարծեր, զի ունինք շատ մը վայրեր, որոնք «վանք» վերջաւորութիւնն ունին եւ ստուգապէս վանք կամ մենաստան չեն ունեցած* (*հմմտ. Ծաղկեվանք, Ջալալեան, Ճամբ.*, *Բ.*, *էջ* 92 *եւ Ազգր. Հանդ.* 1901, *Է.—Ը.*, *էջ* 345):

Բաղկացած է եկեղեցիէ մը եւ գաւիթէ մը· երկուքն ալ գեղեցիկ գմբէթով պսակուած եւ սրբատաշ քարով շինուած: Եկեղեցին ունի 11 արշին լայնութիւն եւ 18 արշին երկարութիւն: Ներքուստ անսիւն է եւ միայն կիսասիւներ կը վերամբառնան կամարները, որոնց վրայ կը հանգչի երեսուն նուրբ սիւներու վրայ հաստատուած սիրուն կաթողիկէն: Անոր չորս անկիւնները կան մէկական խորաններ: Զոյգ դռներէն մէկը կամարակապ է եւ կը բացուի գաւիթին մէջ, որ վեց արշին երկար եւ այնքան ալ լայն է եւ ուր ութը կիսասիւներու վրայ կը բոլորւին ռոմանական կամարներ, կրելով իրենց վրայ կաթողիկէն (Ազգր. Հանդ. 1901, Է.—Ը., էջ 425): Ջալալեան կը գրէ՝ «Պարանոց կաթուղիկէին է գեղեցիկ կերտուածով սնաձեւ յօրինեալ ի ներքուստ գմբէթ կաթուղիկէին չքեղ արուեստիւ կամարակապեալ է» (Ճամբ., Ա., էջ 87):

Տաճարին արեւմտեան գլխուն, կիսաւեր գաւթի կողմէն կայ հետեւեալ կարեւոր եւ մեծ արձանագրութիւնը:

Ի թվիս Ջ (ՋԱ) ի հայրապետութեան Տն. Կոստանդեայ (*) արհիեպիսկոպոսութեան Համազասպայ աշխարհակալութեան եւ պարոնութեան Սաթունին ի թագաւորութեան Դաւթի ես Ստեփանոս որդի Յոհաննա գնեցի զԹոռակերտ եւ զիր գեղեան զայգին որ ի Տղւեր վանիցս յաւիտեան ի ԿԹ· ոսկիտակ տուրանի եւ շինեցի զսա ի հիմանէ

սկսել յուսով անմահին Աստուծոյ լինել ինձ եւ եղբարց իմոց եւ որդոց արձան կենդանի տեղի գերեզմանի մինչեւ գայ Քրիստոս եւ տանէ ողորմութիւն ինձ եւ իմոցն ի փառս իւր. արդ որք խախտել ջանան զիմ տուրսն (°) յեկեղեցւոյս եւ կամ զտեղիս հանել յայդէ իմմէ խախտեսցին եւ անկցին հաւատոց եւ ք(րի)ստոնէութենէ (Յովսէփեան, Գար. արքեպ. Նիւթեր եւ ուսումնասիրութիւններ հայ արուեստի եւ մշակոյթի պատմութեան, Պրակ Ա., Երուսաղէմ 1935, էջ 11—12. հմմտ. Ազգր. Հանդ., անդ, էջ 425):

Ջալալեան ուրիշ արձանագրութիւններ ևս տեսած է, զի կը գրէ՝ «Յարձանագրութեանց եղելոց ի վերայ եկեղեցւոյս երեւի թէ մեծն Վարդան եղեալ է վանահայր սոյն մենաստանիս, ըստ որում ի կողակ կամարին գրեալ կայր Մեք երկու եղբարքս միաբանեցաք ըստ հրամանաւ տիեզերալոյս վարդապետին Վարդանայ... (Ճամբ., Ա., էջ 87):

Եկեղեցւոյ հիւսիսային պատին վրայ կայ. Աստուած ողորմի Վելի որդիս... Պայի պարոն Ծահնազարին եւ իւր կողակից Ռուսուն-դանին, որ այս սուրբ եկեղեցիս եւ իւր ծնողաց անդարձումն եւ իւր որդին Կորկին շինեցին: Այս սուր տակը Թվ. ՌՃԺ — 1661 — յիշեցէք ուստայ Ծահնազարին (Ազգր. Հանդ. 1901, էջ 426):

Թէ եկեղեցին եւ թէ գաւիթը բաւական փտտուած են: Առաջինին կից ուրիշ ագօ-

*թավայր մը եղած կ'երեւայ գատելով աւե–րակներէն ։*

*Վանքը երբեմն պարսպապատ եղած է ։ Պարիսպէն ներս կան սենեակներու եւ գե–րեզմանաքարերու աւերակյտեր ։*

*Վանքի մօտ՝ «պարսպից դուրս երեւում են շինութիւնների աւերակներ ։ Գուցէ այս եղած լինի Խոռակերտ քաղաքը, որի անու–նովն էլ վանքն է կոչւում եւ որը ժառանգեց Աշոտ Ողորմածի որդի Գուրգէնը կամ Կիւ–րիկէն» (անդ, էջ 426 եւ Ջալալեան, Ճամբ․, էջ 87) ։*

*Այս վանքին շինութեան ու պատմու–թեան մասին միայն վերյիշեալ քարերը կամ արձանագրութիւնները կը խօսին եւ անոնցմէ մէկուն վրայ հիմնելով Ջալալեան (հմմտ․ վերը) Վարդան Արեւելցին — որ յայտնի է թէ այս կողմերը եղած է եւ ծանօթութիւն–ներ ունի շրջաններու մասին (հմմտ․ Պատմ․, էջ 90) այս վանքին առաջնորդ կը դնէ (Ճամբ․ ի Մեծն Հայաստան, Ա․, էջ 87, հմմտ․ դեռ վանքին մասին Արձագանք, Գ․, էջ 612—614 եւ Էփրիկեան, Բնաշխ․ Բառա–րան, Բ․, էջ 194) ։*

11․ ԽՆԱՏԻ ՎԱՆՔԸ

*ԺԱ․ դարուն ծաղկած, մայրաքաղաք վանքերու շարքին մէջ դասուած այս վանքը Հ․ Էփրիկեան Գուգարքի մէջ կը դնէ (Բնաշխ․ Բառարան, Բ․, էջ 181) ։ Այն ստոյգ է որ Գրիգոր Մագիստրոս, որ այս վանքին հան–*

դէպ լի է համակրանքով եւ անոր վրայ իշխանութիւն կամ իրաւասութիւն ունենալ եւս կը հաստատէ, Գուգարքի մէջ սեպհականութիւններ ունէր, սակայն այս պարագան ամէն տարակոյս չի բառնար եւ լիապէս չի հաստատեր Խնատի վանքին Գուգարքի մէջ ըլլալուն: Գրիգոր Մագիստրոս ունի (Կ.) Թուղթ առ հայրն Սամուէլ առաջնորդ վանիցն Խնատի: Իսկ երբեմն աւուրս վերածանութեամբ ընթերցուածխ...: Եւ (ԿԱ) Առ կրօնաւորսն Խնատին, յորժամ վախճանեցաւ ծերն Սամուէլ. Ծանեայ գծայրագոյն ծերունոյն փոխումն (Գր. Մագիստրոսի Թուղթերը, էջ 98, 100. հմմտ. նաեւ Հ. Ղ. Ինճիճեան, Ստորագրութիւն հին Հայաստանեայց, Վենետիկ 1822, էջ 521—522):

### 12. ԽՈՒՃԱՊԻ ՎԱՆՔԸ

Գուգարքի Տաշիրք կամ Ձորափոր գաւառի համանուն գիւղին մերձ կայ համանուն վանք մը, որուն հիմնարկութեան պարագաները կը մնան անծանօթ, բայց ներքին կազմութիւնը այնպէս կը ցուցնէ թէ յունական վանք եղած ըլլայ եւ կամ յունականի վերածուած յետագային: Ջալալեան կը գրէ՝ Առ սոփաւ — Խուճապ գեղջ — գտանի մենաստանն Խուճապ եւ թէ ո՞յր անուամբ է կառուցեալ այս սուրբ ուխտ չէ յայտ... վանքս այս գեղեցիկ է յարտաքին կողմանէ, մանաւանդ եղերք լուսամտից, որոյ երկայնութիւնն է 28 կանգուն, նոյնպէս եւ լայնու–

թիւն, կառուցեալ կայ ի վերայ երկուց սեանց, ի պարանոց կաթուղիկէին գոն գլուխք կենդանեաց: Կից սորա է եկեղեցին եւ դարանամման խորանք (Ճամբ. ի Մեծն Հայաստան, Ա., էջ 88 եւ Բնաշխ. Բառա– րան, Բ., էջ 181):

### 13· Ս· ԿԱՐԱՊԵՏԻ ՎԱՆՔԸ

Ծանօթ հետեւեալ յիշատակագրութենէն·

«Արդ այսմ... (Աւետարանիս) փափա– գող եղեալ Եփրիանոս եւ ես գաղափարել զսա ի ժամանակս վերջինս ի թուականու– թեանս Հայոց ՋԽ (1491) ի գաւառին Գու– գարաց ընդ հովանեաւ սուրբ Կարապետի ուխտիս եւ այլ բազմապատիկ սուրբ Նշա– նացս...: Այս եղեւ ի թագաւորութեան Վրաց Կոստանդինոյ եւ ի կաթողիկոսութեան Հա– յոց տէր Սարգսի եւ յեպիսկոպոսութեան մերոյ տէր Յուսկանն...: Եւ զիս զանպի– տան զՄելքիսեթս անյապաղ յիշեսջիք...» (Թորոս Աղբար, Ա., էջ 120—121):

### 14· ԾՈՒՂՐՈՒՂԱՇԷՆԻ, ՀՆԷ ԿԱՄ ՁՆԷ, ՍԻՈՆԻ ԵՒ ՁՈՅԳ ԱՆԱՆՈՒՆ ՎԱՆՔԵՐ

Ասոնք, որոնց շարքին միացնելու օգա– կելու է նաեւ Ախտալայի Ս. Աստուածա– մօր կամ Մարիամ Աննայի վանքը (հմմտ. Հանդ. Ամս. 1957, էջ 14) Գուգարքի–Բոր– չալուի վրական վանքերէն են, որոնք ժա– մանակի ընթացքին ունեցած են նաեւ հայ միաբաններ եւ որոնցմէ ոմանք գուցէ նա–

*խաղկէս նոյն խսկ հայկական հիմնարկութիւններ եղած։ Ասոնց մասին այլուր — ընդարձակօրէն —, երբ Հայաստանի օտար կամ օտարազգի վանքերու նկատմամբ երկասիրութիւնս առիթ ունենամ լոյս ընծայելու, բայց արդ հմմտ. ասոնց մասին Ազգր. Հանդ. 1901, Է.—Ը., էջ 338 եւ 427—436. Ջալալեան, Ճամբ. ի Մեծն Հայաստան, Բ., էջ 81—106 եւ Լումայ, 1897, էջ 233—234 եւ 258)։*

### 15. ԿԱՐՄԻՐ ՎԱՆՔ ԿԱՄ ՔԱԼԱՆԹԱՐԵԱՆՑ ՎԱՆՔԸ

*Օձունի եւ Պուճար վանքի մօտ, շինուած՝ կարմրագոյն փխրուն քարերով (անախուն) եւ ասկէ իր Կարմիր վանք յորջորջումը, իսկ Քալանթարեանց վանքը անունը գուցէ կը պարտի իր բարերարներուն։ Այս՝ յատուկ իմաստով վանք չէ (Լումայ, 1897, էջ 270)։*

### 16. ԿՈԹԻ ՓՈՐՈՑ ԿԱՄ ԸՆԿՈՒԶԱՑ ԳՈՄԻ ՎԱՆՔԸ

*Գուգարքի՞ մէջ։ Ծանօթ ստ յիշատակարանէն.*

*Գրեցաւ (Յայսմաւուրք) ի Թուիս Հայոց ՊՀԶ — 1427 — Ահեկի ԻԲ ի տեղիս որ աւարտեցաւ ի Կոթի փորոյ վանս որ կոչի Ընկուզայ գոմ ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս. զՅովհաննէս եւ զՄարգիս յիշեցէք, որ մեզ ջուր են բերել, զՄարտիրոս որ մեզ մեղր է բերել (Նօտարք, էջ 86, ուր եւ կը դրուի Գուգարքի մէջ)։*

17. ՀՈՌՈՄԱՅՐԻ (Ս. ՆՇԱՆԻ) ՎԱՆՔԸ

*«Օձուն գիւղից դէպի հարաւ Զորագետի ձախ ափին, ձորի գլխին է կառուցուած Հոռոմայր վանքը, որ երեք բաժանմունքից է բաղկացած»* (*Լումայ*, 1897, *էջ* 275) *կամ ըսենք կազմուած է զանազան այրերէ, եւ մատուռներէ-եկեղեցիներէ* (*Ազգր. Հանդ.* 1901, *էջ* 376—377): *Ասոնցմէ մէկն է Ս. Նշան, որ մեծ ուխտատեղի է: Եկեղեցին ընդարձակ է, կամարակապ, անսիւն եւ սրբատաշ քարերով շինուած: Արձանագրութեան մը համաձայն Իգնատիոս* 1251*ին կը կառուցանէ կամ կը վերականգնէ եւ դարձեալ Զուգէ դուստր Սարգիս Քարնջեցի Մամիկոնեանի* 1326*ին անոր նուիրատու կ՚ըլլայ* (*Լումայ*, 1897, *էջ* 276): *Եկեղեցիներէն մէկն ալ նուիրուած է Աստուածամօր* (*Ջալալեան, Ճամբ. ի Մեծն Հայաստան, Ա.*, *էջ* 92. *Հմմտ. Նոյնի մասին Արձագանք*, 1884, *էջ* 631):

*Աւանդութեան եւ գրաւոր տեղեկութիւններու համաձայն Ս. Նշանի վանքը հիմնուած կ՚ըլլայ Է. դարուն յոյն Վասիլ իշխանի ձեռքով. որ այդ տեղ կը ճգնի եւ այդ է պատճառը որ Հոռոմայր կը կոչուի, իսկ յետագային իբր եւ թէ հոն կը բերուի Պետրոս Գետադարձ կաթողիկոսի Ս. Խաչի մասունքը եւ կը ստանայ Ս. Նշան յորջորջանքը* (*Ջալալեան, անդ*, *էջ* 92 *եւ Ազգր. Հանդ.*, *անդ*, *էջ* 377):

*Հոռոմայրի վանքը կամ անոր եկեղեցի–*

ները հարուստ են արձանագրութիւններով, որոնք մեզի կը ներկայացնեն անոր բարերարները — Զաքարէ, Իւանէ, Առաքել, Մարխամ եւն — եւ առաջնորդներն ու միաբանները — Սամուէլ, Պանդալ(էոն), Յովհաննէս, Պետրոս[6], Խաչատուր, Սարգիս ու Գերասմ: Ահաւասիկ արձանագրութիւններու կարեւորները.

(Ի ճակատ խաչին որ կայ ի վերայ դրան եկեղեցւոյն ի Թուին ՈԾ).
Կանգնեցաւ տէրունական:
(Ի վերայ պատուանդանին).

Ես Առաքել որդի Գրիգորի ընակեալ ընդ հովանեաւ սուրբ Նշանիս եւոու ի Հայրենի գանձագին այգուն որ ի դուռդնանց գիմ բաժինն ի սուրբ Նշանն չինեցի զգաւիթս կանգնեցի զխաչս տէրունական ի ժամանակի ծերութեան իմոյ եւոու յիշատակ հոգւոյ իմոյ եւ գրաւական փրկութեան անձին իմոյ, աւուրն այցելութեան արկի եւ զմատնարկն չինեցի եւ զտակառպետոցն եւ լցի զմատնարկն ի գրատանս յետ անցման իմոյ, ես Սամուէլ առաջնորդ սուրբ ուխտիս միաբանաւքս գրեցաք զոր տաւնի սրբոյն Յովհաննու եւ Յակովբայ գչորս եկեղեցիս երկու օր Խաղողին, երկու աւր Առաքէլին. Ս. Գրիգորայ առնեն

[6] Պետրոս անուն վանահայրը ի ծնէ կոյր մը կը յուսաւորէ անոր աչքերուն մերձեցնելով Ս. Նշանը (Վարդան, Պատմ., էջ 129, հմմտ. նաեւ Ազգր. Հանդ. 1901, Է.—Ը., էջ 378):

կամ ի մեծաց կամ ի փոքունց, որ զայդին խլէ կամ զժամն խափանէ նզովս առցէ Աստուծոյ (Ջալալեանց, Ճամբ. ի Մեծ Հայաստան, Ա., էջ 93—94)։

(Առաջի դրան դաւթի յարեւմտեան կողմն ի վերայ անհարթ քարի ի թուին Հայոց ՉԼԵ).

Կամաւն Աստուծոյ ես Մարխաս միաբանեցայ սուրբ Նշանիս սուրբ Գրիգորայ պահարանն զուգեցի, հայր Պանտալի եւ միաբանքս հաստատեցաք Գրիգորի Ակռականդեցւոյ տօնին առնեն ժամ զամէնն եկեղեցիքս. ով խափանէ դատի յԱստուծոյ եւ կատարիչք աւրհնին ի Տեառնէ (անդ, էջ 94)։ (Կից սորա).

Կամաւն Աստուծոյ ես Մարկ լուսիկս մեծ յուսով միաբանեցայ սուրբ Նշանիս եւ ետու զիմ հոգւոյ պաշարն եւ հայրս Սամուէլ եւ միաբանքս ետուն սուրբ Կուրղի հինգ շաբաթ աւրն զամէն եկեղեցիքս պատարագել. ով խափանէ ՅԺԸ հայրապետաց նզովեալ եղիցի առաջի Աստուծոյ (անդ, էջ 95) ամէն։ (Կից սորա).

Մեծ յուսով յԱստուած եւ ի սուրբ Նշանս միաբանեցաւ Հասան եւ ետ հաստրակաց տաւնին երեք աւրավար արտ, մին եղն, արդ մեք հայր Յովհաննէս եւ միաբանքս յինանց առաջի չաբաթ աւրն տուաք Յոհաննու Կարապետի տաւնն զամէն եկեղեցիս որ առ Քրիստոս պատարագեն, կատարիչքն աւրհ–

*նին յԱստուծոյ եւ խափանուղքն դատին ի Տեառնէ (անդ, էջ 94—95)։*

*(Կից սորա).*

*Կամաւն Աստուծոյ ես պարոն Ծահեկլին Աստուծոյ շնորհիւն միաբանեցայ սուրբ Նշանիս եւ ետու զիմ հոգւոյ պաշարն եւ Հայր Պանդալ եւ միաբանքս հաստատեցաք ի տանի Թէոդոսի Թագաւորին զամէն եկեղեցիքս պատարագել (զԹրխատոս անուն Պարոն Ծահէկլին, ով խափանէ դատի ի Տեառնէ (անդ, էջ 95)։*

*(Ի ներքոյ սորա).*

*Կամաւն Աստուծոյ ես Ասկիս միաբանեցայ Հոռոմայրի սուրբ Նշանիս եւ տուի հարիւր սպիտակ զիմ հոգւոյ պաշարն։ Ես հայր Սամուէլ եւ այլ միաբանքս հաստատեցաք զեօթնանանից երկու աւուրքն, ով սոցա ժամն խափանէ Նրզովս առցէ (անդ, էջ 95)։*

*(Ի ներքոյ սորա).*

*Կամաւն Աստուծոյ ես Բարսեղս եւ ամուսինն իմ Թամար միաբանեցաք սուրբ Նշանիս եւ տուաք զմեր հոգւոյ պաշարն, հայր Պետրոս եւ միաբանքս հաստատեցին յայտնութեան ուԹաւրէքն զամէն եկեղեցիս զԹրխատոս պատարագել մեզ անխափան (անդ, էջ 95)։*

*(Կից սորա ի Թուին ՉԼԵ).*

*Մեծ յուսով յԱստուած եւ ի սուրբ Նշանս միաբանեցաւ Վահրամ եւ ամուսին իւր Ասփի եւ ետուն զիւրեանց հոգւոյ պաշարն եւ մեք հայր Սամուէլ եւ միաբանքս*

հաստատեցաք սուրբ Խաչի շաբաթի երկուաւրն ամենայն եկեղեցիք ժամ Վահրամայ կէսն Ասփայ առնեն, որ խափանէ դատի ի Տեառնէ, կատարիչքն աւրհնին ի Տեառնէ (անդ, էջ 96)։
(Ի ներքոյ սորա)․

Կամաւն Աստուծոյ ես Իւանէս եւ ամուսինն Խաթուն եւ զիմ քոյրս միաբանեցաք սուրբ Նշանիս եւ տուաք մեր հոգւոյ պաշարն, հայր Խաչատուր եւ միաբանքս հաստատեցին Նիկողայոսի տաւնին ժամ զամէն եկեղեցիքս, որ խափանէ դատի յԱստուծոյ, կատարիչքն աւրհնին ի Տեառնէ, Թուին ՋԵ (անդ, էջ 96)։
(Ի ներքոյ սորա)․

Հրամանաւն Աստուծոյ եւ Սերադեղս եւ ամուսինն իմ Մարիամ միաբանեցաք սուրբ Նշանիս եւ ետուն իւրեանց հոգւոյ պաշարն, հայր Պանդալ եւ միաբանքս հաստատեցաք անխափան ամենայն հայրապետաց ժամ զամէն եկեղեցիքս Սերադեղի, որ խափանէ դատի յԱստուծոյ (անդ, էջ 96)։
(Կից սորա)․

Կամաւ Աստուծոյ Բարաք եւ որդիք իւր միաբանեցան եւ ետուն սուրբ Նշանիս իւրեանց հոգւոյն պաշարն եւ մեք հայր Պանդալ եւ միաբանքս հաստատեցաք ամէն եկեղեցիք բարաքայ առնեն, որ խափանէ դատի ի Տեառնէ, կատարիչքն աւրհնին, Թուին ՋԼԹ (անդ, էջ 96—97)։
(Կից սորա ի Թուին ՋԼԹ)․

Կամաւն Աստուծոյ ես Սարգիս ծօճկա-նանց եւ ամուսինն իմ Արղութխաթուն միա-բանեցաք սուրբ Նշանիս, չինեցաք զանգա-կատունն եւ ետու զիմ հայրենի ջրաղացն, Կողպակն արտերն յետ վախճանի․ հայր Պան-դալ եւ միաբանքս հաստատեցաք Բարդու-ղիմէոսի տաւինին ամէն եկեղեցիքս պատա-րագեն Սարգսի եւ կէսն ամուսնոյն հաս-տատէ, զինչ գրած ով խափանէ դատի ի Տեառնէ (անդ, էջ 97)։
(Կից սորա)․

Կամաւն Աստուծոյ ես Սմբատ եւ ամու-սինն իմ Վանէի միաբանեցայ սուրբ Նշանիս ետու զճապէզի չրջանն․ հայր Պանդալ եւ միաբանքս հաստատեցաք զԵղխական չարաթ ուրն զամէն եկեղեցիքս նոցա առնեն կիրակի ուրն, ով խափանէ դատի ի Տեառնէ թուին ՉԽԵ (անդ, էջ 97)։
(Ի ներքոյ սորա ի թուին ՉԼԵ)․

Մեծ յուսով յԱստուած եւ ի սուրբ Նշանս Ումար եւ ամուսինն իմ Հրանոյշ եւ որդիք մեր միաբանեցաք սուրբ Նշանիս եւ տուաք զմեր հողւոյ բաժինն ի սուրբ Նշանս եւ մեք հայր Սամուէլ եւ միաբանքս սիրով ընկալաք եւ հաստատեցինք սուրբ զՍտեփաննոսի տաւնի զամէն եկեղեցիքս որ ի Քրիստոս պատարագեն զժամն Ումարին եւ կէսն ա-մուսնոյն իւր, ով խափանէ մեր մեղացն պարտական է եւ կատարիչքն ուրհնին Աս-տուծոյ (անդ, էջ 98)։
(Կից սորա)․

Կամաւն Աստուծոյ ամենակալին ես Խաթութ հաւէտվորս միաբանեցոյ սուրբ Նշանիս եւ ետու զիմ հոգւոյ պաշարն, հայր Պանդալ եւ միաբանքս հաստատեցաք Սանդխտոյ տաւնին զամէն եկեղեցիք որ Քրիստոս պատարագեն Խաթութին եւ Գրիգորոյ աւրն եւ մեր Նշանին․ խափանիչքն դատին ի Տեառնէ եւ կատարիչքն աւրհնին յԱստուծոյ (անդ, էջ 98)։

(Կից սորա ի Թուին ՉԿ).

Կամաւն աստուծոյ ես Ոսմիքս եւ ամուսինն իմ Տիկին միաբանեցաք սուրբ Նշանիս եւ ետու զիմ հոգւոյ պաշարն, հայր Կարապետ եւ միաբանքս հաստատեցին Հրեշտակապետացն տաւնին զամէն եկեղեցիքս, ով խափանէ դատի յԱստուծոյ, կատարիչքն աւրհնին ի Տեառնէ (անդ, էջ 98)։

(Ի վերայ սեմոց սուրբ Նշան եկեղեցւոյն).

Ի Թուին ՈԼՁ ես Ամիր Սպասալար Զաքարէ եւ Իվանէ շինեցաք զեկեղեցիս եւ տուաք զԾէնուլիկն սուրբ Նշանիս վասն մեր երկար կենդանութեան եւ մեր ծնողաց հոգւոյն առնեն ժամն երկու աւր Զատկին ամիր Սպասալար Սարգիսին եւ երկու աւր յայտնութեան ով զգիւղն առնեն կամ զժամն խափանեն, նզովս առնեն (յ)Աստուծոյ (անդ, էջ 98)։

(Ի մէջ Աստուածամայր եկեղեցւոյ, ի ճակատ սեղանոյն).

Կամաւն Աստուծոյ ես Իգնատիոս վարդապետ շինեցի զեկեղեցիս վասն կենդանու–

թեան Եղբուղին եւ Աքքայ խաթունին յիշատակ հոգւոյ իմոյ եւ ծնողայ մերոյ եւ եղբարց եւ աշխատաւորաց (անդ, էջ 99)։
(Հանդէպ սորա ի թուին ՈՃ)․

Ես Սարգիս եւ Զաքարէ որդիք Յակոբայ եւ Խալին մայր մեր շինեցաք զեկեղեցիս յիշատակ հոգւոյ մերոյ ի հայրութեան Սամուէլի եւ ետուն մեզ աղուհացի կիւրակէն զամէն եկեղեցիք մեզ առնեն ով խափանէ դատի յԱստուծոյ մեր խղճի մեղացն տէր է առաջի Աստուծոյ (անդ, էջ 89)։
(Ի վերայ սոյն եկեղեցւոյ ի կողմն հարաւոյ)․

Կամաւն Աստուծոյ ես Աստուածատուրս եւ ամուսին իմ Կաթունթայ միաբանեցաք սուրբ Նշանիս եւ տուաք Խ․ դահեկան․ ես Գերասամ վարդապետս եւ միաբանք զԹադէոսի տաւնի ժամն հաստատեցաք զամենայն եկեղեցիքս կէսն Աստուածատուրին եւ կէսն ամուսնոյ (անդ, էջ 100)։
(Ի ներքոյ սորա).

Ես Զուղէս դուստր Սարգսի Քարինջեցւոյ... միաբանեցայ սուրբ Նշանիս եւ ետու զիմ հոգւոյ պաշարն․ հայր Սարգիս եւ միաբանքս հաստատեցին ի Յայտնութեան ութաւրէքն զերրորդի աւուրն զամենայն եկեղեցիք ժամ մեզ առնեն․ կատարիչք աւրհնին յԱստուծոյ ի թուին ՋՀԵ (անդ, էջ 101)։
(Ի թուին ՈԿԵ)․

Շինեցաւ սուրբ Առաքեալ մատուռս վասն փրկութեան հոգւոյ հաւատացելոց (անդ, էջ 101)։

(Ի վեր քան զսուրբ Նշանն յափն ձորոյն ի առ սեամբ եկեղեցւոյն).

Ի Թագաւորութեան Լաշայի յամիր սպասալարութեան Զաքարէի եւ որդւոյ իւրոյ Շահնշահի եւ եղբաւր իւրոյ Իվանէի ես հայր Սամուէլ եւ այլ միաբանքս շինեցաք զեկեղեցիս վասն երկար կենդանութեան պատրոնաց մերոց յիշատակ հոգւոյ մերոց եւ ծնողաց մերոց, որք երկրպագէք զմեզ յաղաւթս յիշեցէք (անդ, էջ 101):
(Ի կողմն արեւմտից).

Ես Դաւիթ զիմ հոգւոյ պաշարն ի սուրբ Նշանս, Սամուէլ եւ այլ միաբանքս ետուն ինձ մի աւր պատարագ ի տաւնի Դաւթի մարգարէին, որ խափանէ իմ մեղացն պարտական է (անդ, էջ 101):

Հոռոմայրի վանքը դարերու կուրծ կուտայ եւ բաւական երկար ատեն իր գոյութիւնն ու արժէքը կը պահէ: Անոր հովանիին տակ կը գրուին քանի մը ձեռագիրներ:

Գրեցաւ — 1690ին — սուրբ Մաշտոցս… ի յերկիրն Լօռի ի գիւղն Հոռոմայր ընդ հովանեաւ Ս. Նշանին յառաջնորդութեան Ս. Նշանիս Վարդան եպիսկոպոսին, գրեցաւ ձեռամբ անարժան Ներսէս դպրիս (Հ. Ն. Ակինեան, Հաւաք. Յիշատ. 83): Միեւնոյն անձը 1704ին հոն կը գրէ Ճաշոց մը (անդ, էջմ. 938): Իսկ անկէ տասը տարի յառաջ. Գրեցաւ Մաշտոցս ի յերկիրն Լօռի որ կոչիւր Հոռոմայր ընդ հովանեաւ Ս. Նշանի ի

*հայրապետութեան սուրբ էջմիածնայ Տեառն Նահապետ կաթողիկոսին եւ մերոյ արհեպիսկոպոս Սանահնոյ Ս. Աստուածածնի Բարսեղ եպիսկոպոս յերկրակալ եւ սուրբ Նշանի առաջնորդն տէր Գալուստն: Գրեցաւ ի ձեռն անարժան տէր Ներսէս քահանայիս...* (*անդ, Երեւան, Թ.* 479): *Կը տեսնուի որ Ներսէս եռանդուն գրիչ եղած է եւ ապրած է Վարդան ու Գալուստ առաջնորդներու օրով:*

## 18. ՊՈՒՃՈՒՐ ՎԱՆՔԸ [7]

*Օձուն գիւղի մերձ կը գտնուի եկեղեցի մը զոր տեղւոյն գիւղացիները Պուճուր վանք կ'անուանեն. շինուած է սրբատաշ քարերով: Ցատուկ իմաստով վանք եղած չ'երեւար* (*Լումայ* 1897, *էջ* 270):

## 19. Ս. ՍԱՐԳԻՍԻ ԿՈՒՍԱՍՏԱՆ [8]

*Սանահինի վանքի շրջակայքը: Ծանօթ հետեւեալ արձանագրութենէն եւ Յովհաննէս Ղրիմեցիի ծանօթագրութենէն: Սեւորդեաց ձորի մէջ խաչարձանի մը պատուան–*

---

[7] *Բժիշկ Վ. Թորգոմեան երբեմն կը գրէր Պարիզի Ազգ. Մատենադարանի սոյն գործը ես ալ յիշատակած եմ* 1889*ին* (*Արեւելք*, 1889, *Թ.* 1733) *երբ այնտեղ գտնուած բոլոր հայ բժշկարանները կ'ուսումնասիրէի. երկու օրինակ կայ հոն, մին ՉԼԱ* — 1282*ին* — *Գուգարաց աշխարհի Մականաբերդ կոչուած անտառին վանքը ընդօրինակուած ձեռագրի մը մէջ դրուած է* (*Բազմավէպ*, 1926, *էջ* 98): *Ինչպէս կը տեսնուի վանքին անունը հոս չէ նշանակած:*

[8] *Կուսանաց անապատ մը կայ Հաղբատի մերձ: Անոր մասին պիտի արտայայտուիմ Հաղբատի մասին գրած միջոցին:*

դանի վրայ գրուած է՝ «Եւ ես Քերուբս տվի զայս զիմ գնուած այգին ի Ս․ Սարգիսն վախմ, որ կուսանքն վայելեն, ով որ յետ ու յառաջ հանել ջանայ․ նզովքի յԱստուծոյ եւ յամենայն սրբոց։ Աստուած ողորմի իմ ծնողացն»։

Յովհաննէս Ղրիմեցին այս արձանագրութիւնը գնելէ վերջ կը յաւելու՝ «Յիշատակեալ սուրբ Սարգիսդ է մատուռն ինչ յարեւմտից մենաստանին (Սանահնի) հարուստ մի հեռագոյն, ի վերայ բլրոյ ինչ կամ փեղկի մերձակայ հարաւակողման լերին, որ արդի ամայի կայ, այլ շինականք Սանահնի սովոր են գնալ յուխտ» (Թ․ 239 Ձեռագիր Նոր Ջուղայի, էջ 177)։

## 20․ Ս․ ՍԱՐԳՍԻ ՎԱՆՔԸ

Վարդաբլուրի Ս․ Սարգսի մատուռը փոքրիկ շէնք մըն է, բայց յառաջագոյն հոն ծաղկած վանք մը եղած է։ Մատուռը շինել տուած է Աշոտ Մարծպան, իսկ հիւրանոցը կամ հիւրատունը Կիւրիկէ․ «Ի ՇԼ — 1081 — Թուականութեան Հայոց եւ Կիւրիկէ շինեցի» (Լումայ, 1897, էջ 239․ հմմտ․ նաեւ Ջալալեան ճամբ․ ի Մեծն Հայաստան, Ա․, էջ 122)։ Սակայն աւելի ճշգրիտ կ՚արտայայտուի Լալայեանց Ս․ Սարգիս ուխտատեղի — գտնւում է Կուրթան եւ Վարդաբլուր գիւղերի միջեւ, համանուն լերան գագաթին։ Սա մի փոքրիկ, հաստարուկ մատուռ է, մի գմբեթով։ ...Լերան երեք

*կողմը ժայռոտ է, իսկ հարաւային կողմում ձգւում է մի պարիսպ, ութ կիսաւեր աշտարակներով...։ Սրա հարաւային պատի վրայ դրսից կայ հետեւեալ արձանագրութիւնը. ՆՂԹ թուականութեանս Հայոց ես Կարիկէ թաղաւոր սահմանեցի զհասոյթս վանուցն մեղաց թողութեան եւ արեւշատութեան իմոյ ընդ ձեռամբ Աչոտ մարծպանին* (Ազգր. Հանդ. 1901, Է.—Ը., էջ 354)։ *Արձանագրութեան այս տողերը կրնան մերձեցուիլ նաեւ Ս. Սարգսի արեւմուտքը դրանուող սրբատաշ քարերով կառուցուած չէնքին, որ կրնայ վանք–եկեղեցի եղած ըլլալ։*

## 21. ՍԵԴՈՒԻ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ ԿԱՄ Ս. ՆՇԱՆԻ ՎԱՆՔԸ

*Կը հիմնուի Աքորի եւ Հաղուի գիւղերու միջեւ. Սեդուի ձորին լանջի վրայ։ Քսան արշին երկար, տաս արշին լայն ու տասնութ արշին բարձր թաղակապ ու գեղեցիկ շէնք մըն է, անսիւն, բայց կիսասիւներու վրայ ամրացուած եւ այն՝ տանց կաթուղիկէի։ Հիւսիսային կողմը կայ երկու ամբողջական եւ երկու կիսասիւներու վրայ հաստատուած գմբէթաւոր դաւիթ մը։*

*Վանքը ունի հաստ պարիսպներ, որոնց մէջ կը նշմարուին սենեակներու աւերակներ* (Ազգր. Հանդ. 1901, Է.—Ը., էջ 426—427)։

## 22. ՔԱՌԱՍՆԻՑ ՄԱՆԿԱՆՑ ՎԱՆՔԸ

*Դսեղ գիւղի հիւսիս արեւմտեան կողմը եւ անկէ հազիւ կէս վերստ հեռու, ձորի մը մէջ կարմիր եւ սրբատաշ քարերով շինուած է Քառասուն մանուկներու նուիրուած վանքը (Ազգր. Հանդ.* 1901, *Է.—Ը., էջ* 424)*։ Տաճարը կամարակապ է, կամարները հաստատուած են չորս կիսասիւներու վրայ, կաթուղիկէն ամբողջովին աւերուած է։ «Պատերից իւրաքանչիւրի մէջ, կամարների տակ, կան մի մի լուսամուտներ, բեմի աջ եւ ձախ կողմը գտնուում են երկյարկանի խորաններ, որոնց վերի յարկի մուտքը բեմիցն է։ Իւրաքանչիւր խորանի մէջ կայ մի պատարագամատոյց սեղան» (Լալայ,* 1897, *Ա., էջ* 257)*։ Եկեղեցու երկարութիւնն է* 12 *արշ., լայնութիւնը վեց արշ.* 10 *վերշոկ. կամարների միջի տարածութիւնն է* 4 *արշ.* 6 *վերշոկ.։ Կամարները խաչաձեւ կտրում են միմեանց եւ նմանում Սանահնի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցուն, իսկ ընդհանուր ճարտարապետութիւնն աւելի նման է Ձնէվանքին (անդ, էջ* 258)*։*

*Վանքին յաջորդ արձանագրութիւններէն հաւաստեաւ կ՚իմանանք թէ ան արդէն ԺԲ. դարէ յառաջ գոյութիւն ունեցած է, վասն զի այդ շրջանին արդէն պարզացած վիճակի մէջ է եւ շատ նուիրատուութիւններ ստանալով ինքզինքը կ՚ենթարկէ պատարագ եւ աղօթք մատուցանելու։ Հայրապետի Համազասպ առաջնորդը* 1256*ին օրհնած է եկե-*

ղեցին, զոր սալայատակած է Խաչատուր, որ միանգամայն ժամատունը կը շինէ կամ կը վերանորոգէ, իսկ անկէ յառաջ Դուլիթ 1241ին մատուռը կը կանգնէ, ինչպէս արձանագրութիւնները կը վկայեն՝

(Ի սեան դրան)

Ի Թուիս ՉԾ ողորմութեամբ Աստուծոյ ես Համազասպ Տէր առաջնորդ սուրբ ուխտիս Հաղբատայ աւրհնեցի զեկեղեցիս եւ տվի զգեղ ժողովուրդ կամակցութեամբ Հաղբատայ միաբանացն առաջնորդութեամբ Գէորգ վարդապետի, եթէ ոք յառաջնորդաց կամ իշխանաց հակառակի կամ հանէ եկեղեցւոյս, եղիցի նզովեալ ՅԺԸ հայրապետացն եղիցի եղիցի (Ջալալեանց, Ճամբ., Ա., էջ 118):

(Յաջակողմն դրան)

Շնորհիւն Աստուծոյ ես Վահրամ միաբանեցայ սուրբ Քառասնիցս եւ զանձայլին արարաք զսուրբ Աւետարանն եւ տվաք ի Քառասունքս վասն փրկութեան հոգոց մերոց, հայրապետքս եւ միաբանքս կատարեցին զՋրաւրհնէք աւուր պատարագն մեզ պատարագել զամէն եկեղեցի, Թուին ՉԻԾ անդ, էջ 108).

(Ի ներքոյ սորա)

Կամաւն Աստուծոյ եւ հրամանաւ պարոնացն եւ Դուլթին ես Ջամալարինս միաբանեցայ սուրբ Քառասնիցս եւ ետու զիմ հօգւոյ պաշարն եւ առի զՂամիշկուտի հողն եւ ետու ի վանքս առաջնորդութեան Հայ–

*բաղետխս եւ նոքա եսուն ի մեռելոց զամէն եկեղեցին, ով հողս խլէ կամ զժամն խափանէ իմ մեղացն տէր է (անդ, էջ* 119)։
*(Ի ձախակողմն)*

*Ողորմութեամբ Աստուծոյ ես Խաչատուր ծառայ Աստուծոյ շինեցի զժամատունս եւ սալեցի զեկեղեցիս միաբանք խոստացան ի տաւնի սուրբ Յովհաննու Գ. պատարագ եւ մաւր իմոյ Մալքային եւ ինձ մեղուցելոյ, կատարիչք աւրհնին Աստուծոյ (անդ, էջ* 119)։

*(Ի սեամս ձախակողմեան խորանին)*

*Ես Աշոտ եւ ամուսինն իմ Եսէ միաբանեցաք եւ մեր հողոյ պաշարն եկեղեցւոյս շինութեան տվաք. Առաքել վարդապետ եւ այլ միաբանքս ընկալան եւ հաստատեցին զԱստուածածնի աւրն զամէն եկեղեցիքս պատարագել զՔրիստոս յանուն մեր, կատարիչք աւրհնին յԱստուծոյ (անդ, էջ* 119)։

*(Կից սորա ի կողմն հարաւոյ).*

*Յանուն Աստուծոյ ես Ազատ Շահս միաբանեցայ վանիցս եւ ետու զՃոխտեղաց հողն եւ այլ զիմ հօլւոյ պաշարն Ովհաննէս առաջնորդ տեղւոյս եւ այլ միաբանքս ընկալաք եւ տվաք Գ. ժամ սուրբ Քառասնից տաւնի, որ խափանէ դատի ի Տեառնէ (անդ, էջ* 119)։

*(Ի ներքոյ սորա).*

*Ես Գրիգոր ծառայ Աստուծոյ անյիշատակ գոլով ի չքաւորութենէ ընչից միաբա–*

նեցայ եկեղեցւոյս եւ սպասաւորք սորա խոստացան ի տարին մէկ պատարագ ի տաւնի սուրբ Գրիգորին· կատարիչք ուրհնին Աստուծոյ, ով խափանէ զանէծս Յուդայի եւ Կայէնի առցէ (անդ, էջ 120) :

(Կից սորա).

Կամաւն Աստուծոյ ես Խաչգունդս զԾողիրկայ հողն տվլի իմ եղբաւր հողոյն Խաչերեսին եւ սոքա խոստացան մէկ պատարագ զնոր կիւրակէին, ով զայն հողն յայս տեղւոյս հանէ եւ զիմ ժամն խափանէ դատի յԱստուծոյ (անդ, էջ 120) :

(Ի վեր քան զսա).

Յանուն Աստուծոյ ես Քերաւբս եւ ամուսինն իմ Թագուհի մեծ յուսով միաբանեցաք վանացս եւ զինչ մեր հողւոյ պաշարն կայր տվաք եկեղեցւոյս միաբանքս եւ առաջնորդ տեղւոյս խոստացան Բ. ժամ ի տաւնի սուրբ Սարգսի, ով խափանէ մեր մեղացն տէր է առաջի Աստուծոյ (անդ, էջ 120) :

(Յաջակողմ դրան խորանին).

Ի Թուին ՈՂ յիշխանութեան Աշոտոյ եւ յառաջնորդութեան Յոհաննէսի ես Դուլիթ ... առաջի ընծայ բերի եւ չինեցի զտունս եւ սպասաւորք սոցա խոստացան ի տարին Բ. պատարագ, որք խափանեն զատին ի Տեառնէ, կատարիչքն ուրհնին յԱստուծոյ (անդ, էջ 120· Հմմտ. Լումայ, 1897, էջ 257—258. առաջի ընծայաբեր չինեցի... զմատուռն) :

## 23. ՔՈԲԱՅՐԻ ԿԱՄ ՔՈԲԵՐ ՎԱՆՔԸ

*Զորագետի ափերուն վրայ Այգեհատ կամ Իգահատ գիւղին կից հիմնուած է Քոբայրի ուխտը՝ «Շինեալ սագաձեւ, որոյ երկարութիւնն է քան կանգուն, նոյնպէս եւ լայնութիւնն, ունի ի վեր քան զսեղանն զերկու դարանման խորանս, ինքն զետեղեալ կայ ի վերայ միոյ վիմի, քարինք եւ լուսամուտք վանացս են չքնաղակերտք. կից սորա կայ մատուռ շինեալ ի Մարեմայ Բագրատունւոյ դստերէ Կիւրիկէի... Ներքին դասակարգութիւն սորա նման է Յունաց, ուր եւ գոյ գիր յունարէն ի վերայ զանգակատանն. սոյն եկեղեցի երբեմն անկեալ ի ձեռս Յունաց. ըստ որում յիշէ զսա մեծն Վարդան ի կարգս մենաստանաց մեծին Հայոց... հանդէպ սորա է մատուռն Գօգօթ դամբարան ճգնաւորի միոյ, առ որ յաճախէին երբեմն ուխտաւորք բազումք» (Ջալալեան, Ճամբ. ի Մեծն Հայաստան, Ա., էջ 102)։*

*«Այս ճարտարապետական տեսակէտից շատ նշանաւոր մենաստանը գտնւում է Քոբերաձորում, որ տարածւում է Դեբետ գետի ձախ ափին, Իգահատ գիւղից ներքեւ... Ջրվէժի մօտ, սաղարթախիտ ծառերով պատած մի փոքրիկ պարսպապատ հարթութեան վրայ կանգնած են սրբատաշ հրաշալի եւ մեծ եկեղեցին իր գաւթով, երկու փոքրիկ մատուռներ, մի զանգակատուն եւ մի ընդարձակ շինութիւն» (Ազգր. Հանդ.*

1901, Է., էջ 419—420 եւ հմմտ. յատկապէս Լումայ, 1897, Ա., էջ 261—265):

Եկեղեցիէն մնացած են արեւելեան պատը եւ անոր ու գաւիթին միջնորմը, որոնք զարդարուած են գեղեցիկ կամարներով, խաչքարերով եւ ծաղկանկար պատուհաններով: Ներքուստ անսիւն եղած է եւ հիւսիսային կողմը խորան մը ունեցած: Սեղանը բոլորաձեւ է եւ երեք պատուհանով լուսաւորուած:

Գաւիթին մերձ կայ կամարակապ փոքրիկ խորան մը պատարագամատոյց սեղանով: Այս շէնքը դեռ կանգուն է եւ պատերուն վրայ արձանագրութիւն կայ: Եկեղեցւոյ արեւելեան կողմը կը գտնուին երկու իրարու մօտ թաղակապ փոքրիկ մատուռներ, ասոնք եւս պատարագամատոյց սեղաններով: Անոնցմէ մէկը կիսաւեր է եւ միւսը դեռ կանգուն: Ասոնց վրայ կարելի է ընթեռնուլ սա արձանագրութիւնը.

«Քրիստոս Աստուած յիշեա զՄարիամ եւ զԹուսուդան ի գալստեան քում ՈԲ (1153). Ես Մարիամ դուստր Կիւրիկէի Թագաւորի յազգէ Բագրատունի շինեցի զսուրբ կաթուղիկէս աւգնութեամբ քեռ իմոյ Թուսուդանա յիշատակ մեզ եւ ծնողաց մերոց եւ հաւրաքեր մերոյ Թուսուդանա եւ եղբաւր մերոյ Աբասա, որք երկրպագէք Քրիստոսի ի սուրբ քաւարանիս, յիշեսջիք ի Քրիստոս, զի վասն նեղութեան տեղւոյս շատ աշխատե(ցաք)»:

Այս արձանագրութեան թուականը Հ. Ղ. Մովսէսեան կ՚առաջարկէ կարդալ՝ ՈԻ, բայց Կոստանեան ՈԲը ճիշդ կը գտնէ (Հմմտ. Ազգր. Հանդ. անդ, էջ 420, Լումայ, 1900, Բ., 326 եւ Վիմական Տարեգիր, էջ 30. Հ. Ղ. Մովսէսեան, Լոռիի Կիւրիկեան թագաւորներու պատմութիւնը, Վիեննա 1923, էջ 65) :

Զանգակատունը կը բարձրանայ գաւիթին քով, ձորի լանջին վրայ : Քառանկիւնի կամարակապ չէնք է բոլորակաձեւ սեղանով եւ երկու սրբատնով : Ունի երեք պատուհան եւ դուռ մը ու քանի մը գերեզմանաքարեր, որոնցմէ կան նաեւ եկեղեցւոյն մէջ, զի եղած է դամբանարան : Անոր վրայ ութը սիւներու եւ ռոմանական կամարներու վրայ կը հանգչի գմբէթը, ուսկէ կախուած են զանգակները եւ որ դժբախտաբար 1901էն քիչ յառաջ կը կործանի՝ փուլ կու գայ :

Զանգակատունը ունի արձանագրութիւններ. այսպէս՝ «Ես անարժանս Մխարգձելս, որդի Ճահնշահի ադիւնատանտների պետ եւ իմ ամուսինս Վանանէն, դուստր աթաբէկ եւ ամիր սպասալար Սաթունի» (Ազգր. Հանդ., անդ, հմմտ. նաեւ կարեւոր Brosset, Voyage archéologique VI, 138 :

«Այս վանքը, ինչպէս երեւում է, մատուռի վրայի վերոյիշեալ արձանագրութիւնից շինել է Կիւրիկէ Բ. թագաւորի դուստրը Մարիամը 1153 թուին» (Ազգր. Հանդ. անդ, էջ 421) : Սակայն գուցէ կարելի ըլլայ մերձեցնել մատուռին, զի ստոյգ

է թէ 1125էն յառաջ Քոբայրի վանքը իբրեւ ճգնարան ու մենարան գոյութիւն ունէր եւ հոն խիստ կեանք կը վարէին Մարիամ եւ Խորասու, որոնց համար Յովհաննէս Սարկաւագ վարդապետը կը գրէր «Զգուշական խրատս» (Վարդան, Պատմ., էջ 122. հմմտ. Հ. Հ. Ոսկեան, Մատենագրական Քննութիւններ, Վիեննա 1926, էջ 58)։ Ան նախնաբար եղած է ճգնատեղի, ապա հայկական վանք եւ յետոյ վրական մենաստան եւ այդ հետեւութեամբ նմանապէս յունական։ Անոր բարերարներն են Մարիամ արքայադուստրը եւ անոր քոյրը (հմմտ. վերը)։ Եղած է դամբարան. «Յորժամ լուաւ զգոյժն հայրն նորա Շահնշահ ի գիւղն Օձուն, ի ներքրտութիւն անկեալ ի տրտմութենէն մեռաւ եւ տարեալ թաղեցին զնա ի Քոբայրն, զոր առ կինն նորա ի Հայոց» (Կիր. Պատմ., էջ 231)։

Դարեր վերջ՝ «Յանապատն Քօպայրու բարձրաբերձ Ս. Աստուածածնի ի հայրապետութեան Տեառն Յակոբայ Ջուղայեցւոյ... ի Շմաւոնէ ի թուին ՌՃԻԳ» — 1674—1675 — կը գրուի Գիրք մոլութեանց եւ առաքինութեանց (Կարենեան, Մայր Ցուց., Էջմ., էջ 168)։

Քոբայր կամ Քոբեր անուան կցուած է Դաւիթ վարդապետի անունը, մէկը այն վարդապետներէն որ կշիռ ու արժէք ունեցած է իր շրջանին եւ շրջանակին մէջ։ Յովհ. Դրիմեցին կը գրէ՝ «Ի վախճան նոյն երկոտասան դարու եւ ի սկիզբն երեքտասաներորդի փայ-

լեցաւ Դաւիթ վարդապետ Քոբայրեցին գրով եւ բանիւ եւ էր սա այր հանճարեղ, խոհեմ եւ իմաստուն, ժամանակակից մեծ վարդապետին Մխիթարայ Գօշի եւ Տուտէորդւոյն Գրիգորի, ընդ որոց գտաւ ի ժողովն, զոր գումարեաց Զաքարիա մեծ իշխան եւ սպասալար ի Լօռի քաղաք ի թուին ՈԾԴ, յամի Տեառն 1205, այլ եւ ի ժողովն զոր նա ինքն Զաքարիա գումարեաց երկրորդ անգամ յԱնի քաղաք ի թուին ՈԾԵ: Զկնի այսց ժողովոց, որպէս երեւի յարձանագրոց, ոչ յերկարեալ ի կեանս վախճանի աստէն ի Հաղբատ յաւուրս Յովհաննու Խաչենցւոյն առաջնորդի ուխտիս եւ թաղի ի նմին գերեզմանատան... յարեւմտից հարաւոյ զանգակատան, որոյ տապանագիր մակագրեալ ի տապան նորա օրինակ զայս. Հօր մերոյ հոգեւորի Դաւթայ վարդապետի Քոբայրեցւոյ է տապանս, յիշեա ի Տէր սուրբս (Թ. 239 Ձեռ. Նոր Զուղայի, էջ 98):

Հ. Ն. Ակինեան կը գրէ. «Դաւիթ վարդապետ անուան կից կը կրէ Քոբայրեցի (Կիր., էջ 84) կամ Քոբարեցի (Ն. Լամբր., էջ 218) եւ կամ Քոբերեցի (Գիրք Պատճառաց) յորջորջանքն, որ անշուշտ կ՚ուզէ նշանակել թէ Դաւիթ իւր միանձնական կենաց սկիզբն ըրած է Ձորոյ գետոյ ափանց վրայ Այգեհատ գիւղի կից Քոբայր (Քոբար) կամ վրացերէն Քոբեր ԺԲ. դարու անուանի մենաստան...: Եղա՞ծ է հայրենիքն ալ այս կողմերը. կը լռեն այս մասին աղբերք, ինչ-

պէս նաեւ թէ որչափ ժամանակ կրօնաւորած է հոս Դաւիթ, բայց ապահովապէս նշանակալից դեր կատարած պիտի ըլլայ կամ ինքն մենաստանին կամ մենաստանն իրեն համար, որով տեղւոյն անունն ալ այնուհետեւ անբաժին եղած է իրմէ (Մատենագրական Հետազօտութիւններ, Ա., Վիեննա 1922, էջ 44—45)։ Սակայն նկատի ունենալով որ Հիւսիսային կողմերու վարդապետները ընդհանրապէս ծննդավայրէն իրենց յորջորջանքը կամ մականունը կը ժառանգէին, որ Դաւթի վարքի ու գործունէութեան նկատմամբ հասած ակնարկութիւնները կամ հաղորդագրութիւնները Հաղբատի մէջ անոր անցուցած տարիներու կցուած են, կը խորհիմ թէ Դաւիթ իր Քոբայրեցի յորջորջանքը ընդունած ըլլայ Քոբայր կամ Քոբեր ծննդավայրէն եւ հետեւաբար կասկածելի՝ անոր անդամակցութիւնը Քոբայր վանքի։

### 24. ՕՁՈՒՆԻ ԿԱՄ ՅՈՀԱՆ ԿԱՄ ՕՀԱՆ ՕՁՆԵՑԻԻ ՎԱՆՔԸ

Յոհան Օձնեցիի անունով կնքուած այս վանքը, որ սակայն վայրին անունով յորջորջուած է Օձնի կամ Օձուն վանք, հիմնուած է Արդու գիւղին հիւսիս–արեւմտեան կողմը եւ անկէ գրեթէ երկու վերստ հեռու փոքրիկ եւ սիրուն բլուրի մը վրայ։ Շինուած է սրբատաշ քարերով, երբեմն բոլորովին քանդուած եւ միայն սեղանի կամարը մնացած, բայց հնարաւորութեան սահմանին մէջ մա–

սով մը վերանորոգուած 1923է յետոյ (էջ-միածին, ամսագիր, 1953, ԺԱ.—ԺԲ., էջ 41—51)։ Անոր մերձ Թալանթարեանները կառուցուած է անտաշ քարերով կամարակապ շէնք մը, ուր է Յովհան Օհան Օձնեցիի գերեզմանը։ Եկեղեցին որ պարիսպով շրջապատուած է եւ փոքրիկ զանգակատուն մը ունի, նշանակալից եւ աչքի զարնող կարեւոր բան չունի, սակայն գեղեցիկ եւ հոյակապ եկեղեցի է Խաչգոնդ կամ Խաչգունդ եկեղեցին, զոր Յովհաննէս Իմաստասէր կաթողիկոսը 725ին (°) կանգնել տուած է եւ որուն հիւսիսային կողմը կը ցուցուի Սմբատ Թագաւորի մահարձանը (Ջալալեան, Ճամբ., Ա., էջ 91. Ազգր. Հանդ. 1901, Է.—Ը., էջ 374—375. Լումայ, 1897, էջ 272—275 եւ 1900, էջ 227. Բիւզանդիոն, 1900, Թ. 1001. Մասիս, 1903, էջ 441. Տէր.Մովսէսեան Մ. արքեպ., Հայկական երեք մեծ վանքերի Տաթեւի, Հաղարծնի եւ Դատի եկեղեցիներ եւ վանական շինութիւնները, Երուսաղէմ 1938, էջ 27 եւ Յովսէփեան Գ. արքեպ., Նիւթեր եւ ուսումնասիրութիւններ, Պրակ Գ., Նիւ Եորք 1944, էջ 12—38 եւ 54—72)։

Մարձ գիւղը կը վերաբերէր այս վանքին (Ջալալեան, անդ, էջ 107)։ Անոր կալուածներուն եւ սեպհականութիւններուն տիրացած են Հաղբատցիներն ու Սանահինցիները եւ այդ հարցը կ'ուզէ ուսումնասիրել Ղուկաս կաթողիկոսը, երբ իր հայրապետու-

թեան ժամանակ Սիմէոն Գեանճեցի վարդապետը «կամէր շինել դվանսն Յօհաննու Օձնեցւոյն հայրապետին մերոյ սրբոյ» (Դիւան, Դ., էջ 205—207)։ Ղուկաս կաթողիկոսը այս հանճարաշատ վարդապետը կը կարդէ առաջնորդ «վաղէմնաշէն, ի վաղուց հետէ ամայացեալ չքնաղակերտ եւ գեղեցիկ» վանքին յորդորելով ժողովուրդը որ լայնօրէն աջակցի անոր վերականգնումին (անդ, էջ 240, 241—242 եւ 763—766)։

Յովհ. Օձնեցիին գերեզմանին մէջ դիւցազինները «խնոթուն» հանելու ատեն երեւան կը հանեն խաչ մը, որուն վրայ գրուած է Յիշատակ է Գենճեցի Մըհի Սարգսին, սուրբ խաչս շինուեցաւ։

Զանգակատան արեւմտեան կողմը տապանաքարի մը վրայ գրուած է՝ «Այս է տապան մէլիքայ Ամիրջանի որդի Պաւղոս պարոն տէր սուրբ Յոհանայ ծառայ։ Իսկ դիմացի խաչքարին վրայ» Խորէնան եպիսկոպոսին ՌՃԼԴ» (1685. Ազգր. Հանդ. 1901, Է.—Ը., էջ 374)։

Օձունի եկեղեցւոյն առաջին ահեակ սիւնի վրայ — արեւմտեան կողմը, ներքուստ, արձանագրուած է՝ Կամաւն Աստուծոյ ես Սմբատ ծառայ մեծին Իվանէի Մխարգրձէլի որդի Ճոռենց Պօղոսի որ արժանի է լաւուց մեր պարոնաց արեւշատութեան համար Աւձնայ վերայ հարկն եառուն զոր չահուղենով ի վերայ կայ, ով խափանէ նզոված

է յԱստուծոյ եւ ՅԺԸ հայրապետացն եւ Յուդայի մասնակից է (Ջալալեան, անդ, էջ 91)։

Արեւմտեան կողմը որմի վրայ կայ՝ Կամաւն Աստուծոյ ես Դեղս որդի Անգեղտան ծառայ Իվանէի էս ժամս որ գեղս հատաւ ի յանուանէ վասն Իվանէի արեւշատութեան համար գեղնու կովէ գլխահարկն վեր կալանք վանքի որ տառապեալ էին անասուն պահել չկամէր, ով գլխահարկն առնի, խափանէ, նզոված է ՅԺԸ Հայրապետաց (անդ, էջ 91)։

Իսկ հարաւային դրան կողմը՝ Կամաւն Աստուծոյ ես Վահրամ միայնակեացս եառու գիմ հայրենի սուրբ Նշանն Խաչգունդ եկեղեցւոյ[1] (անդ, էջ 91)։

---

[1] Գուգարքի Հայ-վրական վանքերէն է նաեւ Պղնձահանքի վանքը — «մօտ ի Լոռէ» — որուն մասին ուրիշ գրութեան մը մէջ առիթ պիտի ունենամ խօսելու» (Հմմտ. վերը Թ. 14 եւ Ակինեան Հ. Ն., Սիմէոն Պղնձահանեցի եւ իր թարգմանութիւնները վրացերէնէ, Վիեննա 1951, էջ 1)։

## ՍԱՆԱՀԻՆԻ ԿԱՄ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ ՎԱՆՔԻ ԵՒ ԱՆՈՐ ԵԿԵՂԵՑԻՆԵՐՈՒ ՆԿԱՐԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

*Սանահինի կամ Սանահնոյ վանք կը կոչուի, որովհետեւ Սանահին գիւղի մէջ կը գտնուի կամ այն գիւղին վանքն է, սակայն եթէ անուան ստուգաբանութիւնը նկատի առնենք (հմմտ. վարը) ստիպուած ենք ըսելու Սանահին վանքի գիւղը, զի Սանահին է վանքին նախնական անունը եւ գիւղը անկէ ժառանգած կ'ըլլայ իր անունը: Իսկ Ս. Աստուածածնի վանք յորջորջուած է իր եկեղեցւոյն անունով:*

*«Սանահին է գիւղ պատուական, դիրք գեղջն զուարճալի, յարեւելից կուսէ ձորն Աստուածածնայ անուանեալ, եւ յարեւմտից ձորն Սեւորդեաց, միւս շրջապատն է միապաղաղ քար՝ որպէս ամրոց անառիկ ի վեր սեպացեալ...: Օդ տեղւոյս է յոյժ առողջարար եւ ջուրն ականակիտ: Աստ է հռչակեալ եւ հիասքանչ վանքն սուրբ Աստուածածնի, շինեալ ի կրօնաւորաց փախուցելոց ի Ռոմանոսէ կայսերէ Յունաց» (Ջալալեան, Ճամբորդութիւն ի Մեծն Հայաստան, Ա., էջ 9):*

*Սանահինի հոյակապ վանքը կառուցուած է Թերակղզիաձեւ բարձրավանդակի*

մը վրայ․ հարաւային կողմէ յեցած է անտառապատ սարերու, իսկ հիւսիսէն ձորի մը մէջէն կ՚անցնի Ձորագետը կամ Դեւրէգ կոչուած գետը։ Ունի հրաշալի տեսարան։ Հիւսիս–արեւելեան կողմէն կը բարձրանան Լալվար կամ Լալուար լեռը, քիչ մը հեռու Կոչայ բերդը իր սրածայր ցցուածքներով, իսկ դիմացը՝ Ալավերդի պղնձահանքը, հիւսիս արեւմտեան կողմէն՝ Աթոռիկ կոչուած սարաւանդը, հարաւ–արեւմտեան կողմէն՝ Սանահնի անտառապատ լեռները, մինչ արեւելեան կողմը՝ Հաղբատի վանքը եւ համանուն գիւղը (Ազգագր․ Հանդէս, 1901, Է․—Ը․, էջ 378 եւ Բիւզանդիոն, 1909, Թ․ 3886)։

Սանահինի ամէնէն հին եկեղեցին նկատուած է Ս․ Աստուածածին, որ սիրուն է եւ ներդաշնակօրէն համաչափ ներսէն ու դրսէն։ Անսիւն եւ կամարակապ սրբավայր է։ Ձորս համաչափ կամարակապ գօտիներ կը միանան մէկ մանեկաձեւ կամարով, որուն վրայ հանգչած է կաթուղիկէն, որ օժտուած է չորս երկարաձեւ լուսամուտներով եւ պսակուած երկաթէ խաչով։ Կամարներու տակ եւս կը գտնուին մէկական լուսամուտներ, իսկ անոնց միացումի տեղերը քանդակուած են չորս Աւետարանիչներու կենդանակերպերը։ Յատակէն քիչ մը բարձր է բեմը, որ ունի քանդակազարդ փայտեայ սեղան մը։ Անոր աջ ու ձախ կողմերը կը գտնուին երկու պատարագմատոյց խորաններ, նաեւ եր–

կու խորաններ ալ կան եկեղեցւոյ մուտքին կողմերը: Ցաւելում որ եկեղեցին երկու մուտք ունի — արեւմտեան եւ հիւսիսային կողմերը:

Եկեղեցւոյ երկարութիւնն է 15 արշին, իսկ լայնութիւնը գրեթէ 12 արշին: Կաթուղիկէին բարձրութիւնն է 19 արշին:

Ցատակը կամ գետինը ծածկուած է սրբատաշ քարերով: Տանիքը նորոգուած է 1901ին (Արձագանք, 1884, էջ 629· Ազգր· Հանդ·, 1898, Գ(Ա), էջ 287—288, 1901, Է·—Ը·, էջ 381):

«Սոյն եկեղեցին, կը գրէ Ջալալեան, ըստ պատմելոյ մատենագրաց եւ ըստ հաւատարիմ աւանդութեանց է հնագոյն քան զբոլոր եկեղեցիս Հայաստանեայց: Քանզի Առաքեալքն Քրիստոսի աստ եդին զխաչն ի նպաստակ պաշտաման ժողովրդոց, յետ որոց սուրբն Գրիգոր Լուսաւորիչ շինեաց փոքրագոյն խորան ի վերայ առաքելադիր խաչին եւ ապա յիշեալ կրօնաւորքն եկեալ անդ շինեցին զհոյակապ եւ զվիմարդեան եկեղեցի ի ներքուստ եւ արտաքուստ չքնաղ շինուածովք, մանաւանդ զկաթուղիկէն համաչափ եւ գեղեցիկ: Բայց քարինք սորա չեն տաշեալ զուտ» (Ճամբ·, Ա·, էջ 9—10, հմմտ. Բիւզանդիոն, 1909, Թ· 3886):

Ցովհաննէս Ղրիմեցին գրեթէ նոյն աւանդութիւնը կը կրկնէ, սակայն եկեղեցիները իրարմէ կը բաժնէ եւ իրարմէ քիչ մը հեռու կը դնէ: Կը գրէ՝ «Եւ ըստ այսմ բա-

նից տարի երեւի ի Սանահին անդր երից եկեղեցեաց զոլ առաջինն վաղնջուց, առ որ նկատմամբ բնակիչքն ի Լուսաւորչէ հիմնեալ աւանդեն զՍանահին վանքն: Աւերակ այսր եկեղեցւոյ երեւի մինչեւ ցայսօր յարեւելից հանգստարանի մեծին Սարգսի հօր Զաքարէ սպասալարի եւ Իւանէ Աթաբեկին, երեւին եւ նշանք նախնի հոյակապութեան նորա: Երկրորդն եկեղեցի Ս. Աստուածածնի, գործէ եւ Վարդան որպէս եւ Կիրակոս յիշատակեն, շինեալ յամուրս Աբասայ Թագաւորի հօր Ողորմածն Աշոտոյ արքայի, ի պատճառս կրօնաւորացն փախստեայ եկելոց ի Հոռոմոց եւ ըստ որում դնեն այլք իբր ի ՅՁԳ Թուականին հիմնեցաւ, բայց ըստ վերոգրեալ հեղինակին (որ անծանօթ պատմիչ մըն է) ի Ն. Թուականին կառուցաւ, այն է յամի Տեառն 951 յաւուրս առաջնորդութեան Յոհաննիսի» (Թ. 239 Ձեռագիր Նոր Ջուղայի Ամենափրկիչ վանքի, էջ 164):

Նոյն իսկ եթէ աւանդութիւնն ալ չըլլար, կարելի էր ենթադրել որ փախստական կրօնաւորներ բնականաբար պիտի հաւաքուէին ու համախմբուէին եկեղեցւոյ մը շուրջը աստուածային պաշտամունքներու համար եւ այդ եկեղեցին ինչպէս կարելի է հետեւցնել Յովհաննէս Ղրիմեցիին խօսքերէն թէեւ հոյակապ է եղեր բայց աւերակ ու լքուած եւ օգտագործուած մինչեւ որ Ս. Աստուածածնի նոր եկեղեցին բարձրացած է: Կրնար այդ հին եկեղեցին ալ Ս. Աստուածածին ա-

նուննն ունենալ եւ դայն եռքէն ժառանդած է նորաչէն սրրավայրը :

Ս․ Աստուածածին եկեղեցիէն աւելի անուանի է Ամենափրկիչ կամ Ս․ Նշան եկեղեցին : «Այս եկեղեցի է մեծ քան դայլսն եւ պայծառատեսիլ ի ներքուստ եւ է առ եկեղեցեաւն Ս․ Աստուածածնի ի հարաւոյ, երկոքին իսկ այս եկեղեցիք ունին գկրկին դրունս յարեւմտից եւ ի հիւսիսոյ, որպէս եւ զգաւիթս մէն մի իւրաքանչիւր յարեւմտից» (Թ․ 239, Ձեռ․, էջ 164—165) :

Ամենափրկիչ եկեղեցին մտնել ցանկացողը կը ստիպուի դրան առջեւ կանգ առնել եւ մեծ դրան սեւեռուն նայիլ :

Այդ դուռը Սանահին վանքի հրաշակերտն է : Կը գտնուի գաւիթին արեւելեան որմի մեծ կամարին տակ՝ երեքպատիկ սինադարդ կամարներով : Իւրաքանչիւր սիւն քանդակուած է մէկ ամբողջական քարէ : Դրան բարձրութիւնը երեք արշինէն քիչ մը աւելի է, իսկ լայնութիւնը երկու արշինէ աւելի : Շրջանակուած է զարդարուն քանդակներով : Դուռը ինքը բաղկացած է միապաղաղ եւ սրբատաշ քարերով շինուած կամ կազմուած չորս մեծ ու լայն կամարներէ, որոնք դէպի ցած խոնարհելով հետղհետէ կը պզտիկնան : Ամէնէն մեծ կամարին մէջ տեղը միեւնոյն քարէ քանդակուած է կենդանիի մը գլուխը : Կամարները կանգուն բռնուած են երկու սիւներու վրայ, որոնք երեք մասէ բաղկացած են եւ երեքն ալ զանազան ձեւեր

կը ներկայացնեն։ Վերի մասը քառակուսի ձեւերու կուտակում մըն է՝ մանր քանդակներով, մէջտեղինը կերտուած է հաստ ու բարակ սիւնաձեւերով, իսկ ստորին կամ վարի մասը եռանկիւնի միաչափ ձեւերու խումբ մըն է։ Դրան ճակատին զետեղուած է կիսաշրջանաձեւ քանդակազարդ քար մը։

Արդ մտնենք եկեղեցիէն ներս։ Պարզ է, բայց գեղեցիկ ու ազդեցիկ։ Նաեւ ընդարձակ եւ սրբատաշ քարերով շինուած այդ աղօթատեղին հաստատուած է չորս կամարներու վրայ, բայց առանց սիւներու։ Չորս կամարներու վրայ դրուած է կամարազօտի մը, որուն վրայ բազմած է հսկայ գմբէթը, չորս մեծ լուսամուտներով, որոնցմէ դատ եկեղեցին լոյս կ'ընդունի դեռ ութը պատուհանէ։

Ամենափրկիչ եկեղեցին ունի ութը խորան — երկու հատ երկյարկանի խորան եկեղեցւոյ մուտքի աջ ու ձախ կողմերը եւ համանման երկյարկ խորաններ բեմին աջ ու ձախ կողմերը — եւ ինը պատարագամատոյց սեղան։

Եկեղեցւոյ արտաքին արեւելեան պատին վրայ կան ինը հատ սիւնազարդ եւ քանդակուած գեղեցիկ կամարներ, որոնց քանդակագործութիւնը այլազան է։ Սոյն պատի վերի կողմը քանդակուած են քղանցքահանդերձ եւ սրածայր գլխարկով երկու մարդու պատկերներ։ Անոնք իրենց ձեռքերու մէջ կը կրեն սոյն աղօթավայրին փոքր կաղապարը։

Արձանագրութիւն մը անոնց անունները կը ծանօթացնէ, զի քարի մը վրայ գրուած է՝ «Կիւրիկէ թագաւոր, Սմբատ թագաւոր»։

Եկեղեցւոյ հարաւային եւ հիւսիսային պատերն եւս ունեցած են սիւնազարդ կամարներ։ Անոր երկարութիւնն է 29 արշին, լայնութիւնը՝ 17 արշին, իսկ բարձրութիւնը՝ 32 արշին։

«Այս շինութիւնը իր բարձրութեամբ եւ մեծութեամբ աչքի է զարնում բոլոր շրջակայ շինութիւնների մէջ, բարձր է եւ Հաղբատի տաճարից» (Արձագանք, 1888, էջ 644, 1884, էջ 629. Ազգագր. Հանդ., 1898, Գ., էջ 290—294, 1901, Թ. Ի.—Ը., էջ 383—385 եւ Բիւզանդիոն, 1901, Թ. 1491)։

«Մերձակայ վանօրայք, կը գրէ Ջալալեան, չկարեն համեմատիլ ընդարձակութեան սորա եւ գեղեցկութեան. ունի գերկոտասան պատուհանս ի չափ կատարելահասակ առն, բարձրութիւն սորա է վաթսուն եւ եօթն կանգուն, երկարութիւն քսան երկու եւ կէս, նոյնպէս եւ լայնութիւն. ի մէջ տաճարին գոն ինն սեղանք պատարագի։ Այս եկեղեցի նորոգեցաւ ի ձեռն Տուտէորդւոյ Գրիգորի արքեպիսկոպոսին ի Թուին ՈԼԳ։ Են ի սմա գերեզմանք բազում երեւելի եւ արդիւնական վարդապետաց, որպիսի են Վարդան, Դիոսկորոս, Անանիա, Յակոբ, եւ Ներսէս փիլիսոփայ, որպէս ցուցանէ նորա տապանագիրն» (Ճամբ., Ա., էջ 11)։ Կ'ընդունի շատ մը նպաստներ ու նուէրներ եւ

կ՚ունենայ վերանորոգող եւ չէնցնող բարերարներ ու առաջնորդներ, ինչպէս արձանագրութիւնները կը հաւաստեն:

Ս. Աստուածածին եկեղեցւոյ դիմաց կը գտնուի Ս. Գրիգոր Լուսաւորչի նուիրուած սաղաշէն փոքրիկ եկեղեցին, որուն մուտքը արեւմտեան կողմն է եւ սրբատաշ քարերով շինուած է եւ սիւնազարդ է: Աւանդութեան համաձայն անոր տեղը կանխաւ ուրիշ եկեղեցի մը եղած է եւ զայն հիմնած կ՚ըլլայ Ս. Գրիգոր Լուսաւորիչ, որուն ի յիշատակ նորակառոյց եկեղեցին ալ անոր անունով կը կնքուի եւ որ՝ 1901ին կը վերանորոգուի:

Ս. Գրիգոր եկեղեցին կոփածոյ քարերով շինուած է: Բոլորաձեւ է եւ քանդակներով ճոխ ու զարդարուն: Կաթուղիկէն փոքր է եւ սիրուն: Չորս կամարներու վրայ հանգչած: Ունի երկու պատուհան: Չորս կամարներն ալ, բաց ի մէկէն, ունին իրենց ստորոտը պատուհան: Եկեղեցին որ 12 արշին երկար եւ վեց արշինէն աւելի լայն է, ներքուստ կամարակապ է: Ենթադրելով որ այս ըլլայ Ս. Գրիգորէ հիմնուած աւանդական եկեղեցին, կը համարուի ամէնէն հին եկեղեցին, որ ունի երեք պատարագամատոյց խորան (Բիւզանդիոն, 1889, Թ. 3386· Արձագանք, 1884, էջ 630 եւ Ազգ. Հանդ., 1898, Գ., էջ 296 եւ 1901, Է.—Ը., էջ 380):

Ցաւ է ըսել թէ այս եկեղեցին ածխատան վերածուած է:

Սպասալարներու զամբարանէն — որուն

մասին քիչ մը վերջ — շատ հեռու չէ Ս. Յակոբայ եկեղեցին, որ այսօր աւերակ է, սակայն աւերուած մասերէն յայտնի կ՚ըլլայ թէ բաւական ընդարձակ շէնք եղած ըլլայ եւ սրբատաշ քարերով կերտուած։

Անոր արեւելեան կողմը դարձեալ սրբատաշ քարերով շինուած եւ առանց կաթուղիկէի եկեղեցի մը կը գտնուի։ Այդ՝ Ս. Յարութեան եկեղեցին է։ Մուտքը արեւմտեան կողմէն է եւ շրջապատուած է սանդխաձեւ քանդակներով։ Տաճարին ներքինն ալ սրբատաշ քարերով է, սակայն յատակը հողով ծածկուած։ Ունի երկու պատարագամատոյց խորան, որոնք միջնասիւներով իրարմէ բաժնուած են։ Լոյսը սակաւ է։ Երկարութիւնն է 6 արշին եւ լայնութիւնը չորսէն քիչ մը աւելի։ Նախորդին նման ասոր պատմութիւնը մեզի հասած չէ։

Սանահին գիւղի — որ ունի քանի մը աղբիւր եւ Ձորագետի վրայ ձգուած կամարաձեւ պատմական կամուրջ մը — հարաւարեւելեան կողմը ապառաժուտ բլրակի մը վրայ բարձրացած է անտաշ քարերով եկեղեցի մը կամ մատուռ մը Ս. Սարգիս անունով եւ կը վերաբերի վանքին։ Խորանաձեւ կամարակապ տաճարիկ է, չունի կաթուղիկէ, բայց ունի պատարագամատոյց սեղան եւ լուսամուտ մը։

Նոյն գիւղի արեւելեան դին ուրիշ բլրակի մը վրայ կը տեսնենք Ս. ԿԱՐԱՊԵՏԻ եկեղեցին, որ սրբատաշ քարերով անսիւն շէնք է եւ

*ունի պատարագամատոյց խորան ։ Կիսաւեր է, բայց սիրուած ուխտավայր (Ազգր. Հանդ. 1898, Գ., էջ 305—308 եւ 1901, Է.—Ը., 289—310) ։*

*Սանահին վանքի* Գաւիթը *բաղկացած է երկու մասէ, նախագաւիթ եւ աւագ գաւիթ ։ Առաջինը Ս. Աստուածածին եկեղեցւոյ առջեւ է, իսկ երկրորդը Ամենափրկիչ տաճարի առջեւ ։ Նախագաւիթը ընդարձակ խորանազարդ շինութիւն է, կերտուած միատեսակ սրբատաշ քարերով ։ Անոր հիւսիսային պատին վրայ կայ. Ես Վաչէ ծառայ Զաքարիայի որդի Սարգսի շինեցի գխորանս եւ ետու զիմ ոսկետուփ Աւետարանն եւ զսուրբ Նշանն եւ զգործքս մեծածախիւք ի սուրբ Աստուածածինս. առաջնորդք սուրբ ուխտիս Հ. Վարդան եւ վարդապետս Գրիգոր միաբանօքս հաստատեցաք ի տարւոյն զսուրբ Գէորգին գչարաթն եւ զկիրակէն զամեն եկեղեցիս պատարագ ի կենդանութեան մեր ծնաւղացն եւ յետ մահուան մեր մին աւրն ինձ Վաչէի եւ մինն ամուսնոյ իմ Մամախաթունին, ով խափանէ մեր խղճիս տէրն է առաջի Աստուծոյ (Ազգր. Հանդ. 1898, Գ., էջ 279) ։*

*Այս արձանագրութենէն քիչ մը վար գրուած է. Յանուն Աստուծոյ ես Վաչէ որդի Վաչուտին ետու զիմ դրամագին Բաղալի այգին ի չէն գաւթի Սանահնի սուրբ Աստուածածնիս եւ առաջնորդ սորա Յովհաննէս եւ միաբանքս հաստատեցին զՓիլիպպոսի առաքելոյ տաւնի պատարագ զմէն եկե—*

*ղեցիքս Դաւթի եւ եղբօրն անխափան մինչեւ ի գալուստն Քրիստոսի եւ որ խափանել ջանայ պարտական է մեր խղճիս առաջի Աստուծոյ (անդ, Գ., էջ 280)։*

*Ամբողջ գաւիթին երկարութիւնն է 23 արշին եւ լայնութիւնը 18 արշին եւ 14 վ(երշոկ) եւ բարձրութիւնը 9 արշին եւ 6 վ.։ Բաղկացած է երեք կամարաձեւ շինուած խորաններով, որոնք իրարմէ բաժնուած են չորս չորսական կամարներով։ Նախագաւիթը կեցած է 22 սիւներու վրայ։ Ինչպէս այդ սիւները, նաեւ անոնց ներքնախարիսխները եւ վերնախարիսխները զանազան ձեւերով եւ մեծութեամբ են։*

*Նախագաւիթը արեւելեան կողմէն կպած է Ս. Աստուածածնի եկեղեցւոյն, որուն դուռը կը բացուի միջին խորանի վրայ։ Դրան քով քարեայ մեծ պատուանդանի մը վրայ կը գտնուի կարմիր քարէ շինուած եւ հրաշալի քանդակագործութեամբ խաչքար մը, վրան արձանագրուած՝ Ես Դաւիթ իշխանաց իշխան կանգնեցի զսուրբ Նշան գերեզմանի հաւր իմոյ Գրիգորի, որ երկիր պագէք յաղաւթս յիշէք (անդ, Գ., էջ 281. հմմտ. գաւիթներու մասին Ջալալեան, Ճամբ., Ա., էջ 13)։*

*Նոյն կողմէն Ս. Աստուածածնի եկեղեցւոյ կից կը գտնուի ՄԱԳԻՍՏՐՈՍԻ կոչուած խորանը։*

*Հարաւային կողմի որմի միջին կամարին մէջ կը գտնուի մեծ դուռ մը, որ կը*

բացուի դէպի Ամենափրկիչ եկեղեցւոյ գաւիթը։ Նոյն մեծ կամարի երկու կողմերը կան երկու պզտիկ կամարներ։

Նախագաւիթի կամարներու երկու ծայրակամարներու մէջ կանգնած են երկու մեծ խաչքարեր սեւ քարէ շինուած պատուանդաններու վրայ։ Խաչերը կազմուած են կարմիր քարով եւ սքանչելի քանդակագործութեամբ։

Անոնցմէ մէկուն վրայ գրուած է. Կանգնեցաւ խաչս յիշատակ որդւոյ Սմբատայ Թոոն Համազասպեանց, որ մեռաւ ի պատերազմի եւ թաղեցաւ ի դուռն Աստուածածնի եւ որդի նորա Սմբատ եւ ամուսինն Աղուտ ետուն ի Մղարտն Զարխապաղանց հայրենիքն ամենայն չահու գենով Աստուածածին եւ Խ. օրավար հող, ով զայն հանէ յԱստուածածնէս Դ. Ս. Ժողովոյն նզովեսցի յԱստուծոյ։ Ես հայր եւ վարդապետ Գրիգոր, Վարդան եւ ամենայն միաբանքս տուաք զամէն եկեղեցիքս քառասնից տաւնին զերկու եկեղեցին Սմբատայ եւ զայլն Սարգսի։ Ով խափանէ զվերոգրեալ նզովսն առցին (անդ, Գ., էջ 282 եւ Է.—Ը., էջ 383)։

Նախագաւիթին յատակը ծածկուած է մեծ եւ փոքր տապանաքարերով, զի եղած է հանգստավայրը շատ մը իշխաններու եւ աչքառու անհատներու։ Անոնցմէ շատերը վանքին բարերարներ եղած են նիւթական եւ բարոյական աջակցութեամբ։ Դարձեալ նախագաւիթին կամարներէն եւ սիւներէն շա–

տերը արձանագրութիւններ ունին։ Անոնք կը յիշատակեն մենաստանին տրուած նուէրներն նպաստներն ու ընծաները եւ փոխադարձաբար եղած հոգեկան ու կրօնական յանձնառութիւնները։

Նախագաւիթի հարաւային որմի մէջին մեծ կամարի մէջ կը գտնուի գաւիթին կամ ճիշդը աւագ գաւիթին դուռը, որ մաքուր եւ յղկուած քարէ շինուած է։ Անոր ճակատին վրայ գրուած է. Ի թագաւորութեան Վրաց Գէորգէի յամիր սպասալարութեան Զաքարիայի եւ Իւանայի եղբաւր իւրոյ ի թուին ՈԽ — 1191 — ես Քուրդս, Հասան, Համազասպ, Սարգիս, որդիք Սմբատայ, որդւոյ Համազասպ մարծպանի տուաք զԹչակէան ի մեր հայրենեաց ի մեր հողատայքս ի Սանահին մեր մեռելոց հոգոյն եւ մեր արեւշատութեան. ընկալաք հայրս Յովհաննէս եւ եղբարքս, գրեցաք զՀամբարձում աւրս զամէն եկեղեցիքն Աստուածածնայ մինչ ուխտս ի հաստատութիւն է, զաւր հացն ի նոցա անուն գսեղանիս, մի ոք խափանեսցէ (անդ, Գ., էջ 283)։

Գաւիթը բաղկացած է չորս հոյակապ կամարներէ հաստատուած նոյնքան հաստահեղոյս սիւներու վրայ, որոնք հսկաներու նման ամբողջ շէնքը իրենց վրայ կը կրեն։ Այս չորս կամարներն իրարու հետ միանալով գաւթին մէջ կը կազմեն չորս անկիւններ, փոքրիկ կամարներով. վերի կողմը անոնք կը միանան մանեկաձեւ ուրիշ կամա-

բաղօտիի մը հետ, որուն վրայ հաստատուած է կաթողիկէնման ընդարձակ գմբէթը, որ մէջտեղէն բաց է[1]:

Զորս ահագին սիւներ բաղկացած են ընդ ամէնը երեք քարէ, այն է սիւնի վերնախարիսխէն, միջին մասէն եւ ներքնախարիսխէն: Վերջինը քառակուսի ձեւ ունի, վրայի մասը կլոր, դուրս ցցուած փորով: Վերնախարիսխն ալ պատուանդանի ձեւ կը ներկայացնէ, միայն թէ կլոր եւ արտակարկառ մասը դէպի ներքեւ ուղղուած է:

Մարդ կը ստիպուի հիացումով նայիլ միակտուր քարէ շինուած այդ սիւներուն, գեղեցիկ քանդակներով զարդարուն խարիսխներուն եւ անկիւններու մէջ քանդակուած սափորներու, կճուճներու, եւ կենդանիներու գլուխներու: Այս սիւները քերել ու կանգնել հրամայած են — ի՛նչ ծախսերով եւ աշխատանքներով — Կորիկէ Թագաւորի աղջիկները (անդ, Է.—Ը., էջ 385):

Գաւիթէն եկեղեցի մտնելու դրան ճակատին վրայ կը կարդանք. Ի Թուին Հայոց ՈԼ — 1181 — ի ժամանակս յաղթող Թագաւորին Գէորգեայ[2] եւ յամիրսպասալարու–

[1] «Սանահինի ժամատունը ներկայացնում է նման շինութեան ամենատիպիկ ձեւը» (Տէր Մովսէսեան, Հայկական երեք վանքերի... շինութիւնները, էջ 125):

[2] Գուրգէն Թագաւորը Սանահինի կը նուիրէ Աստղալից երկին կամ Երկնալից ջահը ուրիշ Զափառոքջահի մը հետ Ցանուն սրբոց Քառասնից... եւ ջահս այս պայծառացուցանէ զգաւիթ Ս. Աստուածածնի եւ զսուրբ կաթուղիկէին Սանահնոյ...: Որպէս զի ան թշնամիներու ձեռքը չիյնայ վարդապետներ եւ սար–

թեան Սարգսի եւ որդւոյ իւրոյ Զաքարէի եւ Իւանէի եւ յամիրութեան Քրդին, ես Յովհաննէս առաջնորդ սուրբ ուխտիս շինեցի զերբեմն լեալ զեկեղեցիքս աւդնականութեամբ ամիր Քրդին, եւս վարդապետի մեծի Գրիգորի Քրիստոսի Աստուծոյ եւ զգաւիթս ի հիմանց, մեծաւ յուսով զաշխատակից եղբայրս եւ զհայր Յովհաննէս զարժանին յամենայն աւրհնութեան, զի յաւուրս սոցա կրկին ազատեցան եկեղեցիք մեր յամենայն հարկէ, յիշեցէք ի Քրիստոս (անդ, էջ 286): Ինչպէս կը տեսնուի կարեւոր իրադարձութիւններ է որ այս արձանագրութիւնը մեր առջեւ կը դնէ եւ Սանահինի պատմութեան համար ոչ աննշան կէտեր:

Գաւիթին հիւսիսային եւ արեւելեան պատերը արձանագրութիւններով ծածկուած են, իսկ յատակը գերեզմանաքարերով: Անոնցմէ ոմանք ունին շատ կարեւոր բովանդակութիւն:

Սանահին ունի սրբատաշ քարերով կառուցուած ուրիշ գաւիթ մըն ալ. Ս. Գրիգոր եկեղեցւոյ կից, որ անսիւն է եւ առաստաղը կը հանգչի կամարներու վրայ:

Գաւիթի գմբէթի բացուածքին տակ, յատակին վրայ կայ մեծ փոս քար մը՝ անձրեւի ջուրի համար: Յատակը կամ գետինը ամբողջութեամբ ծածկուած է գերեզմանաքարերով — գրեթէ 74 հատ: Այդ ըրած է

---

կուադներ զայն այրի մը մէջ կը պահեն (Հայաստան, 1857, Թ. 57 եւ Ալիշան, Հայապատում, Բ., էջ 105):

Յովհաննէս առաջնորդը: Իսկ դաւիթին հարաւային որմին մօտ, սիւնի մը առջեւ կը հանգչի քաջարին Մովսէս Արղութեան: Անոր շիրիմաքարին վրայ գրուած է՝ Աստ ամփոփի մարմին քաջ սպարապետի Հայոց գեներալ ադիւտանտ կնեազ Մովսիսի Զաքարեան Երկայնաբազուկ Արղութեանց, ծնեալ ի 1798 եւ վախճանեալ ի 1885 ամի (անդ, էջ 287):

Արդ եկեղեցւոյ դրան ճակատին վրայ գրուած վերոյիշեալ արձանագրութեան համաձայն Յովհաննէս վարդապետը դաւիթը շինել կու տայ 1181ին եւ անոր թեւ ու թիկունք կ՚ըլլան արքայազուն աղջիկներ կանգնելով մէկական սիւն:

Ս. Աստուածածին եկեղեցւոյ հիւսիսային որմին մօտ է ԶԱՆԳԱԿԱՏՈՒՆԸ, որ քառակուսի շէնք մըն է՝ պսակուած փոքրիկ կաթողիկէով: Ունի երկու սրահ: Արեւելեան մուտքէն 28 աստիճան բարձրանալով կը հասնինք առաջին սրահը, որ երեք պատարագամատոյց խորան ունի: Իսկ այդ սրահէն 12 աստիճան եւս վեր ելլելով կ՚ոտնկոխենք երկրորդ սրահը, որ ընդարձակ, անսիւն եւ կամարակապ շինութիւն է:

Զանգակատունը շինուած է սրբատաշ քարերով եւ ունի 28 արշին բարձրութիւն: Անոր կաթողիկէն հաստատուած է վեց սիւներու վրայ: Արեւմտեան կողմն է գլխաւոր մուտքը: Դրան վերեւ կայ խաչաձեւ

բացուածք մը, որուն մէջ զետեղուած է կարմրաքար խաչ մը:

Զանգակատան շինութեան ստոյգ ու մանրամասն պատմութիւնը մութ է, զայն կը վերանորոգէ Սարգիս եպ. Բէրէքեան 1652ին (Արձագանք, 1884, էջ 630. Ազգր. Հանդ., Գ., էջ 301 եւ Է.—Ը., էջ 387—388):

Փոքր գաւիթին հիւսիսային որմին մէջէն է ՆՇԽԱՐԱՏՈՒՆ կամ ԳՐԱՏՈՒՆ կոչուած շէնքին մուտքը: Անսիւն, կամարակապ, կոփածոյ քարերով շինուած քառակուսի հոյակապ հաստատութիւն է: Գմբէթը սրածայր չէ, այլ տափակ եւ մեծ բացուածքով: Տասնուվեցուկէս արշին բարձրութիւն ունեցող այդ գմբէթը կեցած է չորս մեծ եւ սիրուն քանդակուած կիսասիւներու վրայ: Այս կիսասիւները ակնրախ են իրենց կազմութեամբ եւ նմանապէս այլազանութեամբ:

Անոր միակ դուռը սիւնազարդ է եւ արաբական կամարներով:

Հաւանօրէն այս նշխարատան մէջ կանխաւ կը պահուէին այն մասունքները, որոնք ետքէն Ամենափրկիչ կամ Ս. Նշան եկեղեցւոյ մէջ խորանի մը վրայ արկղի մը մէջ դրուած են: Այդ մասունքներէն կամ սրբութիւններէն են՝ Ս. Գրիգորի Աջը, Յովհաննէս Օձնեցիին Աջը, Թովմաս Առաքեալի ականջը, Ղուկաս Աւետարանչին ծնօտի մէկ մասը, Ս. Նախավկային մէկ նշխարը, Ս. Աստուածածնի մազն ու զգեստի մէկ կտորը, նոյնին արծաթապատ պատկերը եւ Ս. Նշանի

մէկ մասը ականակուռ խաչի մէջ ամփոփուած: Նաեւ ուրիշ մասունքներ (Բիւզանդիոն, 1909, Թ. 3886. Ջալալեան, անդ, էջ 11 եւ 48—52. Ազգր. Հանդ., Գ., 299, Է.—Ը., Արձագանք, 1884, էջ 630 եւ 1888, էջ 680):

Նշխարատունը անուանուած է նաեւ Գրատուն կամ Մատենադարան, զի հոն պահուած են ժամանակ մը Ձեռագիրներ ալ: Այլ ետքէն այնպիսի Նպատակներու համար յատկացուած այս շէնքը վերածուած է Բագոսի տաճարի. ամբողջ յատակը ծածկուած է գինիի կարասներով:

Նշխարատունը շինել տուած է Հրանուշ Թագուհին 1063 Թուականին Դիոսկորոսի հայրապետութեան եւ Կիւրիկէի ու Սմբատի Թագաւորութեան ժամանակ (Ջալալեան, անդ, էջ 32):

Անոր մասին Յովհ. Ղրիմեցին կը գրէ՝ «Նշխարատունն... է առնթեր Սուրբ Աստուածածնայ տաճարին յարեւելից հիւսիսոյ, շինուած հաստատակառոյց ի քառանկիւնի դիրս, համակ ի կոփածոյ քարանց, ունելով զպատուհան մի բոլորշի յառաստաղն եւ դուռն միակ ի հարաւոյ որպէս եւ սրահ փոքրիկ կամարակապ, որով կցի ընդ անկեան սուրբ Աստուածածնի, համանգամայն եւ ընդ մատրան Ս. Գրիգորի արեւելեան մասամբ եւ ունի այս սրահ զկրկին մուտս, զմին յարեւմտից կողմանէ, զերկրորդն որ ունի ի միջի զախնան քարեղէն, ի հարաւոյ: Ներ-

քին մակերեւոյթ նշխարատանս է գեղազարդեալ առ հասարակ ազգի ազգի դրուագօք եւ են ի նմա այժմ կարասք գինւոյ եւ ուր պահին մխարանիցն պարէնք» (Թ. 239, Ձեռ., էջ 164—165): Իսկ վերոյիշեալ գաւիթի մասին կ՚արտայայտուի. «Գաւիթն ... է նոյն իսկ գաւիթ Ամենափրկչին որ կոչի ժամատուն, կառուցեալ յարեւմտից տաճարին ի վերայ չորից քարեղէն միապաղաղ ստուարագոյն սեանց, համակ ի տաշածոյ քարանց ունելով զպատուհան բոլորշի յառաստաղն եւ դուռն միակ ի հիւսիսոյ որ հանէ ի գաւիթ Ս. Աստուածածնի: Ի վերայ իւրաքանչիւր սեանց նորա են մի մի արձանագիր որոց կանգնեցին զայնս, այն է կողակցի եւ երից դստերաց Կիւրիկեայ արքայազնի Բագրատունւոյ» (անդ, էջ 168—169):

Տէր Մովսէսեան նախորդին մասին կը հաւաստէ. «Սանահինի Հանդիսասրահը — այդպէս ենք մենք կոչում ի տարբերութիւն ոչ հիմնաւոր կերպով նրան յատկացրած Նշխարանոց կամ Մատենադարան անունների — իբրեւ կառուցուածք հայ ճարտարապետական յիշատակարանից մէկն է» (Հայկական երեք վանքերի... շինութիւնները, էջ 134, հմմտ. էջ 131 եւ 133):

Նախագաւիթին հիւսիսային կողմը Ամենափրկիչ եւ Ս. Աստուածածին եկեղեցիներու մէջ տեղը կայ կամարակապ շէնք մը որ կոչուած է ՄԱԳԻՍՏՐՈՍ ՃԵՄԱՐԱՆ, վասն զի կ՚աւանդուի թէ հոն Գրիգոր Մագիստրոս

երբեմն դասաւանդութիւններ ըրած ըլլայ։ Ութանկիւն քառակուսի սիւներու վրայ կը բոլորուին ութը ռոմանական կամարներ, որոնք կը կազմեն 16 արշին երկար, 3·50 լայն եւ 6·50 բարձր սրահ մը։ Հոն որմի մը վրայ հաստատուած են երեք փոքր կամ միջակ խաչքարեր։

Սանահին վանքը եղած է սրտագրաւ վայր մը, ուր շատերը բաղձացած են իրենց մշտնջենական հանգիստը վայելել։

Ս. Աստուածածին եկեղեցւոյ արեւելեան պատին տակ — դուրսը — կայ միապաղաղ եռանկիւնաձեւ քարաշէն դամբարան մը։ Հոն կը հանգչի թագաւոր մը. Այս է հանգիստ Գուրգէնայ որդւոյ Աշոտոյ Ողորմածի։ Անոր մերձ է Դաւիթ Անհողի գերեզմանը, որ այսօր գրկուած է տապանաքարէ։ Զոյգ թագաւորներու դամբարանները ունեցած են կամարաձեւ խորաններ, որոնց քարերը դժբախտաբար Յովհ. եպ. Տէր Բարսեղեան վերանորոգումներու կը գործածէ։ Արքայական այս հանգստավայրերու մօտ կան ուրիշ գերեզմաններ ալ. այսպէս՝ անոնց քով թաղուած է Ներսէս փիլիսոփան։

Ամենափրկիչ եկեղեցիէն քիչ մը հեռու եւ անոր արեւելեան կողմը կառուցուած են մատուռներ, որոնք կը կազմեն ՍՊԱՍԱԼԱՐՆԵՐՈՒ Դամբարանը։ Ան կը բաղկանայ երկու մասէ, հին եւ նոր։ Հինին մէջ ամփոփուած են երեք անձ, իսկ նորին մէջ տասնուեօթը անհատ. ամէնն ալ Սպասալար–

*ներու եւ Արղութեան կամ ադնուատոհմ ուրիչ դերդաստաններէ ։ Հոն յաւիտենական քունը կը ննջեն Մեծն Սարգիս, Մեծն Զաքարէ (Վարդան, Պատմ., էջ 139—140․ Կիրակոս, Պատմ., էջ 98․ Ազգր․ Հանդէս, Է.—Ը., էջ 392․ Արձագանք, 1884, էջ 630)։*

*Իշխանազուններէ զատ թաղուած են Սանահինի մէջ բազմաթիւ եկեղեցականներ եւ աշխարհիկներ, այսպէս եկեղեցականներէն՝ Դիոսկորոս (Կիր., էջ 51), Գրիգոր Տուտէորդի (Ս. Յարութիւն եկեղեցւոյ կից, Լոյս, 1911, էջ 10, Թ. 29), Յովհաննէս Ուսուցիչ (Ազգր. Հանդ., Գ., էջ 307)։*

*Սանահին վանքը դարերու ընթացքին ենթարկուած է բնութեան աւերիչ տարրներուն եւ մարդկան թշնամական արարքներուն, սակայն ունեցած է վերանորոգողներ, բայց անտիճանաբար միշտ տուժած է եւ անշքացած։ Այսօր դեռ կանգուն է եւ իբրեւ հոյակապ յուշարձան հայ ճարտարապետութեանն՝ նկատառումի առարկայ (Էջմիածին Ամսագիր, 1953, Թ. ԺԱ.—ԺԲ., էջ 41—53)։*

*Անոր նկարագրութիւնն ու պատմութիւնը շատերուն գրչի նիւթ եղած է եւ պիտի ըլլայ։ Յիշենք քանի մը հատ՝ Ջալալեան Ս. Ճանապարհորդութիւն ի Մեծն Հայաստան, Տփխիս 1842, էջ 1—52, Ինճիճեան Հ. Ղ., Նոր Հայաստան, Վենետիկ 1806, էջ 279, Մեղու, 1860, Թ. 1—3, Արարատ, 1901, էջ 271 եւ 338, Արձագանք, 1884, էջ 627—630, 1888, էջ 517 եւ 645,*

Ազգր. Հանդ., Գ.(Ա.), էջ 276—312, 1901, Է.—Ը., էջ 378—395, Բանասէր, 1901, էջ 260, Բիւզանդիոն, 1901, Թ. 1492, 1510, 1909, Թ. 3886, Լումայ, 1901, Ա., էջ 180, Բ., էջ 442, Հովիւ, 1914, Թ. Ը., էջ 124, 138, Լոյս, 1911, Թ. 29, էջ 8, 1912, Թ. 41, էջ 165, Թ. 49, էջ 41, 1913, էջ 17, Ճռաքաղ, Բ., էջ 121, Նոր Դար, 1891, Թ. 49—50, Էջմիածին Ամսագիր, 1953, Թ. ԺԱ.—ԺԲ., էջ 41—53 եւն եւն. Brosset M., Sur les couvents arméniens d'Haghbat et de Sanahin ի Milanges asiatiques de l'Acad. imprl. des sciences de S. P. t. IV, էջ 605, Նոյնը՝ Описанiе монастырей Акпатскаго и Санаинсаго, архимандр. Іоанна Крымскаго. Déscription des monastères arméniens d'Haghhat et de Sanahin, par l'archim. Jean de Crimée ... Mémoires de l'Acad., VII sér., t. VI, 1863, էջք 94 եւն եւն):

Էջմիածին Ամսագրի համեմատ (1953, Թ. ԺԱ.—ԺԲ., էջ 52) Սանահինի շէնքերու շինութիւններու ժամանակագրութիւնն կամ սկզբնաւորութիւնն ու շարունակութիւնն է այս, որ սակայն որոշ սրբագրութեան ու փոփոխութեան կը կարօտի (հմմտ. վերը).

Ս. Գրիգոր եկեղեցի Ը.—Թ. դարու մէջ,
Ս. Ամենափրկիչ եկեղեցի Ժ. դարու մէջ,
Ս. Աստուածածին եկեղեցի Ժ. դարու մէջ,
Ժամատուն 1211ին,
Գաւիթ 1181ին,

*Մագիստրոսի ճեմարան ԺԱ. դարու մէջ, Աղբիւր եւ կամուրջ ԺԳ. դարու մէջ։*

*Սանահինի այս բոլոր շէնքերը օժտուած են եւ հարուստ են արձանագրութիւններով։ Անոնց մասին պիտի խօսինք։*

---

## ՍԱՆԱՀԻՆ ԵՒ ՀԱՂԲԱՏ ՎԱՆՔԵՐՈՒ ՀԻՄՆԱՐԿՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԵՒ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՆԵՐ ԱՆՈՆՑ ՄԱՍԻՆ

Յովհ. Ղրիմեցի վարդապետը շատ աղէկ կ'արտայայտուի, երբ կը գրէ «ի վերայ շինութեան Հաղբատայ, որպէս Սանահինի վանաց, տարաձայնութիւն է առ հին պատմագիրս ըստ տեղւոյն կամ նահանգին ուրանօր շինեցան, երկրորդ ըստ ժամանակին. երրորդ ըստ հեղինակին կամ ըստ անձին որմէ շինեցան» (Թ. 239, էջ 58)։

Հետեւաբար նախ կարդանք թէ ի՛նչ կը գրեն պատմագիրներն ու ժամանակագիրները։ Նաեւ նկատի առնենք արձանագրութիւններու եւ ուրիշ գրութիւններու բովանդակութիւնները։

Ստ. Ասողիկ կը գրէ՝ «Յաւուրս սորա (Աշոտոյ, որդւոյ Աբասայ) շինեցան կրօնաւորանոցք ճգնականաց տեղիք Սեւորդեաց աշխարհին, հաւասարակեացք, միաբանականք, ըստ յառաջասացեալ կանոնին սահմանադրութեան սրբոյն Բարսղի, որոց երկոցունց տեղեացն անուանք Հաղբատ եւ Սանահին հանդէպ միմեանց միակրօնք ի տան Աստուծոյ արանց Ճ.ոց եւ առաջնորդ Սանահնի Յովհաննէս գիտնական այրն Աստուծոյ, իսկ Հաղբատայ Սիմէոն ճգնազգեաց ծառայն

Քրիստոսի[1]» (Պատմ. էջ 181 եւ հմմտ. 173-4- Պետերբուրգ 1885) ։

Վարդան Պատմագիր կը հաղորդէ. «Իսկ Աշոտ որդի Սմբատայ որ Երկաթն կոչեցեալ.. զկնի մահուան հօրն... տիրէ ամենայն հայրենեաց իւրոց ամս քառասուն եւ ինն յերեքհարիւրերեօթանասուն եւ մի թուին։ Ի սորա աւուրս յոյժ բազմութիւնք կրօնաւորաց հալածեալք ի Հոռոմոց աշխարհէն ... եկեալ յաշխարհս մեր շինեցին յոլով վանորայս... ի նոցանէ առեն շինեալ զՍանահնին Ս. Աստուածածինն» (Պատմ. էջ 87—88) ։ Ապա կը յաւելու՝ «Առնու զթագն Աշոտ որդի նորա (Սմբատայ) Ողորմածն կոչեցեալ.. սա զփոքր պարիսպն Անւոյ շինեաց եւ զամենայն բրգունսն եկեղեցիս յօրինեաց ի չորեքհարիւր երեքտասան թուին եւ բարեպաշտ կողն իւր Խոսրովանոյշ շինէ զփառապարդ սուրբ ուխտսն զՍանահին եւ զՀաղբատ» (անդ, էջ 89—90) ։

Կիրակոս Գանձակեցի իր ուսումնակիցին խօսքերը գրեթէ ամբողջապէս կը կրկնէ, բայց նաեւ կ՚աւելցնէ «Ծինեցին (Հոռոմներէն

[1] Աստղիկ դեռ կը հաւաստէ «Ծինեցին եւ եկեղեցի մի յանուն Ամենասրբուհւոյ Աստուածածնին ի վանքն որ կոչի Սանահին ի սահմանս Լօռէ քաղաքին որ էր գեղեցկայարմար եւ չքնաղատես եւ կոփածով եւ պողովատաչ վիմօք զմրէթաւորեալ եւ երկնանման խորան կառուցեալ ի վերայ գաղաթան Նշանն ամենայաղթ» (Ալիշան կոփածով կը սրբագրէ կոփուածո՞վ, հմմտ. Հայապատում, մեծադիր, էջ 287) ։

*արտաքսուածները) եկեղեցի մի յանուն Ս. Աստուածածնի, որ կոչի Սանահին ի սահմանս Լոռէ քաղաքին[2]» (Պատմ. էջ 48) եւ ապա կը կցէ սա կարեւոր տեղեկութիւնը «Իբրեւ եւես Կիւրիկէ արքայ Բագրատունեաց որդի Դաւթի, որդւոյ Դերենկան, որ հիմնարկեաց զհռչակաւոր ուխտն Հաղբատ եւ զՍանահին» (անդ, էջ 56)։*

*Սամուէլ Անեցին կ'աւանդէ թէ «Ի ՆԺԶ թվին շինեցաւ Հաղբատ եւ Սանահինն Ժ. ամաւ յառաջ քան զՀաղբատ շինեցաւ ի Խոսրովանուշ թագուհւոյն ի կնոջէ Աշոտոյ Ծահնշահի» (Ժամանակագրութիւն, էջ 100)։ Դարձեալ «Ծինեաց ի Սեւորդիսն զհրաշալի զուխտն զՀաղբատ եւ զՍանահին կին Աշոտոյ Ողորմածին Խոսրովանուշ վասն արեւշատութեան որդւոց իւրոց Գուրգենոյ, Սմբատայ եւ Գագկայ» (անդ, էջ 100)։*

*Մխիթար Այրիվանեցի կը պատմէ թէ 951ին «Ծինեցան Հաղբատ եւ Սանահին ի Խոսրովանոյշ թագուհւոյն» (Պատմ. Մոսկուա 1860 էջ 56)։ Իսկ Առաքել Դաւրիժեցւոյ մօտ կայ. «Թուին ՆԺԴ. շինեցաւ Հաղբատ եւ Սանահին (Պատմ. էջ 621)։ Մինաս Ամթեցին ունի «Թագուհի սորա (կին Աշոտոյ) շինեաց զՀաղբատ եւ զՍանահին զհռչակաւոր վանօրայս ի թվին ՆԺ — յամին 961» (էջ 33)։*

*Երուսաղէմի Թ. 1455 Ձեռագրին մէջ*

---

[2] *Հմմտ. վերը ծն. 1։*

կայ. «Թագաւորէ Աշոտ ամս ԾԲ ... ի սորա աւուրս շինեցաւ Հաղբատ եւ ժամ (կարդա՛ ժ. ամ) անցեալ Սանահինն շինեցաւ» (Յովսէփեան, Յիշատ. Ա. էջ 87):

Գրեթէ այս միեւնոյն տեղեկութիւնները կը կրկնեն ժամանակագիրները (հմմտ. Յակոբեան Վ. Մանր ժամանակագրութիւններ, Ա. Երեւան 1951, էջ 25, էջ 391, ուր կայ ՆՂԷ (1046) շինեցաւ Հաղբատ. բայց այս հաւկնալու է նորոգութեան եւ նոր յաւելումի մասին, էջ 148 եւ Բ. էջ 501):

Դարձեալ նոյն բովանդակութիւններն ու աւանդութիւնները ունին նաեւ Թուղթերն ու հրովարտակները եւ կալուածագրերը: Յիշենք. Յովսէփ Արղութեան թղթի մը մէջ կը գրէ Այլ այն որ յաջողէ ի մեզ գկամելն եւ գտանելն տնօրինեաց ի միտս Հօրս ձերոյ այց ելանել եւ ի խնդիր պարտուց ազատեցման եւ վերանորոգութիւն Սանահնու սուրբ Աստուածածնայ գերահրաշ վանից մեր...որ ի սրբոյն Գրիգորի Լուսաւորչէն մերմէ հիմնեցեալ, ի յԱշոտոյ արքայէն Բագրատունեաց եւ ի մեծ Թագուհւոյն նորին Անոյշն կոչեցելոյ հաստատեալ եւ յետ ժամանակաց ի մեծագործ նախնեաց իմոց ի Զաքարեայ ամիր սպասալարէն Հայոց եւ Վրաց եւ որդւոց նորին գերասքանչ արհեստիւ գեղազարդեալ, որոց եւ պատուական գամբարանքն անդ տեսանին մինչեւ այսօր» (Դիւան Թ. էջ 155): Վախուշտի Բագրատիոն Վրացին կը

*գրէ «Իսկ Հաղբատն (Ախպատի) եւ Սանահին (Սանահինի) Վրաց Թագաւորի կառուցվածն են, թէեւ Հայերը գրում են որ երբ Հայոց Թագաւորների ձեռին էր այս տեղերը (այն ժամանակայ) կառուցվածքներ են նրանք։ Եկեղեցիները գմբեթաւոր են եւ հոյակապ... սրա վերեւից գտնւում է մի փոքր վանք, սակայն մեծաշէն, Քոբայրի (Քոբերի) որը Հայերի ձեռն է։ Նաեւ սրա արեւմուտքից կայ մի վանք կենարար փայտի (ձեւլիձեչմարիտխաա) սքանչելի. Բերդուջ գետի վրայ, որը Հայերի ձեռին է։ Այս տեղ բարձր ժայռում կան բազմաթիւ այրեր եւ այդ այրերում գտնւում են բազմաթիւ հին գրքեր*[3]*...»* (*Մելիքսեթ-Բեգ Լ. Վրաց աղբիւրները Հայաստանի եւ Հայերի մասին*, Երեւան 1955, Գ., էջ 79. *այս գրութեան առաջին եւ երկրորդ հատորը տեսնելու պատեհութիւնը չեմ ունեցած. ինչպէս նաեւ ուրիշ քանի մը կարեւոր գրութիւններ, զորոնք Մելիքսեթ Բէգ կը յիշէ անդ*, էջ 87—89)։

*Անանուն հնագէտ մը կը գրէ. «Հաղբատն ու Սանահինը իբրեւ հոյակապ եկեղեցիներ նոյնպէս եւ գիւղեր (ասում են իբր թէ) Վրաց Թագաւորների շինուած են, իսկ Հայերը գրում են որ հայ Թագաւորներն են կառու–*

---

[3] *Հմմտ. վանքերու եւ այրերու մասին՝ Մելիքսէթ Բէգ Լ. Վրաց աղբիւրները*. Գ. 1955, էջ 270—271։

ցել․ եւ ես այն կարծիքին եմ որ այս վեր-ջինը պիտի լինի ճիշդ։ Սրանք խիստ գեղե-ցիկ եւ հոյակապ են։ Հաղբատի եկեղեցին քառասուն խորան է պարունակում։ Այն տեղ այնքան վանականներ կային, որ երբ ննջեցեալ էին բերում մի օրումն էին կատա-րում քառասունքը։ Իսկ Հաղբատն այնպէս փառաւոր չէ, ինչպէս հին ժամանակներում։ Այս տեղ Վրաց Թագաւորի հաւանութեամբ նստում էր Հայոց եպիսկոպոսը (բնագրում սխալմամբ կաթողիկոսը)... Պատմութիւնից երեւում է որ Հաղբատն ու Սանահինը որպէս գիւղեր, նոյնպէս եւ գմբեթաւոր եկեղեցիներ կառուցուած են 961 թվին Բագրատունեաց Աշոտ Երրորդ Ողորմածի կոչուածի ամուսին Խոսրովանուշի հոգսով» (անդ, էջ 270, հմմտ․ 248)։

Հաղբատի ամէնէն հին կամ մեզի հասած հին արձանագրութիւններն են» Ի ՆԽ (991) Թուականիս Սմբեւոն հայր եւ Տիրանուն երէց շինեցաք եկեղեցիս Սմբատայ եւ Գուր-գենայ փրկութեան (Թ․ 239, էջ 60—61 Ջալալեան, Ճամբ․ Ա․ էջ 79, եւն եւն)։

Ոսկերչեան ունի «Մեք Սմբատ եւ Գուր-գէն Թագաւորքս Հայոց շինեցաք զսուրբ Նշան եկեղեցիս ի Թուին ՆԽ» (991, Թ․ 513 Ձեռ․ Վիեն․ Մխիթ․ Մատ․ էջ 6ա)։ Ուրիշ երկու արձանագրութիւններ 996 եւ 997 Թուականներէ եւ հատ մը 1004 Թուականէն կը յիշեն շինութիւններ եւ նուիրատուու-

թիւններ Հաղբատի. հմմտ. (Արարատ 1887, էջ 75 եւ 1886, էջ 75 եւ 523 հմմտ. 1005 թուականէն, անդ 1887, էջ 217)։

Սանահին վանքի հին արձանագրութիւններն են 951, 989, 952—977°, 1056°, 1061 թուականներէն, որոնք կը հաստատեն անոր հիմնարկութիւնը եւ նպաստի ընդունելութիւնները։

Սանահին վանքի շինութեան մասին կայ սա հին Յիշատակագրութիւնը՝ «Ես անարժան ի կրօնաւորաց փցուն գրիչս Սիմէոն ի թուականութեան Հայոց ՆԻԱ. ին ի նորաշէն վանքս կոչեցեալ Սանահին հրամանաւ հօր իմոյ Յովհաննիսի որ էր վանիցս շինութեան վեց ամ զոր շինեաց բարեպաշտ թագուհին Խոսրովանոյշ ամուսին Աշոտոյ Հայոց Շահնշահի որդի Սմբատայ Բագրատունւոյ Հայոց թագաւորի եւ յառաջին ամի հայրապետութեան հոգեւոր հօրն հանուրց Տեառն Խաչկայ արժանաւոր վերատեսչի եւ յեպիսկոպոսութեան մերումս գաւառի Տաշիր Գրիգորի .... յիշեսջիք ի մաքրամատոյց աղօթս ձեր զԱշոտ Շահնշահ եւ զշինօղ սուրբ ուխտիս զբարեպաշտ եւ զաստուածասէր թագուհին եւ զիւրեանց որդիսկան զարի քաջ շինաւղն Հայոց թագաւորն Սմբատ, եւ զեղբայր նորին զԳագիկ եւ զԳուրգէն. եւս անաւել յիշելոյ արժանի համարեսջիք զհանգուցեալ սուրբ հայրն մեր . առ Քրիստոս

Պաւղիկարպոս, որ սկիզբն արար վանից շինութեան եւ փոխեցաւ ի դասս անմարմնոց, որոյ հանգստեան են երկու ամք» ... (Զարալեան, Ճամբ. Ա., էջ 42—43, Յովսէփեան, Յիշատ. Ա., էջ 126)։

Այս յառաջբերութիւններէ յետոյ հաննենք մեր եզրակացութիւնները։

1. Տեղւոյ հարցը քննութեան կարօտ չէ, զի թէ՛ Սանահին եւ թէ՛ Հաղբատ ներկայիս եւս գոյութիւն ունին եւ իրենց երբեմնի փառքը կը պատմեն մեզ։ Պատմագիրներէն անոնք այս կամ այն նահանգի կամ գաւառի մէջ գրուած են նկատի ունենալով այն նահանգներու եւ գաւառներու սահմաններու ընդլայնումներն ու անձկացումները — երբեմն նաեւ տղիտութիւնն ալ իր մասն ունեցած է։ Սանահին եւ Հաղբատ այն վայրերու վրայ կը գտնուէին ուր ներկայիս կը գտնուին. այս է տեղափոխութիւն չեն ունեցած — երբեմն այլուր շինուած՝ բայց քանդուած եւ ապա նոյն անուններով ուրիշ տեղ բարձրացուած։ Այդպիսի բան տեղի չէ ունեցած։

2. Սանահին եւ Հաղբատ վանքերը Ռոմանոս կայսեր (911—945) օրով կը սկսին հիմնուիլ. ոչ յառաջ քան 928, երբ նոյն կայսեր հրամանով բիւզանդական հողերէ վտարուեցան հայ վանականներ։ Հալածականներու հանդէպ հայ արքունիքը եւ ժողովուրդը բարեացակամ գտնուեցան եւ անոնք ալ եղան սակաւով գոհացող, բայց ձեռներէց

Եւ ժիր ու Հայաստանի գաւառներու մէջ սփռուած՝ նախ հին ու լքուած (ինչպէս Սանահինի համար կ'աւանդուի թէ առաքելահիմն ու լուսաւորչաչէն եղած) վանքերու եւ ճգնավայրերու մէջ պատսպարուեցան եւ այս կամաց կամաց կանգնեցին գեղակերտ եւ նպատակայարմար վանքեր ու եկեղեցիներ։ Նախ կը շինուի Սանահին 951—957ին եւ այս Հաղբատ 961—967ին. անոնք կ'աւարտին, նոր յաւելումներ կը ստանան 991ին եւ աւելի ուշ ատեններ (1063—1065), նմանապէս կը վերանորոգուին, կը վերափոխուին պարագաներու եւ պահանջքներու համեմատ։ Կ'ունենան վերելք, կ'ունենան վայրէջք դարերու ընթացքին եւ են բարեբաստօրէն այն վանքերէն — այն սակաւներէն — որոնք մինչեւ այսօր դեռ կանգուն են եւ հին ժամանակներու եւ պատմական անցքերու դրոշմն ու պատկերը կը ցուցադրեն[4]։

Վանքեր ու եկեղեցիներ, ինչպէս ընդհանրապէս մեծ շինութիւններ, հիմնարկութենէ մինչեւ բարեզարդում շատ ու երկար ժամանակի կը կարօտին, հետեւաբար պատմագիրներու եւ մատենագիրներու տեղեկութիւնները պէտք է յայտ բերել թէ որու՞ մասին է։ Բայց պէտք է ըսել թէ ստէպ մանրա-

[4] Հմմտ. Մելիքսէթ Բէգ Լ. Վարդապետք Հայոց Հիւսիսային կողմանց. Թիֆլիս 1928, էջ 42—45 (այս գիրքը չեմ կրցած տեսնել). Հմմտ. նաեւ նոյնին՝ Վրաց աղբիւրներ Հայաստանի եւ Հայերի մասին, Գ. Երեւան 1955, էջ 87)։

մասնութեան չէն իջնար եւ իրարու կը խառնէն — իրենց համար կարեւորն է չէնքը որ գոյութիւն ունեցած է ։

Ժամանակի հարցը փակենք Յովհ․ Դրիմեցւոյ սա վարկածով «Իսկ զաւարտ շինութեան Սանահինի այսինքն Ամենափրկիչ տաճարին որ անդ համարիմք գէթ իբր երկոտասան կամ երեքտասան ամօք յառաջ լեալ քան զաւարտ շինութեան Հաղբատայ, այն է ի կենդանութեան Խոսրովանոյշ Թագուհւոյն ի թագաւորութեան որդւոյ նորա Սմբատայ Տիեզերակալի, զի այնպէս ցուցանէ վերոյիշատակեալ հրովարտակ նորին Սմբատայ արքայի» (Թ․ 239, էջ 62) ։

«Ի կողմանէ անձին կամ շինութեան մենաստանացս» (Թ․ 239, էջ 62), ինչպէս ըսինք, պէտք է ընդունիլ որ հալածական կրօնաւորները եկան հաստատուեցան Սանահինի եւ Հաղբատի վայրերը եւ գտնելով հին բնակատեղիներ ու աղօթավայրեր զանոնք նորոգեցին, ինչպէս եւ ընդլայնեցին ու անոնց մէջ բնակեցան ։ Անոնք իրենց անտրտունջ աղքատութեամբ եւ բարի վարքով շահեցան սրտերը եւ մանաւանդ յուզեցին արքունիքը եւ ահա Աշոտ Ողորմածի կինը Խոսրովանոյշ Թագուհին եղաւ անոնց մեծ բարերարը եւ անոր դրամական օժանդակութեամբ կանգնուեցան բարձրացան Սանահին ու Հաղբատ վանքերու կարեւոր մասերը հսկողութեամբ եւ նմանապէս նիւթական զգալի օգնութեամբ

*Աշոտ Թագապսակին եւ անոր Գուրգէն ու Սմբատ որդիներուն — որոնց արեւշատութեան համար մայրը անոնց շինութեան ձեռնարկեց եւ անոնց քանդակագործ պատկերները դրուեցան «ի վէմ ինչ մեծ քառանկիւնի, ...ի զգեստ տարազու նախնի թագաւորաց — եւ դարձեալ հսկողութեամբ Սիմէոնի եւ Տիրանունի, ինչպէս արձանագրութիւնները կը վկայեն (հմմտ. Թ.* 239, *էջ* 88, *Արարատ* 1886, *էջ* 488—489, 493, 518, 1901, *էջ* 271, *Զամչեան, Պատմ. Բ. էջ* 838—839 *եւ* 1037, *Հայապատում-մեծադիր, էջ* 287, *Ազգր. Հանդ.* 1901 *Է—Ը, էջ* 396, *Էջմիածին* 1953, *Թ. ԺԱ—ԺԲ. էջ* 52):

*Այնպէս կը թուի թէ Գուրգէնի կամ Կիւրիկէի նիւթական օժանդակութիւնը եւ հետաքրքրութիւնը ակնբախ նշանակալից եղած են եւ այս պատճառով Կիրակոս Գանձակեցի կը համարձակի գրելու· իբրեւ ետես Կիւրիկէի... որ հիմնարկեաց զհռչակաւոր ուխտն զՀաղբատ եւ զՍանահին (Պատմ. էջ* 56): *Երզնկեանց կը կարծէ մատուռի մը շինութեան համար Կիրակոս զինքը հիմնադիր կը համարի (Արարատ* 1886, *էջ* (488—489), *որ սակայն ընդունելի չէ (հմմտ. Մովսէսեան, Լոռիի Կիւրիկեան Թագաւորներու պատմութիւնը, էջ.* 29—34):

*Արքայազուններն ու անոնց հետ իշխանազունները Հաղբատի եւ Սանահինի շինութիւններով ջերմօրէն զբաղած են, զի երկու*

մենաստաններն ալ անոնց մշտնջենաւոր հանգստեան տեղիներ եղած են (Հմմտ. Նաեւ Մովսէսեան, անդ, էջ 35):

Սանահին եւ Հաղբատ բառերը կամ անունները ենթարկուած են ստուգաբանութեան: Իբրեւ թէ Սանահին կազմուած ըլլայ երկու բառէ. Սանահին, այս է՝ հին սան, նկատի ունենալով տեղը կամ վայրին ձեւը եւ դարձեալ Սա՝ հին, այսինքն այս վանքը անկէ հին է (Սանահինը Հաղբատէն հին է) նկատելով շինութեան ժամանակը:

Իսկ Հաղբատի համար Յովհ. Ղրիմեցին կը գրէ «Անունս Հաղբատ ի պարսիկ լեզու ստուգաբանեալ նշանակէ Հախպատ, այսինքն Աստուածապատ կամ Աստուածաշէն, զի հախ ըստ Պարսից կամ ըստ Արաբացւոց է անուն Աստուծոյ, իսկ ապատ կամ աւատ շէն թարգմանի: Իսկ ըստ որում անուն հայկական եւ անուանեալ ի Հայաստան ստուգարանի ի Հայումս Հաղբ է այդ, այսինքն որոգայթ կամ թակարդ կամ ծուղակ եւ ռամկօրէն տուզախ: Եւ այս կրկին եւս ստուգաբանութիւն կարի իմն ի դէպ յարմարեալ սմա նկատմամբ ձեւոյ եւ դրեց վայրին» (Թ. 239, էջ 12, Նոր Դար, 1891, Թ. 70):

Երկու անուններու կամ բառերու երկու ստուգաբանութիւններն ալ գոհացուցիչ չեն (Հմմտ. Brosset M., Mélanges Asiatiques, tirés du Bull. de l'Acad. Impr. des sciences de St. Pétersbourg, tome IV, էջ 604):

Սանահին գիւղի վանքը նախապէս եւ ընդհանրապէս կոչուած է Ս. Աստուածածնի վանք եւ Հաղբատինը՝ Ամենափրկիչ կամ Ս. Նշանի վանք, յետոյ սովորութեամբ եւ դիւրութեան համար գիւղերու անուններով կնքուած են անոնք:

Սանահին եւ Հաղբատ եղած են բաւական երկար ժամանակ բարեկարգ վանքեր եւ անոնց միաբանները հետեւած են Ս. Բարսեղի կանոններուն: Սիրած են աղօթքն ու ժամասացութիւնը եւ այս վերջինիս նկատմամբ պահած են նախնիներէն եկած հասած ձեւերն ու պահերը, մաղթանքներն ու շարականները եւ օրինակ հանդիսացած նմանութեան ու կազմակերպութեան ուրիշ եկեղեցիներու եւ վանքերու: Սիրած են նմանապէս գիրն ու թուղթը եւ տուած են ազգին մատենագիրներ ու արտագրողներ, ջանացած են հիներու աւանդները պահել անեղծ ու անվթար (յիշենք Սաղմոսարանը), ժողովուրդին քարոզած են Աստուծոյ խօսքը եւ տուած են բարի օրինակ: Եղած են անոր առաջնորդներն ու հովիւները: Նաեւ քրտինք թափած են այգիներու եւ դաշտերու վրայ՝ ապրուստի համար. խնամք տարած են շէնքերու եւ կալուածներու վրայ — այս մասին երկու վանքերը իրարու հետ խնդիրներ եւս ունեցած են, բայց մանաւանդ յափշտակել եւ իւրացնել ցանկացող աշխարհիկներու հետ:

*Դժբախտաբար ժամանակի ընթացքին երկու վանքերն ալ ունեցած են վայրէջք, առաջին եռանդը պաղած է — թէեւ երբեմն գայն արծարծել ուզողներ պակաս չեն եղած — եւ նսեմացած են ու անշքացած — գործունէութեամբ ու շէնքերով։*

*Երկու վանքերն ալ եղած են եպիսկոպոսանիստ, սակայն Հաղբատ աւելի երկարատեւ ժամանակով եւ աւելի մեծ ճոխութեամբ եւ լայն իրաւասութիւններով — այս մասին երկուքին մէջ խնդիր եւս ծագած է։ Անոր արքեպիսկոպոս առաջնորդին ձայնը հարկաւոր էր կաթողիկոսական ընտրութեան համար եւ Կիլիկիայի հայրապետութիւնը յուղուեցաւ, երբ Հաղբատ Աղթամարի Դաւիթ հակաթոռակաթողիկոսին կողմը բռնեց — ժամանակ մը (Դիւան Ե., էջ 245, Սմբատեան Գեղարքունիք, էջ 673, Յովսէփեան, Յիշատ., էջ 422, Տաշեան, Մայր ցուց., էջ 92։*

*Հաղբատ կոչուած է մայրավանք եւ միշտ աւելի գնահատուած է հայ ու վրացի արքունիքներէն (հետաւոր Կիլիկիայէն Լեւոն Ն. Լամբրոնացւոյ Սաղմոսաց մեկնութիւն ուէր կը յղէ) եւ եկեղեցական դասէն՝ սկսած կաթողիկոսներէն (Հմմտ. Թ. 239, էջ 101—104)։*

## ՍԱՆԱՀԻՆ ՎԱՆՔԻ ԱՌԱՋՆՈՐԴՆԵՐԸ

Սանահինի առաջնորդներու կամ վանահայրերու լիակատար ցուցակագիրքը չէ կազմուած եւ դեռ կարելի չէ կազմել, զի պատմութիւնը անոնցմէ շատերուն անունն ու գործը լռած է ։

Յովհ․ Ղրիմեցի վարդապետը — ապա եպիսկոպոս եւ առաջնորդ Նոր–Ջուղայի — որ ունի յատուկ գլուխ մը՝ «Տարակարգութիւն առաջնորդաց ուխտին Սանահնի հանդերձ արձանագրութեամբ նորին», կը գրէ․ «Բայց գիտել արժան է, զի պակասին բազումք յառաջնորդաց Սանահնի, որպէս եւ Հաղբատայն․ սակաւք, մանաւանդ ի չորեքտասան եւ հնգետասան դարու, յորս նոյնպէս եւ արձանագիրք գտանին, սակաւք յոյժ, զորոյ պատճառս կարեմք տալ մանաւանդ յաճախ վրդովման աշխարհին ի զանազան բռնակալաց այլազգեաց եւ բազմաժամանակեայ ամայութեան վայրացս այլեւայլ ժամանակս, յորս առաջնորդք Հաղբատայ նստէին ի մայրաքաղաք իւրեանց ի Տփխիս եւ վարէին տակաւին զպաշտօն հովուութեան յընդարձակ թեմորայս իւրեանց, որ ի Վրաստան եւ յայլս, իսկ Սանահնին, դուցէ ոչ բնաւ եղեն, զի ոչ գոյր նոցա մայրաքաղաք եւ վիճակ ընդարձակ, այլ միայն գիւղորայք ինչ ի Տաշիր, որք բազում անգամ ցրուեցան աստ եւ անդ եւ ամայացան» (Թ․ 239, էջ 163) ։

Կրնան կալուածներ յափշտակուած եւ ուրիշին փոխանցուած ըլլալ. նաեւ՝ առաջնորդներէն ոմանք փախուստի դիմած եւ այլուր ապաւինած, ինչպէս նմանապէս կարելի է թէ աթոռի պարապութեան շրջաններ եղած ըլլան, սակայն վանքը շատ երկար ատեն առանց ղեկավարի — առաջնորդի — տեղապահի — մնացած պիտի չըլլայ եւ այդ՝ տեղի ալ չէ ունեցած:

Այնպէս կ՚երեւայ թէ Սանահինի Ամենափրկիչ եւ Ս. Աստուածածին եկեղեցիները երբեմն ունեցած են իրենց ուրոյն առաջնորդները կամ վանահայրերը եւ այս նկատառումով շատ դիւրաւ կարելի կ՚ըլլայ մեկնել միեւնոյն ժամանակի մէջ երկու առաջնորդներու գոյութիւնն ու յիշատակութիւնը: Յաւելունք՝ պատմութեան մէջ տեսնուած են ոտնձգութիւններ ու հակառակաթոռ առաջնորդներ: Սակայն հարկ է չեշտել որ սակայ եւ աւելի չարունակարար մէկ առաջնորդ եղած է երկու եկեղեցիներու կամ միասին առնելով՝ Սանահին վանքի:

Յովհաննէս Ղրիմեցի Սանահինի առաջին առաջնորդ կը յիշէ Ն. Թուականին (951) ՅՈՎՀԱՆՆԷՍ Ա. «Յիշատակեալ ի պատմագիրս, այլ ոչ յարձանագիրս, գորմէ Ասողիկ ասէ (Պատմ. էջ 181). Եւ առաջնորդ Սանահնին Յովհաննէս Գիտնական այրն Աստուծոյ: Զատ ցուցանեն պատմագիրք հաստատեալ առաջնորդ ի Խոսրովանոյչ Թա–

*դուհւոյ, բայց պատմիչն անծանօթ... ցուցանէ զնա լեալ առաջնորդ ոչ միայն յառաջ քան զշինութիւն Ամենափրկչին, այլ եւ յառաջ քան զշինութիւն սուրբ Աստուածածնայ եկեղեցւոյն որ անդ, զի ասէ յաւուրս առաջնորդութեան Տեառն Յովհաննիսի արհիեպիսկոպոսի շինեցին եւ եկեղեցի մի յանուն ամենասրբուհւոյ Աստուածածնին ի վանքն որ կոչի Սանահին ի Ն. Թուականին ի սահմանս Լօռի քաղաքին»* (Թ. 239, էջ 164): *Սակայն միեւնոյն Թուականին արձանագրութեան մը մէջ Սանահինի առաջնորդը կը յիշատակուի ԵՍԱՑԻ. այսպէս՝ Թեփակեր անուանուած Խաչարձանին վրայ կը կարդանք «Ի Թուին Հայոց Ն. ի Թագաւորութեան Հայոց Դաւթի Բագրատունւոյ յառաջնորդութեան հայր Եսայեայ ես Արեգնազով կանգնեցի խաչս»* (Ջալալեան, Ճամբ. Ա., էջ 29):

*Եսայիի մասին Սմբատ արքայի Հրովարտակին մէջ կ՚ըսուի՝*

*«Կամաւն ամենազօր Աստուծոյ Հօր եւ Որդւոյ եւ սուրբ Հոգւոյն. ես Սմբատ Բագրատունի Թագաւոր Հայոց Թոռն տիեզերակալ եւ մեծ Թագաւորին Սմբատայ որդի Թագաւորին Աշոտոյ Ողորմածն կոչեցելոյ, եկի ի տեսութիւն սուրբ ուխտիս Սանահնու, զոր շինեալ էր Թագաւորն Աշոտ եւ Խոսրովանոյշ Թագուհին հայրն իմ եւ մայրն իմ եւ տեսի զի աստուածաչէն եւ Թագաւորաչէն*

*էր, վասն որոյ եւ սիրեցի եւ սիրոյ նշան ատարեալ հաստատեցի զսա աթոռ եպիսկոպոսութեան եւ սահմանեցի վիճակս Աստուածածնիս եւ սուրբ հայրս վանացս զՆսայի եւ տուեալ եպիսկոպոս մեծի հայրապետի Հայոց Խաչկայ եւ անդառնալի հրամանաւ մերով եւ գրով ետու վիճակ եւ երկիրս զայս Սանահնիս, զամենայն երկիրն Տաշրաց, զվերին եւ զներքին մինչ ի լեառն բաղում, յայսկոյս եւ յայնկոյս, մինչեւ ի սահմանս Գուգարաց աշխարհին եւ մինչ ի սահմանս Տփխաց եւ Վրաց եւ ի սահմանս Նիգ գաւառի եւ մինչ ի սահմանս Կայենոյ եւ ցսահմանս Ծաղկոցաց եւ մինչ ի սահմանս տան (գրուած տուն) Շիրակայ:*

*Ես Սմբատ թագաւոր իմ թագաւորական իշխանութեամբըն եւ կաթողիկոսացն հրամանօքն զաթոռս զայս եւ զվիճակս հաստատեցի ի Սանահնի սուրբ Աստուածածնիս, որ էր գերեզմանատուն նախնեաց մերոյ[5] վասն յի–*

---

[5] *Գուրգէն իր նախնիներու մշտենջենական հանգստավայրը կ'օժտէ ջահերով, որոնց մասին ունինք սա կարեւոր տեղեկութիւնները. «Կամաւն Աստուծոյ ամենազաւրին ես Գուրգէն թագաւոր Շահնշահ, որդի Աշոտոյ Ողորմածի յազգէ Բագրատունի, յիշեալ զմեղս իմ եւ առաջի մտաց ունելով զահեղ (օր) դատաստանին եւ ետու տանել ի հալալ գոյից իմոց ջահ մի ունելով յինքեան կանթեղս ԾԺԲ, զի որպէս հոլովելով արեգակն ի ծիրանւոյ յերկնից եւ զդէմս յերկիր ունելով եւ պայծառացուցանելով եւ զսա, որպէս նմին օրինակի եւ ջահս այս ճախր առեալ ի գմրէթ կաթուղիկէիս եւ ոչ զդէմս ի վայր դարձուցանելով եւ կամ հեղլով զճէթն, այլ ի պայծառու–*

չատակի հօր իմոյ եւ մօր թագաւորին Աշոտոյ եւ թագուհւոյն Խոսրովանուշին, ինձ կենաց եւ յետ մահու ի զարդ սուրբ Աստուածածնիս, որպէս հայրն իմ եւ մայրն իմ նորոգեալ էին եւ զարդարեալ զարդարանօք եւ յոլով գեղօրէիւք եւ հայրենեօք, սարով եւ ձորով: Եւ արդ եթէ ոք հրամանացս եւ տուեալ սիգէլիս հակառակի եւ կարէ եւ խափանել ջանայ ի թագաւորաց կամ յիշխանաց եւ ի կաթուղիկոսաց զիմ հաստատեալ վի-

---

թիւն եւ ի լուսաւորութիւն սուրբ կաթուղիկէիս: Եւ ապա չափաւոր ջահ մի այլ յանուն Սրբոց Քառասնիցն ունելով յինքեան կանթեղս ըստ թւոյ նոցա եւ արդ բերելով զնմանութիւն լուսնի, զի որպէս լուսինն ի գիշերի ծագէ եւ խոնաւ ճառագայթիւք իւրովք հասուցանէ զպտուղս երկրի, այլ եւ ի մխիթարութիւն այնոցիկ որ ձիավարեն ի վերայ ամեհի ալեաց ծովուն եւ այսպիսի աւրինակաւ եւ ջահս այս պայծառացուցանէ զգաւիթ սուրբ Աստուածածնիս եւ զսուրբ կաթուղիկէիս Սանահնոյ, ի ծնողաց իմոց գերեզմանատանս Բագրատունեաց, որ տեղիք հաւուն եւ կատարեալ տունելով զպտուղ հոգւոյն, այլ եւ ճանապարհարան ի վերին կայեանս եւ չաւիղս որ անցուցանէ ընդ յորդահոսան բանութիւն ալեկոծութեան գեհենին: Եւ արդ սոքա որ վառեալ բորբոքին ի տաւնս տէրունականաց եւ յիշատակի սրբոց մարտիրոսաց, մին՝ ի տունջեան ի ժամ սոսկալի պատարագին եւ միւսն՝ ի մէջ գիշերի ի լուսաւորութիւն սրբոցս եւ ի պայծառութիւն մանկանց նոր Սիոնի եւ Քրիստոսի փառք յաւիտեանս, ամէն» (Հայապատում, էջ 288—289):

Հ. Ղ. Մովսէսեան չատ ուղիղ կ՚արտայայտուի՝ «ինչպէս վերոյիշեալ ՆԻԶ (977) թուականին ճշգութեան նոյնպէս այս թուին Գուրգէնի թագաւոր ըլլալուն երաշխաւոր չենք կրնար ըլլալ: Մեզի կասկածելի կ՚երեւայ նաեւ իրովարտակին հարազատութիւնը» (Լօռիի Կիւրիկեան թագաւորներու պատմութիւնը, Վիեննա 1923, էջ 28):

*ճակն Թագաւորին Հայոց Սմբատայ յերեք հարիւր տասնեւութ հայրապետացն նզովեալ եղիցի: Գրեցաւ ի Թուականին Հայոց չորս հարիւր քսան եւ ութ» (Թ. 329, էջ 166, եւն եւն):*

*Մխեւնոյն Թուականին (Ն., այս է՝ 951) երկու առաջնորդի ներկայութիւնը կամ պաշտօնավարութիւնը կարելի պիտի ըլլայ դուցէ իրարու հետ համաձայնեցնել, խորհելով որ Յովհաննէս եւ Եսայի միեւնոյն տարին Թեւակոխած են, բայց առաջինը այդ տարւոյն մէջ մեռած եւ երկրորդը նոյն տարւոյն մէջ անոր յաջորդած, եւ Խաչիկ կաթողիկոսը Սմբատ Թագաւորին բազձանքին ընդառաջելով գինքը եպիսկոպոս ձեռնադրած ըլլայ[6]: Մինչ այս հարցը այս կերպով կարծես լուծուած ըլլայ, կը ծագի ուրիշ հարց մը: Յառաջ բերուած հրովարտակին համեմատ Եսայիի առաջնորդութիւնը կը շարունակուի մինչեւ 979 եւ Թերեւս դեռ աւելի երկար ատեն: Եւ սակայն ժամանակի այս անջրպետին մէջ կը հանդիպինք ուրիշ երկու առաջնորդներու, որոնք են ՊՈՂԻԿԱՐՊՈՍ եւ ԳՐԻԳՈՐ: Ջալալեան կը գրէ «Ի Կանոնագիրս Սրբոյն Բարսղի գրեալ է այս յիշատակարան, զոր տեսի ես ի Քիւթիւք անուանեալ մատենի վասն չինութեան վանաց Սանահնի. Ես անարժան ի կրօնաւորաց փցուն գրիչս*

[6] *Կամ մէկը Ս. Աստուածածնի եւ միւսը Ամենափրկիչի առաջնորդ:*

Սիմէոն ի Թուականութեան Հայոց ՆԻԱին ի նորաշէն վանքս կոչեցեալ Սանահին հրամանաւ հօր իմոյ Յովհաննիսի, որ էր վանացս շինութեան ամք վեց, զոր շինեաց բարեպաշտ Թագուհին Խոսրովանոյշ ամուսին Աշոտոյ Հայոց Շահնշահի որդի Սմբատայ Բագրատունւոյ Հայոց Թագաւորի եւ յառաջին ամի հայրապետութեան հոգեւոր հօրն հանուրց Տեառն Խաչկայ արժանաւոր վերատեսչի եւ յեպիսկոպոսութեան մերումս գաւառի Տաշիր Գրիգորի արժանաւոր հաւատապետի որ եւ առաջնորդութեան ամք երկու, ի Թագաւորութեան Աշոտոյ եւ նորին որդւոյ Սմբատայ քաջք եւ յաղթողք Թագաւորաց Հայոց, արդ որք ընթեռնոյք եւ լուսաւորիք ի բանից գրոցս, յիշեսջիք ի մաքրամատոյց յաղօթս ձեր զԱշոտ Շահնշահ եւ զշինող սուրբ ուխտիս զբարեպաշտ եւ զաստուածասէր Թագուհին եւ զիւրեանց որդիական զարի եւ քաջ շինաւղն Հայոց Թագաւորն եւ զեղբայրն նորին զԳագիկ եւ զԳուրգէն, եւս առաւել յիշելոյ արժանի համարեսջիք զհանգուցեալ սուրբ հայրն մեր առ Քրիստոս Պաւղիկարպոս, որ սկիզբն արար վանիցս շինութեան եւ փոխեցաւ ի դասս անմարմնոց, որոյ հանգստեան են ամք երկու. եւս առաւել յիշեսջիք զնորին փոխանորդ զուխտի առաջնորդս զհայրն Գրիգոր մաքուր յոյժ եւ ամենայն առաքինի գործովք լցեալ. յիշեսջիք եւ զմխարան ուխտս մեր միաբանութեան եւ

*եղբայրութեան... աղօթս արարէք վասն իմ անպիտանութեանս, որ ողորմի ինձ Աստուած, յորժամ բանք սպառին եւ գործք թագաւորեն եւ որք յիշէք, յիշեալ լինիք ի Տեառնէ Աստուծոյ...* (*Ջալալեան, Ճամբ. Ա., էջ* 126):

*Այսպէս՝* 1. *Յովհ. Ղրիմեցիի անծանօթ պատմագրին համաձայն Ն. Թուականին կ՚ունենանք Յովհաննէս առաջնորդ մը.*

2. *Վերը յառաջ բերուած արձանագրութեան համեմատ նոյն Թուականին Նսայի առաջնորդ մը, որ Սմբատի Հրովարտակին մէջ դեռ 979ին կը յիշուի.*

3. *Սիմէոնի յիշատակագրութեան մէջ Հայր Յովհաննէս, որ էր վանիցս շինութեան ամք վեց—, զհանգուցեալն սուրբ հայրն մեր առ Քրիստոս Պաւղիկարպոս — եւ վերջապէս՝ զնորին փոխանորդ զուխտի առաջնորդս զհայրն Գրիգոր:*

*Ահա հանգոյց մը որ դիւրաւ կարելի չէ լուծել:*

*Եւ սակայն պէտք է լուծել, գոնէ այնքան՝ որքան կարելի է:*

*Յովհ. Ղրիմեցի անծանօթ պատմագրին Յովհաննէս եպիսկոպոսը կամ արքեպիսկոպոսը եւ Ասողիկի Յովհաննէս Գիտնականը պէտք է իրարմէ զատել եւ միեւնոյն անձը չհամարիլ: Յովհաննէս արքեպիսկոպոսը կրնայ Տաշիրքի առաջնորդ ըլլալ, ինչպէս էր վերյիշեալ (հմմտ. Սիմէոնի Յիշատակա—*

գրութիւնը) Գրիգոր եպիսկոպոսը, զոր Բրոսսէ 966ին Սանահինի առաջնորդ կը նշանակէ (հմմտ. վարը) առանց պատճառաբանութեան — գուցէ սոյն Յիշատակագրութեան վրայ լոկ յեցած եւ որ սակայն սխալ է:

Այս մեկնութեամբ վերյիշեալ իմ վարկածս կարելի չէ անխոցելի լուծում համարիլ եւ Յովհաննէս արքեպիսկոպոսի յաջորդ ընդունիլ Եսայի:

Եսայիի յիշատակութիւնը՝ արձանագրութեան մէջ (հմմտ. վերը) Ն. Թուականին սխալ կը համարիմ եւ կը խորհիմ թէ Ն. տառէն վերջ ուրիշ տառ մը եւս եղած պիտի ըլլայ եւ Ջալալեան, որուն ընթերցուածները արդէն ծանօթ է թէ վստահելի չեն, այդ տառը անտեսած է եւ կամ այն բոլորովին մաշած ըլլալով չէ կրցած տեսնել որ կարդար: Պատճառը իմ ենթադրութեանս այս է. Գուգարքի Հայութեան Դաւիթ անուն առաջին թագաւորն է Դաւիթ Անհողին, որ հաւանօրէն 989ին գահ բարձրացած ըլլայ (հմմտ. Մովսէսեան Հ. Ղ.՝ Լօռիի Կիւրիկեան թագաւորներու պատմութիւնը, Վիեննա 1923, էջ 38—49): Արդէն Ն. Թուականին Կիւրիկեան հարստութիւն գոյութիւն չունէր: — Եսայիի մասին դեռ պիտի անդրադառնամ:

Յովհաննէս Գիտնական վարդապետին անունը կապուած է Հաղբատի Սիմէոն ա-

դաշնորդի անուան հետ: Աստղիկ կը գրէ· «Որոց երկոցունց տեղեացն անուանք Հաղբատ եւ Սանահին հանդէպ միմեանց, միակրօնք ի տան Աստուծոյ, արանց Շ·ոց եւ առաջնորդ Սանահնի Յովհաննէս Գիտնական այրն Աստուծոյ, իսկ Հաղբատայ Սիմէոն ճգնազգեաց ծառայն Քրիստոսի» (Պատմ·, էջ 181): Եւ Սիմէոն կը յիշուի ՆԽ· Թուականէն մինչեւ ՆԾԳ Թուականը, որ է ըսել 991—1005, հետեւաբար Յովհաննէս Գիտնականն ալ այդ շրջանին ապրած ըլլալու է, որով Ն· Թուականին յիշուած Յովհաննէս սա ըլլալու չէ, եթէ այդ Թուականը սրբագրութեան կարօտ չէ (Արարատ 1886, էջ 521 եւ անդ 1887, էջ 73, 217):

Այս պարագաները աչքի առջեւ ունենալէ վերջ հետեւեալ լուծումը յարմար ու բաղձալի կը գտնեմ: Յիշատակագրութեան մէջ յիշուած Պօղիկարպոս հայրն նոյն ինքն է Պօղիկարպոս Կարմրջաձորեցի, որ կրնայ Սանահինի եւ Հաղբատի եւս հիմնադիր նկատուիլ իբրեւ Բիւզանդացիներէ հալածուած կրօնաւորներու ղեկավարներէ մէկը եւ գանոնք տեղաւորողներէ աչքառու մը եւ գուցէ առաջնորդ եղած ըլլալ Սանահինի (967—970°). որ 972ին «ամք երկու» են որ մեռած է եւ որուն կը յաջորդէ Գրիգոր «մաքուր եւ ամենայն գործովք լցեալ» (Ջալալեան, անդ, էջ 52—53) որ վանահայրութիւն ըրած ըլլայ հաւանօրէն 970—978 եւ ապա անոր աթոռը

բարձրացած ըլլայ Յովհաննէս Գիտնական, ժամանակակիցը Սիմէոնի։ Այնպէս կ'երեւայ թէ անոր առաջնորդութեան շրջանը շատ կարճատեւ կ'ըլլայ հրաժարումի կամ մահուան պատճառով եւ Սանահինի դեկավարութիւնը կը ստանձնէ Եսայի, որ Սմբատ Թագաւորի բարեհաճ կարգադրութեամբ եպիսկոպոս կ'օծուի Խաչիկ կաթողիկոսէն։ Անոր եպիսկոպոսական ձեռնադրութիւնը Յովհ. Դրիմեցի Սմբատի Հրովարտակին համաձայն հաղորդելէ վերջ սա դիտողութիւնը յարմար կը գտնէ յաւելուլ. «Ի բանից հրովարտակիս յայտնի ցուցանի միայն զՏաչիր ունիլ Սանահնի ի վիճակ կամ ի թեմ եւ եպիսկոպոսութիւն՝ յիշատակեալ ոչ շարունակարար յամենայն առաջնորդս նորա եղեւ, որպէս երեւի յարձանագրաց, այլ յոմանս եւեթ եւ այն ընդ դահերէցութեամբ Հաղբատայ արքեպիսկոպոսութեան եւ աթոռոյ, որպէս եւ այժմ թէպէտ բազում անգամ առաջնորդք նորա ընդվզեալ բազմադիմի խռովութիւնս յարուցին» (Թ. 239, էջ 166)։

Եսայիի յաջորդներու մասին խօսելէն յառաջ հոս կը ներմուծեմ — թերութենէ խուսափելու համար — Ջալալեանի Սանահինի Ս. Աստուածածին եկեղեցւոյ կամ վանքի առաջնորդներու (հմմտ. վերը) անուանացանկը կամ իր խօսքերով «Ի սուրբ Աստուածածնի վանս եղեալ առաջնորդք են՝

Ի Թուին ՆԻԸ․ Եսայի առաջնորդ,
ՆԺԲ․ Դէոսկորոս առաջնորդ,
Ո․ Յովհաննէս առաջնորդ,
ՈԼԸ․ Յովհաննէս առաջնորդ,
ՈԽԶ․ Գրիգոր Տուտէ առաջնորդ,
ՈԾԴ․ Յովհաննէս Խաչինոյ առաջնորդ,
ՈԿ․ Վարդան եւ Գրիգոր առաջնորդ,
ՈԿԶ․ Փիլիպպոս եւ Գրիգոր առաջ–
նորդ,
ՈԿԴ․ Գրիգոր Վարդան առաջնորդ,
ՈԿԶ․ Գրիգոր առաջնորդ,
ՈՀ․ Յովհաննէս առաջնորդ,
ՈՀԸ․ Գրիգոր առաջնորդ,
ՈՂԹ․ Աւետիս առաջնորդ,
ՈՂ․ Յովհաննէս առաջնորդ,
Ջ․ Աւետիս առաջնորդ,
ՋԴ․ Կիրակոս առաջնորդ,
ՋԹ․ Յօհաննէս հայր,
ՋԺԱ․ Կիրակոս առաջնորդ,
ՋԺԶ․ Մխիթար հայր,
ՋԻԳ․ Կիրակոս առաջնորդ,
ՋԼԸ․ Յովհաննէս հայր,
ՋԿԹ․ Ղուկաս առաջնորդ,
ՌՃԱ․ Սարգիս հայր,
ՌՃԼ․ Բարսեղ առաջնորդ,
ՌՃՀԲ․ Մկրտիչ առաջնորդ Ասկերօղլի
ձայնեալ,
ՌՃՋԳ․ Գրիգոր ի Քապուլն գնաց,
ՌՄԼԳ․ Աբրահամ առաջնորդ,
ՌՄԽԶ․ Առաքել առաջնորդ,

ՌՄԶԲ. Յարութիւն Տէր Բարսեղեանց առաջնորդ–եպիսկոպոս (Ճամբ. Ա., էջ 39—40) :

Ս. Աստուածածնի եկեղեցւոյ կամ վանքի այն առաջնորդներէն շատերը բոլոր եկեղեցիներու, այս է Սանահին վանք անուան տակ գացող ամէն բանի գլուխ կամ առաջնորդ եղած են — արդէն Ս. Աստուածածնի վանք ըսելով յաճախ հասկցուած է Սանահինի վանքը :

Շարունակենք արդ Սանահինի առաջնորդներու գաւազանագիրքը ·

Եսայիի անմիջական յաջորդը եւ ասոր յաջորդները կը մնան անծանօթ : Ջալալեան ՆԺԲ. Թուականին այս է՝ 963ին կը դնէ Դիոսկորոս առաջնորդ : Սակայն այդ Թուականը երբեք կարելի չէ ընդունիլ եւ զայն չէ կարելի սրբագրել կամ ուղղել ՇԺԲ. — 1063 — Թուականով, (Հմմտ. Թ. 239, էջ 166) երբ անիկա իբրեւ հայրապետ–կաթողիկոս կը ներկայացուի (Հմմտ. Հրանուշի արձանագրութիւնը) :

Գիտենք թէ Դիոսկորոս կարճ ժամանակ մը կաթողիկոս եղաւ, սակայն չենք գիտեր թէ ո՛րքան ատեն Սանահինի առաջնորդութիւնը վարած է : Այդ երկար տեւած պիտի ըլլայ : Անիկա անվերապահօրէն կրնայ նկատուիլ նոյն վանքի դպրոցին հիմնադիրն ու

վարդապետը[7] (Հմմտ. Ուռ. Պամ., էջ 215 եւ Արարատ, 1901, էջ 275 եւ 339)։ Այս մասին պիտի անդրադառնանք եւ այդ առթիւ անոր կեանքը նկատի պիտի առնենք։

Դիոսկորոսի յաջորդներն ժամանակաշրջանի մը համար կը մնան անծանօթ։ Ապա արձանագրութիւններու մէջ կը յիշուի ՅՈՎՀԱՆՆԷՍ Բ. որ երկարատեւ առաջնորդութիւն կ՚ընէ եւ մենաստանին բարօրութեան ու յառաջդիմութեան բծախնդիր կ՚ըլլայ։ Ստուգապէս 1151—1191 վանքին ղեկը անոր ձեռքին մէջ է, երբ 1170ին նահատակուած (Ա) Պուպաքր Յովսէփ վկան հոն կ՚իջեւանի։ Սանահին Հաղբատի հետ անոր Վկայաբանութեան մէջ կ՚որակուին «Գերադրական եւ հռչակաւոր» ուխտեր (Նոր Վկաներ, էջ 50 եւ Տաշեան, Մայր ցուց., էջ 89)։

Յովհաննէսի օրով Սանահինի մէջ ԳՐԻԳՈՐ ՏՈՒՏԷՈՐԴԻ վարդապետը իր մահարձանը պատրաստել կու տայ (Թ. 239, էջ 11—12 եւ 170) — կ՚երեւայ ծանր հիւանդութեան մը պարագային, բայց յետոյ նոյն վանքի առաջնորդ կ՚ըլլայ, ինչպէս Կիրակոս Արեւելցի կամ Գանձակեցի գինքը կը ներկայացնէ եւ մխանվամայն կը գրուատէ իբրեւ «Այր երեւելի» (Պամ., էջ 51)։ Մինչդեռ Ներսէս Լամբրոնացի անոր մասին լաւ վկայութիւն չի

---

[7] Աճառեան Սանահինի համանուն երկու առաջնորդ կ՚ընդունի. մին՝ սա եւ միւսը՝ 1061—1063ին. Հմմտ. Անձնանուններ Բառարան, Բ., էջ 71։

տար եւ յատկապէս կը շեշտէ անոր շատա-կերութիւնը եւ աննպաստ տրամադրութիւնը կիլիկեան կրօնական եւ բարեկարգական շարժումներու հանդէպ. «Իսկ Տուտէորդին յանարգութենէ յառաջ եկեալ լեզուագարելոյն փառս որսայ ի մարդկանէ եւ զփառս Աստուծոյ ուտելով ըմպելով ընդ աշխարհականաց զպորտն պարարէ եւ զեկեղեցւոյ դուռն թէ ընդ ո՞ր է բնաւ չգիտէ... Իսկ Հաղբատացիք վարժք այնքան կուրացեալք ի միմեանց նախանձուէ մինչ զի ի բան խօսելն միոյն եւ միւսոյն ունչն առնելն ամենայն վանականաց կատականք են եւ ծաղր... Արդ զայս ամենայն որ ի Հայոց եւ յայլոց ազգացն թողեալ եւ ի մտաց խղճէ բարի վկայութիւն անտես առնեմ եւ ի Զորապետոյ զերկուց արանց, որք իբրեւ զշունս լիրբս հաջեն զկամս հաճեմ, որք վասն զԱնեցի արբեալն ի զուսանաց եւ յորովայնամոլութենէ, յարբեցութենէ ի կաթողիկոսութիւն քաշելոյ զմեզ նախատեն...» (Նամականի Գրիգ. Տղայի, Թուղթ Ն. Լամբրոնացւոյ առ Լեւոն Թագաւոր, Վենետիկ 1865, էջ 122—135):

Արեւելեան այս միարաններու (Հաղբատի ու Սանահինի) բռնած դիրքը հանդէպ Կիլիկեան աթոռին (հայրապետական) եւ անոր գործունէութեան պատշաճութեան սահմաններէն դուրս կ'ելլէ դժբախտաբար եւ ասոր մէջ բաժին ունի Գրիգոր, որ Սանահնի ուրբ Աստուածածնի եկեղեցւոյն բաւական

նկատելի նուիրատուութիւններ կ'ընէ (Արձ․)։

Գրիգոր՝ Խաչենցի էր եւ անոր կը յաջորդէ ուրիշ Խաչենցի մը՝ ՅՈՎՀԱՆՆԷՍ, որ «Սնուցանող էր նոցին իշխանաց» (Կիր․, էջ 84)։ Այս հանգամանքին, բայց մանաւանդ Սանահինի առաջնորդ ըլլալուն համար, Զաքարէ Սպասալարէն անիկա կը հրաւիրուի մասնակցութեան Լօռիի եւ Անիի ժողովներուն (անդ, էջ 84—85)։ Կը շինէ Սանահինի հիւրատունը իր հոգւոյն փրկութեան եւ տէրերուն արեւշատութեան համար, դարձեալ կալուածներ եւ հողեր կը նուիրէ Ս․ Աստուածածնի (հմմտ․ Արձ․)։

Յովհաննէս Սանահինէն կ'անցնի Հաղբատ ստանձնելով հոր առաջնորդութիւնը, իսկ անոր յաջորդ կ'ըլլայ Սանահինի մէջ ՎԱՐԴԱՆ Բ․ որ պաշտօնակից կ'ունենայ ԳՐԻԳՈՐ, ինչպէս արձանագրութիւններէն կը հետեւի։

Յետոյ ՈԿԳ (1214) թուին առաջնորդ կը յիշուի (երկու արձանագրութեան մէջ) ՓԻԼԻՊՊՈՍ, որ նուիրատուութիւններ կը ստանայ եւ փոխարէն կրօնական պարտականութիւններու յանձնառու կ'ըլլայ (հմմտ․ Արձ․)։

Ջալալեանց արձանագրութիւններու վրայ յենլով Յովհաննէս Խաչենցիի յաջորդ կը նշանակէ Վարդան եւ Գրիգոր եւ ապա 1217 թուականին Փիլիպպոս եւ Գրիգոր եւ ապա

ետ դառնալով 1215ին կը նշանակէ Գրիգոր եւ Վարդան առաջնորդներ եւ նորէն 1217ին Գրիգոր եւ անոր յաջորդ 1221ին Յովհաննէս (Ճամբ. Ա., էջ 40): Սակայն անուններու միասին յիշատակութիւնը արձանագրութեան մէջ երբեք չենթադրեր որ երկուքն ալ անպատճառ առաջնորդ կամ վանահայր ըլլալու են, մանաւանդ երբ նկատենք որ ոչ ցանցառ անգամ գրուած է «Առաջնորդ սուրբ ուխտիս Փիլիպպոս հայր եւ Գրիգոր վարդապետ» (անդ, էջ 21):

Այնպէս կը թուի թէ արտակարգ պատճառներու հետեւանքով կա՛մ կարճատեւ պաշտօնավարութիւններ տեղի ունեցած են եւ կա՛մ հարկ համարուած է առաջնորդի մը օգնական դնել — ոտնձգութեան մասին չէ կարելի մտածել, ուր միասին յիշուած են, գի այդ նշան է թէ համամիտ եւ համագործակից եղած են:

Խօսելով Գրիգոր Աբասայ որդի վարդապետի մասին Հ. Ակինեան կը գրէ. «Հիմ չկայ միեւնոյն ժամանակ երկու առաջնորդ ենթադրելու ի Սանահին եւ հարկ է ընդունինք թէ 1214 տարւոյն ընթացքին վախճանելով Փիլիպպոս յաջորդ կարգուած է Գրիգոր Աբասայ որդի: Թէեւ վերջինիս մահուան թուականին նկատմամբ յայտնի յիշատակարան մը չունինք, սակայն 1221էն ետքը տակաւին կենդանի ենթադրել անհնարին է, երբ մենաստանիս առաջնորդ կը յիշատա-

*կուի Յովհաննէս: Բրոսսէ լաւ նկատած է հետեւելով արձանագրութեանցս թէ Գրիգոր վախճանած պիտի ըլլայ 1217ի եւ 1221ի մէջերը: Գերեզմանն մինչեւ այսօր կը տեսնուի սոյն վանացս Ս. Աստուածածնի եկեղեցւոյն հիւսիսային կողմն այսպիսի տապանագրով. Գրիգոր սուրբ վարդապետ որդի Արասայ. ցաւ է որ թուականն մոռցուած է» (Հանդ. Ամս. 1907, էջ 134, հմմտ. Brosset, Description, էջ 57): Մենք եւս Հ. Ակինեանի հետ կ'ընդունինք թէ Փիլիպպոսի յաջորդն է Գրիգոր Արասայ որդին եւ անոր առաջնորդութեան գահը բարձրացած է 1214ին, սակայն նաեւ կը համարինք թէ օգնական եւս եղած է եւ կարեւոր գործունէութիւն ունեցած է որ անոր հետ միասին արձանագրութիւններու մէջ յական յանուանէ յիշուած է (հմմտ. Արձ.):*

*Գրիգոր Սանահինէն կ'անցնի Հառիճոյ վանքը եւ անոր առաջնորդութիւնը կը վարէ (Յովսէփեան, Յիշատակարանք Ա., էջ 798), բայց ապա Սանահին կը դառնայ եւ հոն կը թաղուի:*

*Գրիգոր Արասի որդւոյն կը յաջորդէ ՅՈՎՀԱՆՆԷՍ Դ. որ արդէն 1221ին կը յիշուի (հմմտ. Արձ. Ձեռ. 239, էջ 175 եւ Ջալալեան, անդ, էջ 40) եւ վանքին համար նուէրներ կը ստանայ:*

*Քանի մը տարի յետոյ ՈՀԳ (1223) եւ ՈՀԸ (1229) թուականներուն կը հանդիպինք*

ԳՐԻԳՈՐ Գ. առաջնորդին (Հմմտ. Արձ. եւ Ձեռ. 239, էջ 175 ու Ջալալեան, անդ, էջ 40) որ վանքին անուան վրայ հոգեր կ'առնէ եւ կրօնական պարտականութիւններու կ'ենթարկուի: Հաւանօրէն անորատեն Սանահինի մէջ կը գրուի Եպիփան Կիպրացիին Սաղմոսաց մեկնութիւնը, բայց զարմանալիօրէն առաջնորդին մասին ակնարկութիւն չկայ: Անոր յիշատակութիւնը քիչ վերջ յառաջ կը բերուի:

Գրիգորի յաջորդ կ'ըլլայ ԱԻԵՏԻՍ, որ կը յիշուի 1240ին (Հմմտ. Արձ. եւ Թ. 239, էջ 176 եւ Ջալալեան, անդ, էջ 40): Յաջորդ տարին առաջնորդութեան ղեկը արդէն ՅՈՎՀԱՆՆԷՍԻ (Ե) ձեռքն է: Անոր պաշտօնավարութեան շրջանին է որ Սանահին կը ծանօթանայ Կոստանդին Ա. Կաթողիկոսի Թղթին (կանոնական), զոր Վարդան Արեւելցի հոն կը բերէ ու կը ներկայացնէ եւ առաջնորդի ու միաբաններու ցանկալի հաւանութիւնը կամ հպատակութիւնը կ'ընդունի (Կիր., Պատ., էջ 174):

Ապա Յովհ. Ղրիմեցիի արձանագրութիւններու համաձայն իրարու կը յաջորդեն[8] (Թ. ԽԳ—ԿԵ).

Ձ. (1251) ԱԻԵՏԻՍ Բ:

ՁԴ. (1255) ԿԻՐԱԿՈՍ Ա.:

---

[8] Ջալալեանի անուանացանկը կամ դասադանագիրքը քիչ մը տարբեր է (Հմմտ. վերը):

ՉԸ. (1259) ՎԱՐԴԱՆ Բ.։
ՉԹ. (1260) ՅՈՎՀԱՆՆԷՍ Զ.ᵒ։
ՉԺԱ. (1275) ԿԻՐԱԿՈՍ Բ.։
ՉԼԸ. (1291) ՅՈՎՀԱՆՆԷՍ Է (հմմտ. Թ. 239, էջ 177—181)։

*Յովհաննէս Է.ին յաջորդ կը տեսնենք ԿԻՐԱԿՈՍ Գ. (հմմտ. Արձ. եւ Ջալալեան, ձամբ. Ա., էջ 22)։*

*Այս ժամանակին կարճատեւ ժամանակաշրջաններու մէջ առաջնորդներու այս խրարայաջորդութիւնը երկու անհրաժշտելի պարագաներ ենթադրել կրնայ տալ. նախ՝ թէ քաղաքական աննպաստ անցուդարձեր այդ յառաջ բերած են եւ երկրորդ թէ փառասիրութիւնն ու կամ ընչաքաղցութիւնը Սանահին կռուախնձոր ըրած են։*

*Այս առեններէ եղած են քանի մը արտագրութիւններ Սանահինի մէջ.*

*«Գրեցաւ առասպելս այս եւ աղճատանք հեթանոսականք, զորս յիշէ Գրիոր Աստուածաբան առ ի խաղ առնել զնոսա. քանեւչորս գլուխ։ Դարձեալ իմ Յիսուս ճառին եւ ութեւտասն ի Բարսղի արձանական եւ այլն ի Յուլիանոսի եւ Կիպրիանոսի ճառսն, ընդ ամենայն հարիւր վաթսուն եւ ութն գլուխ, ձեռամբ Յովանիսի յողնամեղ կրաւնաւորի ի թվին ՈԾԷ (1208) ի հոչակեալս Սանահին։ Արդ որք կարդայք կամ ընդաւրինակէք գրագմամեղս գծաւղ յաղաւթս յիշեցէք, ընդ*

նմին եւ զԽաչատուր վարդապետ» (Զարբհանէլեան, Մատենադարան, էջ 739, Յովսէփեան, Յիշատակարանք. Ա., էջ 739)։

Ապա քանի մը տարի յետոյ կը գրուի հետեւեալը.

«Ի Թուիս Հայոց ՈՁԲ° (1233) կատարեցաւ գիրք.... ի վայելումն ինձ եւ... եղբաւրս իմոյ Սարգսի եւ ծնողաց իմոյ։ Նաեւ հոգեւոր ծնաւղաց իմոց որ են քեռիք ըստ մարմնոյ որք բազում ժամանակիս աւուրբք սնուցին զիս իսկ սուրբ Խաչընդուս քահանա. եւ Աստոմ կուսակրաւն արեղայ, որ մինչ եւ պանդխտանաւի յանլոյս երկիրն Սեւորդեաց, ի հոչակաւոր ուխտն Սանահին, զերկոսեան ի միում աւուր կոչեաց կոչողն ամէնեցուն Քրիստոս։ Եւ զՄարտիրոս զաստուածահաճոյն եւ զպատուական քահանայն եւ զՄարկաւագ զմիացեալն ընդ Աստուծոյ եւ զՄարգարէն որ բազում գութս եցոյց մեզ մինչ յատարութեան պանդխտանայաք։ Նաեւ զսիրելի ուսումնակիցն իմ զՄաթէոս զաղբիւրն շնորհացն որ կիսաւրեալ էլ յաշխարհէս եւ զնորին զհարազատն զԿարապետն որ զընթեցուածոց մեկնիչս ինձ աւանդեցին։ Եւ բազում գութ ցուցին եւ զՄխիթար զմիւս աշակերտակիցս եւ զՅուսէփ կազմող գրոցս եւ զՍիմէոն։ Արդ յաւարտ ի վերայ ամենայն տառցելոցս զամէնաւրհնեալ զերեքերանեալ զվարդապետն Խաչատուր որ բազում գութ ողորմութեան արար ի վերայ իմ։ Արդ... յիշեսջիք ի

Քրիստոս նախ զհարազատն իմ... եւ զիս զՍտեփաննոս զատացող գրոցս» (Ակինեան Հ. Ն.՝ Հաւաք. Յիշատ. էջմ. 1204, ժողովածու մեկնողական նիւթոց):

Հոն կայ դեռ «Թ. ՈՁ գրեցաւ աստուածային ընթերցուածս մեկնութեանս ի մեծահրաչակ ուխտ Սանահինս իմով ձեռամբ Մատթէոսի, զոր գրեցի ինձ ի վայելումն եւ ոչ ժամանեցի ի սա ուրախանալ, այլ աւանդեցի զսայ սիրելի ուսումնակցի իմոյ Ստեփաննոսի եւ ես կիսաւրեա գնացի յաշխարհէ եւ սուգ մեծ թողի սիրելեաց իմոց, մանաւանդ հարազատ եղբաւրն իմ Կարապետին, եւ ես Կարապետ առեալ զյիշատակագրեցի խաւարեալ աչաւք մանրեալ ձեռաւք.. ի մեծ զանձարանէն որ իբրեւ զարեգակն փայլէ... ուրքս ի մէջ մարդկան...» (Յովսէփեան, Յիշատակարանք, էջ 879—880):

Յովհաննէս Է.էն եւ Կիրակոս Գ.էն յետոյ, այս է՝ գրեթէ 1315 թուականէն սկսած, մինչեւ ՋԿԹ (1520) թուականը ինչպէս Յովհաննէս Ղրիմեցիի մօտ նաեւ Ջալալեանի քով, որ արդէն այդ հեղինակէն օգտուած է, Սանահինի առաջնորդներու յաջորդութեան օղակը կը կտրի եւ վանքին գործունէութիւնն ալ մութի մէջ կը մնայ: Կը յիշուի 1346ին Մարտիրոս քահանայ Սանահնեցի, բայց չէ կարելի ստուգութեամբ ըսել թէ Սանահինի միաբան ըլլայ. «Զատացաւղ սուրբ աստուածոյս զՄարտիրոս քահանայ Սանահնեցի եւ

գծող Թորոս Տարօնեցի յիշեցէք ի Թուիս հայկ. ՊՂԵ» (Ակինեան Հ. Ն.՝ Հաւաք. յիշատ. էջմ. 2187, ժողովածու)։ Ապա չատ տարիներ վերջ Նարեկ մը՝ է «Գրեալ ի Լոռու գաւառի ի գերահռչակ սուրբ ուխտն Սանահին ի դրան սուրբ Աստուածածնի եւ սուրբ կաթուղիկէիս ի թուաբերութեան ամանակիս արեթական մեծ տումարիս ՊԽԶ — 1397 — յանիշխանութեան աշխարհիս» (Նոտարք, էջ 9, Թորոս Աղբար Բ., էջ 385—386, Խաչիկեան, ԺԴ դարի հայ Ձեռ. Յիշատ., էջ 619)։

Երկու տարի յետոյ կը գրուի սա կարեւոր յիշատակագրութիւնը. «Արդ ի սպառել ժամանակի եւ ի վերջին այսմ դարի, Դէպ մեզ եղեւ փոփոխելի, Գալ բնակիլ ի սմին տեղի, Ի դրան քաւարանի Աստուածընակ այս տաճարի, Յերկնահանդէտ տանս պանծալի, Զոր Սանահին վերաձայնի, Տկար հողւով ի պանդխտի, Յաւեալ անձամբ ողորմելի, Փարատելոյ ճարակ չլինի, Եւ ոչ մխիթար ի սոյն վշտի։ Արդ զամենայն վիշտս եւ աղէտս ո՞ կարէ պատմել զերկնահանդէտ սուրբ աթոռիս զսպառելն յիշխանաց եւ հոգեկիր արանց, Թափուր եւ դատարկ փարթամ արգասեաց։ Եւ մեք ի սոյն ժամանակի բնակեցաք ընդ հովանեաւ Աստուածածնիս երկու եղբարքս հարազատ՝ Յովհաննէս եւ Ղազար սուականուն վարդապետ, այլ մխեղէն եղբայրութեամբ։ Եւ այս ոչ ըստ արժանեաց մե–

րոց․ այլ թէ ինքս կամեցաւ զի աւտար եւ հեռի էաք յայսմ գաւառէ եւ կոչեցաք յետին սպասաւոր այս գերհռչակ սուրբ ուխտիս։ Եւ սկսաք չարադրել զերկուս կտակս ի մի տփեակ, այլ եւ յուսացաք, ի զաւրացուցիչն Քրիստոս եւ գրեցաք շնորհիւ Տեառն զսա անջինջ յիշատակ նախնեաց եւ հոգւոց մերոց։ Արդ գրեալ եղեւ սա ի ժամանակս թագաւորութեան Գէորգեա որդւոյ Բագրատ յաղթող եւ հզաւր արքայի․ զի յաւուրս սորա եղեւ խորին խաղաղութիւն կողմանն Վրաց ձեռամբ Յովհաննիսի եւ Յոհաննիսի սիրանունդ աշակերտի։ Արդ աղաչեմ զձեզ հեզարար սիրով, զի որ աւգտիք ի սմանէ յիշեցէք ի գերամաքուր յաղաւթս ձեր զգրողքս եւ զայլ աշխատակից եղբարքս զԿիրակոս եւ զՄաթէոս եւ զվերոյգրեալք եւ կողկողին զիմաւք ծնաւղիկն մեր, որ սպասաւոր այս միաբանութեանս» (Խաչիկեան, ԺԴ․ Դարի հայ․ Ձեռ․ Յիշատ․, էջ 625—626)։

Այս յիշատակագրութեան համեմատ ՅՈՎՀԱՆՆԷՍ եւ ՂԱԶԱՐ «յետին» սպասաւորներ են Սանահինի։ Վերջինը շատ պայծառօրէն կը յիշատակուի իբրեւ առաջնորդ 1484ին գրուած Աւետարանի մը յիշատակագրութեան մէջ, զի այդ թուականին գրչութեան կ՚ըլլայ «Զրաւ․․․ ի յերկնահանգէտ, մեծարգոյ եւ գերահռչակ ուխտի Սանահին վերաձայնելոյ․․․ ձեռամբ․․․ Ղազար վարդապետի առաջնորդի սուրբ ուխտիս եւ նո–

րին հարազատի Յովս. վարպետի (այսպէս եւ Յոհս աշակերտի) (Խաչիկեան, անդ, էջ 315—316՝ հմմտ. Յովսէփեան, Հաւուց-Թառի Ամենափրկիչը, Երուսաղէմ 1937, էջ 91—92)։

Անկէ յառաջ 1411ին Յովհաննէս Սանահնեցի[9] «ամենամեղ եւ փցուն» գրիչը կ՚արտագրէ Մանրուսմունք մը (Խաչիկեան, անդ, էջ 130)։ Նոյն Յովհաննէս 1421ին կը գրէ ուրիշ Մանրուսմունք մը (անդ, էջ 257 եւ Տաշեան, Մայր Ցուց., էջ 873)։ Այս Յովհաննէսի մասին հմմտ. վարը։

Նմանապէս 1420ին Մարտիրոս քահանան «ի դերահռչակ եւ երկնահանգէտ սուրբ ուխտիս Սանահինի» կը գրէ Աւետարան մը (անդ, էջ 240, հմմտ. Էջմիածին 1951, ԺԱ—ԺԲ, էջ 88)։

Ղազար վարդապետի հաւանօրէն կը յաջորդէ ՅՈՎՀԱՆՆԷՍ վարդապետը։ 1437ին գրուած Շարակնոցի մը ընդարձակ յիշատակագրութեան մէջ կայ. Փառք... արդ գրեցաւ սա ի լաւ եւ ի ընտիր աւրինակէ Խըլկոյ ձեռամբ մեղսակարդ անձին Շմաւոն վարդապետի ի վանս Սանահնոյ ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս եւ սուրբ Կաթուղիկէիս եւ այլ բազմահոյլ եկեղեցեաց եւ բազ–

---

9 Յովհաննէս «ի մանկութենէ սնեալ եւ վարժեալ ի դրան Ս. Աստուածածնի Սանահնոյ» Յովհաննէս եպիսկոպոսին Շարակնոց մը գրել կու տայ, 1423ին (Խաչիկեան, անդ, էջ 303)։

*մագումար սուրբ Նշանաց եւ սուրբ Նշխարաց եւ մերձ գանբիրանի (ա՛յսպէս) քաջ հռետորի Գրիգոր վարդապետի որդո(յ) Արսաա(յ)։ Եւ ի Թվաբերութեան Հայկազեան տումարի ՊԶԶ եւ ի յառաջնորդութեան սուրբ ուխտիս իմաստնոյ եւ առաքինի անձին, անմարմին ի մարմնի եւ մարմնով հաւասարեալ վերին քահանայապետութեանցն լցեալ երկոքին որակաւն տեսականաւն, գործնականաւն համբաւ բարի եւ գործով սքանչելի եւ արուեստիւ նազելի... տէր Յոհաննու նմանեալ ամենեւին անուանակցին իւր սիրելի աշակերտին, Թողեալ զմարմնոյ տկարութիւնն վասն աղաչանաց եւ սիրոյ մերոյ եւ զարդարեաց զսայ սոփերական ոսկւով եւ բազմերանգ գունով եւ գցուեալն կազմով ի մի ժողովեաց եւ ընձեռեաց մեզ վասն բազում գթոյն։ Զոր Տէր Աստուած զարդարեսցէ զսայ երկոքին կենաւքն հանդերձ իւրեաւքն, արեան մերձաւորաւքն եւ ձեռնասուն աշակերտաւքն Ներսէս կուսակրաւնի եւ քաջ փիլիսոփայի եւ Բեհնուչ դպրի եւ Վարդան սարկաւագի...։ Յանուցիր եղաք աշխարհս Վրաց... Եւ վասն այսր պատճառիս բնակեցաք ի սուրբ ուխտս Սանահինս առ ոտս բազմերեան եւ ճգնազգեաց եւ խարազնազարդեաց կուսակրաւնի Յոհաննէս նկարողի այս մատենի...» (Խաչիկեան, ԺԵ Դարի հայ. Ձեռ. Յիշատ. Ա., էջ 468—470)։ Կը խորհիմ այս Յովհաննէս է որ*

1436ին Ձեռնադրութեան Մաշտոց մը գրել կու տայ (Բազմավէպ 1922, էջ 141 եւ Խաչիկեան, անդ, էջ 466)։

Այս՝ «Արդ ես Տէրունական արեղայս յետինս ի կարգաւորաց... գրեցի զԱւետարանս... ի դառն եւ դժնեայ ժամանակիս. որով էառ զՇամշուլդա Շահանշահ Ամիրզեհ, գերեաց եւ կոտորեաց ի թվին ՊՂ (1441) ի յերկնահանգէս եւ գերահռչակ սուրբ ուխտս Սանահին առ դրան մօր լուսոյ Աստուածածնիս կամակցութեամբ եղբարցս Ներսէս փիլիսոփայի եւ այլ միաբանիցս» (Բազմավէպ, 1950, էջ 273)։

Մխեւնոյն Տէրունական եւ Յովհաննէս Սանահնեցի 1447ին կը գրեն Գրիգոր Տաթեւացիի Քարոզգիրքը (Խաչիկեան, անդ, էջ 607 [10])։

ԺԵ. դարու վերջին տասնեակին Սանահինի առաջնորդ կը գտնենք ԲԱՐՍԵՂ, որուն օրով Արիստակէս 1490ին կը գրէ Աւետարան մը (Սմբատեան, Շամախի, էջ 242 եւ Բարխուդարեան, Աղուանից երկիր, էջ 182) եւ Ճարակնոց մը 1497ին, որուն ընդարձակ Յի-

---

[10] 1299ին գրուած Նայեաց մեկնութեան մը մէջ տարբեր գրով կայ «ՊՂ — 1441 — թվիս զոր ղասերգեաց մեծ բարունիս ի սուրբ ուխտս Սանահնս զմարգարէս սուրբ զԵսայիս վասն անպիտան Յոհանիսիս... Ղուկաս անուն մեծ բարունին եւ ծնողացն ամիր Ասաթին եւ իւր մօրն Թանկ ապիզին... ես Յովհաննէս Ծարեցի զայս սակաւ բանս գրեցի» (Սիւրմէեան, Ցուց. Հայ. Ձեռ. Երուսաղէմի Ա. էջ 309)։

շատակագրութիւնը կը բովանդակէ սա կարեւոր տեղեկութիւնները. «Փառք գրեցաւ շարունակ աստուածաշունչ տառի շարականացս ձեռամբ սրբատէր կրաւնաւորի եւ գեղեցկաշար գրչապետի տէր Արիստակէս ճըգնազգեաց կրաւնաւորի ի դրան սուրբ Աստուածածնիս եւ Հրաշափառ կաթուղիկէ սուրբ տաճարիս եւ աստուածընկալ սուրբ Նշանիս ի Թվականութեան Հայկազեան տումարի ՋՃԽԶ (1497), ի հայրապետութեան տէր Սարգիս կաթողիկոսի (յ)առաջնորդութեան սուրբ ուխտիս տէր Բարսեղ եպիսկոպոսի: Արդ ես յետինս ի ծնունդս եկեղեցւոյ եւ անարգս ամենայնի Յովհաննէս պիտականուն վարդապետս ի ծննդենէ սնեալ եւ վարժեալ ի դրան սուրբ Աստուածածնիս Սանահնու ետու գրել զսայ հաւրեղբաւրորդւոյն իմոյ տէր Արիստակէսի շնորհազարդ եւ ճարտար գրչի յիշատակ հոգւոյ իմոյ եւ ծնողացն իմ հաւրն տէր Պարոնին, որ է փոխեալ առ Քրիստոս եւ մաւրն Հաւասումին (Հաւասումսին) եւ եղբաւրն Ստէփանին (Ստեփանոսի) եւ ամուսնոյն իւրոյ Մարգարիտին եւ ծաղկեալ զաւակաց Ղազարին եւ Խէր Պարոնին, զի դեռ եւս գրել եմ պնակիտ որ կարդայ եւ վայելէ զՇարակնոցս եւ զստերացն Աճապնուշին, Եղսաբեթին, Թամամին եւ Դովլաթին: Ով տեսանողք յորժամ տեսանէք զծաղկաւէտ եւ ոսկեզարդ եւ զմարգարտաշար Շարակնոցս յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս

ձեր զբազմամեղս Յովհաննէս պիտականուն վարդապետ հանդերձ ծնաւղաւք :

Դարձեալ յիշեմք զառաջին երախտաւորքն մեր զհաւրեղբարքս, որ են փոխեալ առ Քրիստոս, զՏէր Յովհաննէս ճգնազգեաց եւ ամենայն առաքինութեանց ուսուցիչ եւ վարպետ եւ փակակալ սուրբ ուխտիս Սանահնու եւ զտէր Ներսէս փիլիսոփայն եւ զՋանփաշէն եւ զամուսին իւր զՆուրկարն, որ են եղեալ ի տապանի դրան Ս. Աստուածածնիս :

Ընդ որս յիշեսջիք եւ զհարազատ քոյրն իմ զՍիթ խաթուն, որ է մեռեալ տղայ հասակաւ եւ զմիւս քուրն իմ զԱզամաթն... : Ընդ որ մխարանք սուրբ ուխտիս զտէր Մանուէլ եւ զտէր Մկրտիչ կրաւնաւորքս, որ են զարդ եւ պայծառացուցիչ սուրբ ուխտիս... գի էր Թուական Հայոց ՋԾԽԶ, որ գնացի Երուսաղէմ եւ ի դառնալն եկի ի Բերկրի, տվի ոսկել զՇարակնոցս» (Հանդ. Ամս., 1887, էջ 56) :

Բարսեղի առաջնորդութիւնը բաւական երկարատեւ կ՚ըլլայ : Անոր օրով 1507ին Մկրտիչ կը գրէ Շարակնոց մը (Ակինեան, Հաւաք. Յիշատ. 1629) :

Բարսեղ եպիսկոպոսին կը յաջորդէ ՂՈՒԿԱՍ, որուն վանահայրութեան ժամանակ 1517ին հաւանօրէն միեւոյն Մկրտիչ «ի գերահռչակ ուխտս» Սանահին կ՚արտագրէ

ժամագիրք մը (Ակինեան, Հաւաք. Յիշատ. առնուած Հ. Պոտուրեանէ, Թ. 1466, ի Վենետիկ) ։

Յովհ. Ղրիմեցի եւ Ս. Ջալալեան այս Ղուկասով կը վերսկսին Սանահինի առաջնորդներու խզուած կապին շարունակութիւնը, նշանակելով Թուական 1520, երբ անոր օրով պարոն Աղէս Անկխրճակայ ջաղացը կը շինէ եւ վախմ կուտայ (Հմմտ. Թ. 239, էջ 182 եւ Ջալալեան, անդ, էջ 40) ։

Ղուկասի առաջնորդութեան շրջանն ալ երկար կ՚ըլլայ ։ Կը յիշուի. «Եւ արդ ես յետինս ի կրաւնաւորաց սուտանուն Տէրունական մեղապարտ գրիչս տեսի զսէր եւ զփափագ տէր Յովհաննէս փիլիսոփային գծագրեցի զսա... ի յաստուածաբնակ վանքս Սանահին ընդ հովանեաւ Մաւրս լուսոյ սուրբ Աստուածածնիս ի յառաջնորդութեան սուրբ ուխտիս Ղուկաս բաբունապետիս եւ Ղուկաս արհիեպիսկոպոսի եւ այլ միաբանիցս, որ սատ կան հաւաքեալ ի Թուականութեան ՋՁԳ — 1534 ի դառն եւ ի չար ժամանակի, որով նեղիմք ի յանաւրինաց ։ Այլ եւ յիշեցէք զՋաքարիա սարկաւագն իմ որ բազում աշխատութեամբ սպասաւորե(ա)ց մեզ» (Ակինեան, Հաւաք. Յիշատ. էջմ. 217, Աւետարան) ։

Ջարմանալիօրէն ճիշդ մէկ դար յետոյ այդ Թուականին, այս է 1634ին, Յովհ. Ղրի–

մեցի Սանահինի առաջնորդ կը նշանակէ ՂՈՒԿԱՍ Բ։

Անոր մասին նոյն հեղինակը կու տայ սա տեղեկութիւնները «Ղուկաս Բ. յաղգէ Արղութեանց, ի գարմէ Զաքարիա Սպասալարի, յիշատակի միայն ի տապանագրի իւրում այսպէս՝ Ղուկաս եպիսկոպոս յազգէ Արղութեանց, ի թուին ՌՁԳ։ Իսկ տապան նորա է առ եկեղեցեաւն սուրբ Աստուածածնի, հիւսիսոյ. յարեւմտից դրան նորա, մերձ առ տապան Գրիգորի որդւոյ Սրասայ, հանդէպ արեւելեան դրան գաւթի նոյն եկեղեցւոյ» (Թ. 239, էջ 182)։

Ղուկաս երկարաձիգ տարիներ առաջնորդութիւն ըրած է, զի արդէն 1591ին կը յիշուի առաջնորդ։ «Արդ ես ի յետինս եկեղեցւոյ Յոհաննէս մեղապարտ ողի ի մանկութենէ սնեալ եւ վարժեալ ի դրունս յԱստուածածնիս Սանահնւոյ... տացոյ զսուրբ գիրքս, որ Շարած յակն յիշատակ հոգւոյ իմոյ.. ի թվաբերութեան հայկազն տոմարիս ՌԽ — 1591 — յառաջնորդութեան սուրբ ուխտիս Սանահնոյ տէր Ղուկասի արհեպիսկոպոսին, վարժիչ եւ կառավար սուրբ ուխտիս քաջ քարտուղար եւ բարունի զԿիրակոս վարդապետն յիշեցէք ի Քրիստոս» (Ակինեան Հ. Ն.՝ Հաւաք. Յիշատ.)։

Հմմտ. 1497ի գրուած վերոյիշեալ յիշատակագրութիւնը, որուն հետ ունի շատ զգալի նմանութիւն։

*Անոր յաջորդներէն կ՚ըլլայ ՍԱՐԳԻՍ, Բէքրէքեանց, զոր կը յիշեն Յովհ. Ղրիմեցի (Թ. 239, էջ 183) եւ Ջալալեան (անդ, էջ 40) 1652ին, սակայն անիկա աւելի կանուխ առաջնորդ եղած է։*

*Իրեն համար գրել կու տայ Պատմագիրք մը, որուն յիշատակագրութեան մէջ կը կարդանք. «Փառք որ կարողացոյց զիս... Ներսէս սուտանուն ծրագրել զպատմութիւն թագաւորացն մերոց... գրեցաւ Պատմագիրքս ի յերկիրս Լաւրու ի գեւղս Աւզարի (եւ ոչ Աւզսորի) ի վայելումն Սարգիս արհեպիսկոպոսին... ի սուրբ եւ գերհռչակ ուխտս, որ կոչի Սանահին»։ Խորենացւոյ սոյն պատմութեան Հրատարակիչները կը յաւելուն «Ըստ Մառի այս Սարգիս եպիսկոպոսը Սանահնի վանահայր եղել է 17րդ դարում. նրա վանահայրութեան համար նշանակուած կան 1633 եւ 1652 թուականները, ի հարկէ նա կարող է 1633ից առաջ էլ վանահայր կարգուած լինել, ինչպէս եւ 1652ից յետոյ էլ վանահայր լինել» (Քննական Հրա. Մովսէս Խորենացւոյ Պատմութեան, Թիֆլիս 1913, էջ ԺԹ)։*

*Այս գիտողութիւնը տեղին է։ «1647ին նորոգեցաւ սուրբ Աւետարանս... առաջնորդութեան Սանահնու Սարգիս եպիսկոպոսին ձեռամբ Մկրտիչ դպրի» (Թորոս Աղբար Ա., էջ 219)։ Երեք տարի յետոյ 1650ին — Ներսէս սարկաւագը «Յառաջնորդութեան Սա–*

նաՀնու Սարգիս արքեպիսկոպոսին» կը նորոգէ 1316ին արտագրուած Դանիէլի մարգարէութիւններու մեկնութիւնը (Ակինեան, անդ, Թ. 1650):

1652ին Սարգիս կը նորոգէ Սանահինի Ամենափրկիչ եւ Աստուածածին եկեղեցիները եւ զանգակատունն եւ ճշխարատունն եւ իրեն օժանդակ կ'ունենայ միաբանները եւ բարերար՝ Թումանի որդի Մանուչար [11], (Հմմտ. Արձանագրութիւն.):

Անոր առաջնորդութեան շրջանին Սանահինի եւ Հաղբատի հողերու որո՞ւն պատկանելու շուրջ կնճռոտ հարցը կ'ելլէ եւ պայքարի միջոցին կը սպաննուի անոր եղբօրորդին «Կամակցութեամբ Հաղբատի Աւետիս առաջնորդին»: Այս ատենները Սանահինի անդամ էին տէր Կիրակոս, տէր Ալէքսան, տէր Աթանէս եւ տէր Եւանէս (Conybeare, Cat. Brit. Mus., էջ 302):

Անոր օրով 1661ին Սանահինի մէջ կը գրուի Աւետարան մը, եւ 1666ին կ'արտագրուի ժամագիրք մը Դսեղի մէջ (Սմբատեան, Երնջակ, էջ 287, Արարատ, 1911, էջ 119, Մառ, Ցուց. հայ. Ձեռ. Սեւանայ, էջ 48): Դարձեալ՝ Աւետարան մը 1664ին եւ ուրիշ մը՝ 1675ին (Ակինեան, անդ, Երեւան,

31 Ջալալեան կը գրէ թէ փոքր եկեղեցւոյ կաթողիկէն — երկրաշարժէ քայքայուած — Սարգիս արքեպիսկոպոսը ՌՃԲ (1663ին) կը նորոգէ (Ճամբ. Ա., էջ 10):

1664 եւ Fink, Hauptkatalog… Tübingen, էջ 8)։

Հողերու հարցը կարգի դնելու համար անիկա կը յաջողի Ռոստոմ Թագաւորէն հրովարտակ մը ստանալ։ Զայն յետոյ Հերակլ Թագաւորն ալ կը հաստատէ։ Իր կարեւորութեան համար հոս յառաջ կը բերեմ՝

(Ի մէջ Քէօթիւք անուանեալ մատենին դոյր եւ պատճէն հրովարտակի արքայի Վրաց Ռոստոմայ օրինակ զայս)․

«Կամաւն եւ ողնականութեամբն Աստուծոյ մեք Արքայից Վրաց եւ Կախից երկուց աթոռոցն տիրապետող Արքայից Արքայ Ռոստոմ եւ զուգակիցն մեր Թագուհեաց Թագուհին Մարիամ անդրանիկ եւ սիրելի որդեակն մեր եւ ժառանգ Լուարսաբ ահա սոյն գիր ողորմութեան նորոգեալ շնորհեցաք գերահրաշակ սրբոյ վանիցն Սանահնու առաջնորդ Սարգիս արհի եպիսկոպոսիդ, քանզի յառաջ քան զայս դիմեալ ձեր ի յարքունական դուռն մեր եւ ուք հաճել մեզ ընդ նորոգումն հնագոյն գրեանցն եւ քօթուկացն սուրբ վանից եւ տեսաք ի նոյն գրեանս ձեր զի Արքայն Սմբատ որդին Աշոտոյ ընծայեալ էր սուրբ վանիցն Սանահնու թէմ եւ վիճակ բազում գիւղօրեայք եւ տեղիք որ յայնմ օրէ մինչեւ ցարդ անցանելով… ոչ ոք էր խափանեալ զայն մինչ զի երանելի նախնեաց մերոց արքայից եւս հաստատեալ եւ յաւելեալ որոց իւրաքանչիւրոցն զգիր ի ձեռս

քոյ պատրաստի ունէիր, զորս տեսանելով ահա մեք եւս շնորհեմք եւ հաստատեմք սոյն գրով զտեղիսն Սօմխէթի եւ Բարաթէցւոց մինչ ի քաղաքն Տփխիզ, որով կերպիւ մինչեւ ցարդ ունեցեալ էք ի կողմն Երեւանու Ծաղկոցաձորն մինչեւ ի սահմանս Աղխտեփու Շիրակայ թէմն, որպէս ի հնուց դրեալ ունիք զԼօռու գիւղն եւ Ջոռնակն, որոց սահման է ի կողմն արեւելից, մինչ ի Ջաղացի ջուրն եւ մի կողմն Միրիանու խաչն եւ ի մեծ ջուրն, իսկ ի կողմն արեւմտից մինչ ի Նոր վանից ջուրն եւ միւս կողմն Եղնախաղն նաեւ գարի գիւղն իւր սահմանաւն եւ զոր ինչ ի Լօռի կամ յայգի կամ հող գնոց առեալ եւ կամ առանց գնոց Ջաղացի կամ ջուր սար կամ դաշտ ունէիք, մեք եւս հաստատելով շնորհեցաք այլ եւ ի Սօմխէթ աւերակ տեղի մի գոյր երանելի եւ երջանիկ նախնեաց մերոց արքայից, յորում նախորդք Ձեր Արհիեպիսկոպոսունք սրբոց վանիցդ կառուցեալ էին զեկեղեցի զոր ազատ պահելով մեր ի թագաւորական հարկապահանջութեանց, մինչ ցարդ ոչ գոյ նշանակեալ ի հաշուագրի մերոյ եւ ոչ թէ երբեք հարկ ինչ պահանջեալ, նմանապէս եւ այսուհետեւ ոչ ոք կարէ իշխել զայն ի հաշուագիր մուծանել եւ կամ զարքունական հարկս խնդրել նաեւ ի ձէնջ գնեալ եւ շինեալ Սամծէւրիսու այգին իւր մառանով, Տալաւէրու այգին իւր սահմանովն. Դարբասու այգին իւր մառա-

նումն եւ աներումն, որք էին շնորհեալք եւ ընծայեալք սրբոյ վանիցն Սանահնու. ահա մեք եւս հաստատեալ նորոգեմք առ այն ոչ ոք կարէ վէճս առել կամ խափանել եւ կամ պակասեցուցանել ոչ ի յարքայից եւ ոչ ի թագուհեաց ոչ ի մեծաց եւ ոչ ի փոքունց, զի մեք հաստատեալ եմք սակս օժանդակութեան հոգւոյ մերոյ, վեհանգունիցդ յայտ առնեմք եւ սորայնոցդ հրամայեմք մերս արքունական դռան Վէգիլ Վէգիր Լոռու Սուլթան եւ գործակալք Սոմխէթու տարուղայ եւ մէլիք եւ մեք այսպէս հաստատեցաք եւ դուք մի եւս ջանայք առ ի խափանել, այլ լերուք օգնական եւ ձեռնտու. գրեցաւ սոյն այս գիր հաստատուն եւ անփոփոխ ի թուին Հայոց ՌՃԱին եւ ի Քրոնիկոնն Վրաց ՃԽԵ ի թագաւորութեան մերոյ քսան եւ մի երրորդի եւ ի ձեռս մեր Արքունական դրան ատենադպիր Փիրալի. հաստատէ զսա վերստին եւ ձեռնագրէ Շաւնավազ եւ Մարիամ ի թուին Հայոց ՌՃԸ, ի ներքոյ սոյն հրովարտակի գրի զայն բարձր հրաման կատարեմք եւ մեք այսպէս, զոր յաւիտեան ոչ ոք կարէ եղծանել Գիօրգի, Լեվան, Սայթխուցէս ցիցի. Վախտանգ»:

(Զսոյն հրովարտակ հաստատեալ վերստին արքայն Հերակլ գրելով).

Մեք արքայ ամենայն Վրաց Կախից եւ այլոց Հերակլ երրորդ հաստատեմք զսոյն

գիր ի Թուին Հայոց ՌՃԽԶ Ապրիլի ԺԸին (Ջալալեան, ճամբ. Ա., էջ 46—48:

Սարգիս արքեպիսկոպոսին կը յաջորդէ ԲԱՐՍԵՂ արքեպիսկոպոսը (1681—1698): «Յազգէ Արղութեանց, Պարոնտէր կոչեցեալ, զոր նա եւ ձեռնադրել եպիսկոպոս ի սուրբ աթոռն էջմիածին... եւ արար գլխ ժառանգ մեծի աթոռոյն Սանահնայ սուրբ Աստուածածնին» (Յովհաննէսեան Ա. Դրուագներ հայ ազատագրական մտքի պատմութեան, Երեւան 1957, էջ 458, Ջալալեան, անդ, էջ 40, Թ. 239, էջ 183): Կ՚ուանդուի թէ մինչեւ Բարսեղ «Յարղութական տոհմէ եօթ եպիսկոպոսունք յաջորդեալ էին, սա ութերորդ պարոնն տէր նստաւ այսմ մեծ գահի» (Յովհաննէսեան, անդ, էջ 458):

Անիկա հետամուտ կ՚ըլլայ Սանահինի հողերն ու կալուածները բազմացնելու. «Կամաւն Աստուծոյ եւ Սիրանդեղանց Սիրանդեղս իմ կամաւ եւ իմ յաւժար սրտիւ ծախեցի ի վերայ Բարսեղ Պարոնտէրին Կեչերկուտի ըեմի տակի լանջի Ջուրարանց հողի տակի հողն Հաղնադարանց՝ Զօնքուր հողի վերի կուռն, մէկ ծէրն գնումայ Սուլուխանանց Բոչտարի հողն, մէկ ծէրն գնումայ ճուճուլափոսն, հախն տռանք, մեր կարեացն արարինք օչում դաւ չկայ, ոչ իմոց եւ ոչ աւտարաց, ով որ դաւի անէ ԳՃԺԸ հայրապետացն նզովեալ եղիցի: Գրեցաւ ՌՃԼ Թուին Հոկտեմբերի Ըին: Ես Ալանս

վկայ, Մանուչարս վկայ, Շէրմազանս վկայ. Օրամս վկայ, Սորէկս վկայ, Զուրարս վկայ: Ես տէր Մարտիրոս գրեցի եւ վկայ եմ Աստուծով» (Թ. 239, էջ 183—184), Ջալալեան, անդ, էջ 40, ուր Կէչէրկուտի էր կարդացուի Խէչէրկուտի, եւն եւն: Դարձեալ՝ «Կամաւն Աստուծոյ ամենակալին ես Սմբատս եւ իմ եղբայր Պօղոս եւ մեր որդիքն մեր կամաւ եւ մեր յօժար սրտիւ ծախէցինք Խէչէրկուտի փոսի գլխավէր հողն ի վերայ Բարսեղ տէրին որ մին ծէր գնումայ Շահվէրտուքարի գլխի հողն, մին ծէրն Հախնազարանց հալն, Վանանց լանջի հողի տակն, արաքունոյ կողմն, սոնակայ ճամփու, հախն առանք մեր կարեացն արարինք, օչով դաւի չունի ոչ ազգականք եւ ոչ օտարք, ով որ դաւի անէ կամ ետ ու յառաջ տայ ԳՃԺԸ Հայրպետացն նզովեալ եղիցի. գրեցաւ ՌՃԼԲ Թուին Մայիսի Եւն. ես Սօսի բէգս վկայ, ես Թամազս վկայ, ես Գօդիս վկայ, Դարախանս վկայ, Մանթաշս վկայ, Եղանս վկայ...: Ես տէր Սարգիս գրեցի եւ վկայ եմ, Աստուած վկայ» (Ջալալեան, անդ, էջ 41):

Սանահին կը տիրանայ դեռ ուրիշ անշարժ գոյքերու, ինչպէս Քիւթիւկը կը հաստատէ.

(Ի մէջ Քիւթիւկ անուանեալ մատենին գրի այսպէս).

Կամաւն Աստուծոյ ամենակալին ես Զումենց Թամազի որդի Պապէս իմ կամաւս

եւ իմ յօժար սրտիւս զայս գիրս ետու քեզ Բարսեղ պարոն տէրէդ, որ վանքի Ջրաղացի բանդն մեծ ջուրն աւերեալ էր, ինձանից արխի տեղ ուզէցիր. ես Պապէս իմ կամաւս մեր Հայրական Նորքիցն արխի տեղ տվի քեզ պարոն տէր Բարսեղ եպիսկոպոսիդ, բայց արխի տեղի համար բաղադն տվեր մեզ փրձլանցէ գնվածու այգի կէսն դէպ ի վանքի մեծ այգու կողման աղբնքի մէկ ծէրն գնումայ դէպի բոչատարն, մէկ ծէրն գալիս Միրինանց աղբէնքն, որովհետեւ մեծ Մուրատի կին Զաղան Ջրաղացն արխի տակի բախճովն ջրովն Ջրաղացի վէրի այգին իւր քարէ ընձանովն վախմ է արարեալ Սանահնոյ սուրբ Աստուածածնայ տաճարին մինչեւ մեր Նորքի սնուռն իւր որդւոց արեւշատութեան խաթերն վրայ. երրորդ Ուրատի որդի տէր Առաքելն վասն այն պատճառի աղբնքի գինն Փրձօլանց այգու կեսի գինն տվաւ, որովհետեւ Ջրաղացն իւր նախնեաց տվեալ վախմ էր վերոյգրեալ աղպնքի եւ Փրձօլանց այգու ղապալէքն Բարսեղ պարոն տէրն տվաւ ինձ Պապիս որ իմ մօղս է, արխն ինչպէս կամենաս այնպէս շինել տաս, արխն իւր մեծ ջրովն տվի քեզ պարոն տէր Բարսեղ եպիսկոպոսիդ թէ որ արխն ջուրն աւերէ ինչպէս կամենաս այնպէս շինել տաս, մինչեւ Նորքի վերի գլուխն արխին ինչ բան հարկաւորի թէ լայնացել թէ բան փոխել, ամենայն պակասութիւն մեր Նորքի լինի, այսուհետեւ

ոչ ոք դաւի չունի, ոչ խմոց ոչ օտարաց եւ ոչ ազգականաց, ով ոք դաւ անէ դաւին ինձ հետ լինի, ով որ ետ ու առաջ տայ, ԳՃԺԸ հայրապետաց նզովեալ եղիցի, անէծքն Կայէնի առցէ, սուրբ Աստուածածնայ խռովանքին գայ. վկայ այս բանիս Ծիօչբէգն, Աֆթանտիլ բէգն, Փիրալին, Սօրխկանց Ղարախան, Էլումանց Մէհրարն, Խփէկենց Բախուտէն, Սօրխկանց Թամաղն, Ղխան, Երխզանց Դաւոն, Ասլանանց Էվանէսն, Դարինանց Սագին, Փըրձօլանց Անտօնն. եւ տէր Պետրոս գրեցի եւ վկայ եմ, գրեցաւ [72] ՌՃԽԲ թվին Յուլիսի Ե. (1693): (Ջալալեան, Ճամբ. Ա., էջ 38—39):

Դարձեալ՝

Կամաւն Աստուծոյ ամենակալին մեք Սմբատի որդիքս Երալիս, Էլիզբարս, Յովսէփս եւ մեր որդիքս կամաւ եւ մեր յօժար սրտիւ ծախեցինք ի վերայ Բարսեղ պարոն տէրին Ջրանցի ճամփի տակի ճիպէքն, իւր վերի կռան հողն, որ մէկ ծէրն գալխայ գրայ Նորքն մեր, մէկ ծէրն դրայ Ջրանցն, Ջումանց ճիպէքի վերի կուռն, մէկ կօպարն Ջրանցի Ջուրն մէկ կօպար ճամփէն. հախն առանք մեր կարեացն արարինք, ով յետ ու յառաջ դաւի անէ ԳՃԺԸ հայրապետաց նզովեալ եղիցի, յօձէն մինչեւ ի նեռն անիծեալ լինի. ի ՌՃԿՁ թվին Սեպտեմբեր ԺԵին. եւ

---

72 Ջալալեան, Ճամբ. Ա., էջ 38—39:

Ասլամաղս վկայ, Ես Ասլան բէգս վկայ, Տէրմապանս վկայ, Դուրախանս վկայ, Զուրարս վկայ, Մանուչարս վկայ, Ես տէր Սահակս վկայ, Եւ գրեցի Աստուծով (Ջալալեան, Ճամբ. Ա., էջ 41) :

Յաջորդն ալ նմանապէս կալուածներու հարցը կը շօշափէ, բայց մեզ համար հետաքրքրական է Բարսեղի գերդաստանին համար եւս (արդէն միւսներու մէջ ալ անոր տոհմէն անձեր կը յիշուին) :

«Կամաւն Աստուծոյ ես Արղութի որդի Վասակս եւ իմ որդիքն Էլիգբարն, Գասպարն, մեր կամաւ եւ յօժար սրտիւ ընծայ խոստացաք յԱստուածածինս, զոր յառաջմէ Թագաւորաց հաստատեալ էր այս վախմ ի յանցեալ Թագաւորացն մերոց. մենք այլ առանք ի Պարսիցն Թագաւորէն, որ անուն նորա Շահարաս, որպէս կու հրամայէ սուրբ Աւետարանն թէ երանի որ ունիցի զաւակ ի Սիօն, եւ ընտանի վերին Երուսաղէմ. ես պարոն Վասակս եւ իմ որդիքն Գասպարն եւ Էլիգբարն մեր սրտովն սիրեցեալ տուաք վախմ սուրբ Աստուածածնին Ոռնակլի մեր ծիլ չինականն, Սաղուձորի վանանց ծիլն, որ մեր առխ էր ամէն, ինչ որ ձեռացներս կայր թէ սարում եւ թէ ձորում, զամէնն տուաք վախմ սուրբ Աստուածածնին վասն յիշատակի իմոյ եւ արեւշատութեան ծնողաց իմոց եւ որդւոց եւ որ անջնջելի մնայ յաւիտեան ... ՌՃԴ թվին» (անդ էջ 42) :

Բարսեղ, որ ինքզինքը կը հռչակէ Թոռէ-թոռն պարոն Արղութին եւ որդի պարոն Վասակին, 1693ին բաւական թուով էջիներ իրենց «ընձանով» եւ ուրիշ բաներ — սկիհ, չուրջառ եւ նոյն իսկ գիւղեր վախմ կուտայ Սանահինի — ստատաձեռնօրէն: Անոր օրով 1694ին «Գրեցաւ Մաշտոցս ի յերկիրն Լոռի, որ կոչի Հոռոմայր ընդ հովանեաւ սուրբ Նշանի... եւ մերոյ արհեպիսկան Սանահնոյ Աստուածածնի Բարսեղ եպիսկոպոս»ի, (Ակինեան, Հաւաք. Ցիշատ. Երեւան, Թ. 479):

Բարսեղ եպիսկոպոսը կը մեռնի 1698ին եւ 1699ին յաջորդ կը յիշուի «ՄԿՐՏԻՉ, մականուամբ Ասկէր օղլի կոչեցեալ, զամանէ չիք յիշատակութիւն յարձանագիրս որպէս եւ գայլոց սուրբ կարգելոցդ. ի ծերունեաց աւանդի կալ սմա յառաջնորդութեան ամս իբր տասն կամ երկոտասան. յետ Բարսղի յաջորդեալ անընդմիջաբար» (Թ. 239, էջ 184): Անոր կը յաջորդէ ՍԱՐԳԻՍ եպիսկոպոսը, որ «տէր Սհակի որդին տէր Ցակոբ» քահանայ կը ձեռնադրէ «ի դուռն Սանահնու սուրբ Աստուածածնու» (Ցակոբեան Վ. Մանր ժամանակագրութիւններ ԺԳ—ԺԷ դդ. Երեւան 1956 էջ 523):

Ասոր մահէն վերջ ԳՐԻԳՈՐ Դ. «Եկաց յառաջնորդութեան ամս իբր վեշտասան, յորոյ աւուրս ամայանայ Սանահին ըստ պատմելոյ ծերունեաց եւ ի նմին ամայութեան

եկաց վանքն առաջնորդ մինչեւ յԱբրահամ» (Թ. 239 էջ 185)։ Բաղձալի էր որ Յովհաննէս Ղրիմեցի այս հակիրճ տողերով չգոհանար եւ աւանդէր թէ ի՞նչ պատճառներով վանքը այս աղաւաղելի դրութեան կը հանէր։ Անտէր մնացած այս հինաւուրց մենաստանին վրայ Սիմէոն կաթողիկոսի օրով (1763—1780) Հաղբատի Զաքարիա առաջնորդը կը ցանկայ իր իրաւասութիւնը տարածել[13], սակայն հայրապետէն միայն երեք տարուայ համար արտօնութիւն կ'ընդունի, թէեւ ա՛յս իսկ Ղազախցիներուն եւ Սանահինցիներուն անհաճոյ էր։ Անոնք իրենց անհաճութիւնը կը յայտնեն Կաթողիկոսին։ Զաքարիա՝ նախապէս Յակոբ Շամախեցի կաթողիկոսի ժամանակ ալ՝ փորձած էր Սանահինի վրայ տարածել իր թեւերը եւ չէր յաջողած (Դիւան Գ., էջ 138, 538, 627—628 եւ 710)։

Սիմէոն Երեւանցիի յաջորդը կաթողիկոսական գահի վրայ՝ Ղուկաս Կարնեցի (1780—1799) նկատելով Սանահինի դժբախտ վիճակը եւ նմանապէս Հաղբատի Աբրահամ Թեքիրտաղցի ապերջանիկ առաջնորդին ծանր կացութիւնը, զի «Յերրորդում անդ առաջնորդութեան (Հաղբատայ) գայ Իսրայէլ կաթուղիկոս Աղուանից հրամանաւ Հերակլեայ արքայի եւ առնու զառաջնորդութիւն ի

---

[13] Յովհ. Օձնեցիի վանքի Սանահինի վերաբերումի հարցը այլուր նկատած եմ։

ձեռաց նորա» (Թ․ 239, էջ 137), զԱԲՐԱՀԱՄ Սանահինի առաջնորդ կը նշանակէ յորդորելով զինքը «Գնացեալ ի վանաց նստիցիս եւ զնա ի շինութեան եւ ի բարեկարգութեան պահեսցես, զմիաբանս ժողովեսցես, զժամերգութիւնս կարգեսցես ի նմա» (Դիւան Դ․ էջ 491—499)։ Իսկ Աբրահամ անտառտելով՝ Թիֆլիս կ՚անցնի հոն իրեն համար «Առ ի հաստատել (քեզ) առաջնորդարան»։ Կաթողիկոսը զինքը կը յանդիմանէ այս իր հակականոնական արարքի համար եւ հաւանութիւն չի տար, բայց Սանահինի համար ժողովարարութեան կոնդակ կը հանէ (անդ, էջ 491—494 եւ 512) եւ Սանահինով կը հետաքրքրուի։ Կը գրէ «Մանաւանդ զՍանահինու կոնդակն եւս տեսեալ եմք յորս ի վաղ աւուրց հետէ բազում հայրապետք եւ թագաւորք փակեն նզովիւք թէ Լօռի եւ այս ինչ եւ այն ինչ թեմք Սանահնու վանիցն լիցի վիճակ» (անդ, էջ 209 եւ 393)։ Նմանապէս անտալով Լօռի բերդի եւ անոր մերձեկայ բնակիչներու՝ կ՚ընդառաջէ Ջաւախէթցիներու, Բիւրականցիներու եւ Ապարանցիներու աղերսանքին անոնց տեղերը «Տէրունի» վիճակ հռչակելով (անդ, էջ 393—398)։

Աբրահամ վերադառնալով կը հաստատուի Սանահին, կը ձեռնարկէ անոր նորոգութեան եւ դրամական աղբիւրներու հետամուտ՝ ճամբորդութեան կ՚ելլէ․ «Եւ անդէն նստի առաջնորդ․ ուրանոր յետ կալոյ նորա

յառաջնորդութեան ամս իբր չորս կամ հինգ, հանդերձ ջանիւք վերանորոգութեան նոյն վանաց, զի եւ այն յամայութեան կայր ի վաղուց, ի չրջիլ նորա նպաստահաւաքութեան գործով ի սահմանս գաւառին Շիրակայ հիւանդացեալ առ ի մահ փոխճանի անդէն եւ թաղի ընդ հովանեաւ Հառիճայի հրաչակաւոր վանաց» (Թ. 239, էջ 137 եւ 185)։

Յովհ. Ղրիմեցի ՌՄԼՁ թուին այս է 1787ին անոր յաջորդ կը դնէ ԱՌԱՔԵԼ եպիսկոպոս Սանահնեցի եւ կը յաւելու «Յաջորդեալ զառաջնորդութիւն զկնի Արրահամու վարէ զայն մինչեւ ցայսօր, զոլով հասեալ ի բարւոք ծերութեան» (Թ. 239, էջ 185) Եւ անով կը փակէ Սանահինի առաջնորդներու անուանացանկը եւ մինչեւ ցայսօր ըսելով կը հասկնայ 1827 երբ կը դրէ իր գիրքը, այս է՝ Պատմութիւն հռչակաւոր վանից Հաղբատայ։ Ջալալեան գինքը 1797ին առաջնորդ գիտէ (անդ էջ 40), եւ 1811ին Թովմաս Առաքեալին մասունքին արծաթեայ պահարանին վրայ եղած յիշատակագրութեան մէջ կը յիշուի (անդ էջ 51)։

Յովսէփ Արղութեան արքեպիսկոպոսը, որ իր այցելութեան[14] ատեն Հաղբատի եւ Սանահինի մէջ կը տեսնէ անհոգութիւն եւ խնամքի պակաս, կը մորմոքի եւ 1795ին ԱՌԱՔԵԼ վարդապետը վերջին վանքին

[14] Էջմիածնի կաթողիկոսները երբեմն երբեմն այցելած են Սանահին (Նոր դար 1899, Թ. 61, ևն)։

առաջնորդ կը կարգէ: Դարձեալ հետամուտ կ՚ըլլայ միջոցներ գտնելու վերականգնելու համար երբեմնի «Այնպէս չքնաղ զարդուք զարդարեալ» վանքը, որ ապիկարներու ձեռքին մէջ եղած էր «Մերկ եւ կողոպուտ յամենից վայելչութեանց» (Դիւան Թ. էջ 243, 155): Առաքել Հաշտարխան կ՚երթայ վանքին նորոգութեան եւ բարեզարդութեան համար նպաստ հաւաքելու (անդ, էջ 155):

15 Պարոն Գէորգ գործակատար Փանրակու եւ Լօռու, Փամփակու մէլիք Ցաքարօ եւ Փամրակու վէքիլ Մէլիթրի Բէգ Րիմ րէկ Մահմատ աղայ, Սէիգ բէգ Արղուլ աղայ եւ բոլոր քէգխուդայից Փամբակու եւ Թէմին եւ ժողովրդոց վանիցն Սանահնու, որպէս ի հին արքայից եւ սրբազան հայրապետաց թուղթք յայտ առնեն զորպիսութենէն Թեմի եւ ժողովրդոց հանդերձ բաժանմամբ տեղւոյ եւ սահմանաց եւ զնոյն թուղթս ազորմութեան մի առ մի մատդրութեամբ ընթերցաք, որպէս նոքին արքայք եւ սրբազան հայրապետք շնորհեալ են, ոչ զմի հրամանս նոցին քակել կարէաք, վասն որոյ մեք եւս բառ հիման նոյն շուղի հաստատեցաք զթէմ եւ զվիճակ նորին այսու եղանակաւ, զի բառ կարգադրութեան նոցին պարտին ամենայն ժողովուրդք վիճակի վանիցն Սանահնի անխափան հատուցանել բառ սահմանեալ ժամու վանահօր Առաքէլ վարդապետի կամ գործակատար Աբրահամ քահանայի զկարգադրեալն ի նոցանէ ամենայն ինչ եւ նմանապէս ամենայն հայասեռ ազանց բնակելոց ի Փանրակ կամ ի Լօռի եւ կամ ի գիւղօրայս Թեմի Փամրակու այսու օրինակաւ յայտնել եւ նոցա, զի նոցա իւրաքանչիւր ոք բառ կարգին տային Սանահնու վանացն զսահմանեալն սովորութիւն որպէս ի վերոյ գրեալ եմք եւ եթէ Սիմէոն վարդապետ կամ այլք ունիցին զթուղթս ինչ տուեալ ի մէնջ ամենայն թուղթք նոցա զօրին խափանեալք եւ ոչ ոք կարասցէ ձէռնամուխ լինել, նաեւ զխտաջիք ամենեքեանքդ հակառակ եւ ընդդէմ գտանողք սոյն հրովարտակի մերոյ ի ներքոյ մեծի քննութեան եւ պատժո ենթարկեսցին, ի 10 Մայիսի

Ալեզարդ Առաքելի յաջորդ կ՚ըլլայ ՅԱՐՈՒԹԻՒՆ եպիսկոպոս Բարսեղեանց, որ 1831ին իբրեւ առաջնորդ Սանահինի կը մասնակցի կաթողիկոսական ընտրութեան (Դիւան Ա., էջ 266, Ջալալեան անդ, էջ 40, հմմտ. նաեւ էջ 52) իսկ 1835ին՝ Հաղբատի

---

եւ ի քրօնիկօյին Վրաց 484 եւ յամի Տեառն 1795 (Ջալալեան, Ճամբ. Ա., էջ 45—46 — Պատճէն արտագրեալ յիսկական օրինակէ հրովարտակի արքային Վրաց Գէորգէի, որոյ իսկն գտանի ի սուրբ վանս Սանահնի):

Սերովբէ գրիչը, որ աղա Մահմուտի 1795ի ասպատակութիւններու եւ Տփխիս քաղաքի աւերումի պատմութիւնը գրած է, Սանահինի մասին սա կարեւոր տեղեկութիւններն ունի. «Գրեցաք ի վերայ թէ զորրոց մատունսն այրէին, բայց զգերահռչակ եւ զամենահրաշ Սանահնու սուրբ Աստուածածնի վանիցն (որ կառուցեալն է ի սեռէն Բագրատունեաց ի տիեզերակալ յՈղորմած Աշոտ Թագաւորէն եւ Անոյշ Թագուհւոյն) եւ վանիցս սրբոյ տաճարին են սեղանք քառասուն ըստ խորհրդոյն քառասնիցն եւ եւս հարկաւորեալն զի ի Տէր ննջեցեալ հոգւոց մատուցանել զպատարագս ի միում աւուր զ40 եւս յիւրաքանչիւր բեմի (որոյ գոլով վերադիտօղն եւ խնամատարն նաեւ կամեցօղն պայծառափայլութեան եւ շինութեան առաջնորդն բոլոր հիւսիսարնակ ազգին Հայոց առաքելաշաւիղ եւ կայսերապատակ սրբազան Յովսէփ արքեպիսկոպոսն) զորրոց մատունսն եւ զի Թագաւորէն Աշոտոյ եւ յայլ ամենայն արքայից եւ հայրապետաց շնորհեալ կոպան գերծոյց նորուն բարձր սրբազնութեանն եղբօրորդի իշխանազուն եւ պայծառ իշխան քնեազ Սօլոմոնն Երկայնարագուկ Արղութեան (Դիւան, Ժ., էջ 372):

Եւ նարդենիս առաջնորդն նոյն սրբոյ վանից է նորուն բարձր սրբազնութենէ կարգեալ որում եւ յատուկ եւ հաւատարիմ պաշտօնեայ ընիկ Սանահնեցի պարկեշտասուն եւ խոհեմամիտ վարդապետն յազգէն Մուրատեան, որ փրկեաց զգերեալ զաքանչելագործ զԱջն երիցս երանեալ սրբազնասուրբ հայրապետի Յոհաննու Օձնեցւոյ» (Դիւան, Ժ., էջ 372):

*Զաքարիա առաջնորդին յուղարկաւորութեան (Արարատ 1887, էջ 76)։*

*Սանահին կ՚ենթարկուի Թիֆլիսի Առաջնորդարանին եւ կը կառավարուի փոխվանահայրերով եւ իր արժէքը կը կորսնցնէ։ Վերջին շրջաններուն անոր առաջնորդներէն եղած են Վարդան եպիսկոպոս եւ Կարապետ վարդապետ։ Անկէ է Մարտիրոս Մժէժեան։ 1901ին հոն կային եպիսկոպոս մը եւ վարդապետ մը (Բիւզանդիոն 1909 Թ. 3886, Մշակ, 1878 Թ. 198, Ազգր. Հանդ. 1901 Է—Ը. էջ 394)։*

## ՍԱՆԱՀԻՆԻ ԴՊՐՈՑԸ

*Սանահինի դպրոցը կարելի է ըսել թէ սկսած է վանքին հիմնարկութեան հետ, զի իր հիմնադիրներէն եւ առաջին առաջնորդներէն է ՅՈՎՀԱՆՆԷՍ ԳԻՏՆԱԿԱՆ, որ այդ յորջորջանքը հարկաւ թէ ձրի չէ ժառանգած (Աստղիկ, Պատմ. էջ 181)։ Իսկ երկրորդ հիմնադիրն ու զարգացողն[16] է ԴԻՈՍԿՈՐՈՍ, որ ինչպէս գիտենք առաջնորդ եւս եղած է։ Նաեւ կարճ ժամանակով բազմած է կաթողիկոսական գահի վրայ։*

*Յովհաննէս Սմբատ թագաւորը «Գժտութեամբ լեալ ընդ հայրապետին Պետրոսի դնէ զնա ի բանտի եւ զԴիոսկորոս ոմն առաջնորդ սուրբ ուխտին, որ կոչի Սանահին, ձեռնադրէ*

---

[16] *Արարատ*, 1901, էջ 274 եւ 339։

զնա կաթողիկոս փոխանակ Պետրոսի[17]» (Կիր․ Պատ․ էջ 51)։ Դիոսկորոս «Այր սուրբ եւ առաքինի» է եւ այդ յատկութիւններու համար հարկաւ թէ առաջնորդ ընտրուած եւ զարձեալ թագաւորէն ուրիշներէ գերադասուած եւ բարձրացուած։ Բայց Աղուաններու Յովսէփ կաթողիկոսը կը յաջողի Պետրոս Գետադարձ բանտէն ազատել հաշտեցնելով զինքը Յովհաննէս Սմբատի հետ «Եւ տանի դնէ զնա յաթոռն իւր հանելով զԴիոսկորոս առաջնորդ սուրբ ուխտին Սանահինին, զոր եղեալ էին կաթուղիկոս փոխանակ Պետրոսի եւ դարձաւ նա ի վանս իւր» (Վարդան, Պատ․ էջ 98)։ Անիկա հայրապետութեան պատուէն ու աստիճանէն կը զրկուէր ա՛յն օրը եւ ա՛յն ժամուն, երբ փառաչուք զգեստաւորումով ու հանդէսով Յայտնութեան տօնը կը կատարէր եւ ջուր կ'օրհնէր։ Անեցիները իրմէ չատ դժգոհ էին եւ նոյն իսկ կը յանդգնէին հայրապետական քօղը պատռելու եւ քաղաքէն անարգանքով վտարելու․ եւ բնականաբար «Գնաց Դիոսկորոս տրտմութեամբ ի տուն իւր եւ անդ եղեւ վախճան իւր եւ եղաւ հուպ յեկեղեցին» (Կիր․ անդ, էջ 51 եւ Ա․ Դաւրիժեցի, Պատ․ էջ 622)։

Դիոսկորոս հռչակուած է իբրեւ «Հռետոր» (Մ․ Ուռհ․ Պատ․ էջ 88)։ Միրած է թուղթ ու գրիչ եւ գիտցած է քաջալերել զա–

[17] Հմմտ․ Յովսէփեան, Յիշատ․ հայ․ Ձեռ․ Ա․, էջ 219, նոյնը՝ Հաւուցթառի Ամենափրկիչը, էջ 46։

նոնք սիրողները «Ընկալեալ զհրաման տեառն իմոյ հոգելիր վարդապետի Սանահնի սուրբ առաջնորդի, զոր յոյժ ըղձիւ եւ սիրական բաղձանօք հայցեալ պահանջեցեր ի մէնջ վասն բացատրութեան տէրունական բանից կենսաբեր աւետարանին համառօտաբար չաբաղրել զարբոց վարդապետացն վերաձառութիւն, որք տեսութեամբ հոգւոյն բացափայլեցին ի մեզ զլոյս գիտութեան եւ զծածկեալ խորհուրդ հոգւոյն» (Արարատ, 1901 էջ 275 եւ Յովսէփեան Յիշատ. Ա. էջ 221—222, ուր այն գրութեան խորագրին մէջ կը կարդանք Անանիայի Հայոց վարդապետի ի խնդրոյ հաւր Դիոսկորոսի...).

Դիոսկորոսի օրով Սանահինի ականաւոր միաբաններէն է Վարդան Սանահնեցի, որուն եւ ուրիշ քանի մը անձերու համար Մատթէոս Ուռհայեցի կը հաւաստէ թէ էին «Այս ամենայն վարդապետք եւ իմաստասէրք եւ հմուտք հին եւ նոր կտակարանացն Աստուծոյ» (Պատմ. էջ 123 հմմտ. Արարատ 1901, էջ 339)։ Պետրոս Գետադարձ զինքը գնահատելով հետը Պոլիս կը տանի (Մատթէոս Ուռհայեցի, Պատմութիւն, էջ 123)։

Իսկ Դիոսկորոսի աշակերտներէն է՝ անուանին Յակոբ Քարափնեցի կամ Սանահնեցի, որուն մասին Մատթէոս Ուռհայեցի կը գրէ «Իսկ Թագաւորն Տուծիկ արար քննութիւն հաւատոյ իւր առաջի եւ Յակոբոս վարդապետն, որ ասի Սանահնեցի, արար

դիմադրութիւն բաղում յամենայն հարցմունս ընդդէմ Հոռոմոց, բայց սակաւ մի յաղագս երկու բնութեան Քրիստոսի ի կողմն Հոռոմոց դարձաւ: Եւ յամենայն պատճառս հաւատոց հաճեալ Թագաւորն հրամայեաց այնր վերայ գիր միաբանութեան գրել ընդ Հայք եւ ընդ Հոռոմոց յամի ՇԼԴ» (1085—1086 Պատմ. էջ 194):

Յակոբ Քարափնեցիի գրչէն կ'աւանդուի ըլլալ «Յանսկզբնական Հօր ծագոյ չարականը» (Արարատ, 1901, էջ 274): «Բազմավէպ»ի մէջ (1864 էջ 42 եւ 107) կասկած կը յայտնուի թէ՝ անիկա ըլլայ հեղինակը Վարդանանց տաղի մը եւ Յարութեան մեղեդիի մը:

Դիոսկորոսի ուրիշ մէկ աշակերտն է Անանիա Սանահնեցի, որուն գովքը կը հիւսէ Կիրակոս Գանձակեցի (ուրիշներու հետ) «Իսկ յարեւելս արք անուանիք եւ գիտնականք լուսաւորիչք եկեղեցւոյ յաւուրս Դիոսկորոսի, այր մտաւոր եւ հանճարեղ, գիտող տօմարական արհեստից եւ աստուածային գրոց մեկնող Անանիա, սորա ասեն ի մի հաւաքեալ ի մեկնութիւնն Առաքելոյ գրանս Եփրեմի եւ Յովհաննու Ոսկեբերանի եւ Կիւրղի եւ այլ սրբոցն, արարեալ համառօտ վասն դիւրահասութեան ընթերցողաց, արար խորհրդական եւ մտաւոր տեսութիւն եւ համեմատութիւն աւետարանացն օրինակս, գրեաց եւ լուսաւոր իմացուածս վասն խորհրդական սրբասացութեանս… եւ զներ—

բողեան Ծողակաթին» (Պատմ. էջ 64, հմմտ. Վարդան, Պատմ. էջ 121):

Անանիայի կ՚ընծայուին Մեկնութիւն ԺԴ. թղթոց Պաւղոսի, Մեկնութիւն Մատթէի, Բան հակաճառութեան ընդդէմ երկբնակաց, Ներբող Ծողակաթի եւ ուրիշներ (հմմտ. Արարատ 1901 էջ 274—277, Աճառեան, Անձնանուններու բառարան Ա. էջ 153, Զարբհանէլեան, Պատմ. հյկ. Դպր. Ա. էջ 588, հմմտ. նաեւ Տաշեան, Մայր ցուց. էջ 655): Համամիտ ենք Հ. Քիպարեանի որ կը գրէ «Գլխաւոր գործն է Բանք Հակաճառութեան կոչուած գրութիւնը, ... հակաքաղքեդոնական ըմբռնումով եւ զգացումով ... գրութիւնը, լեզուն եւ ոճը Հայկազեանի համաձայն միջակ եւ երբեմն ստորին ալ, իսկ ուրիշներ գեղեցիկ եւ զարդարուն կը գտնեն: Իրեն ընծայուած են նաեւ ուրիշ ճառեր, Յովնան մարգարէին, Յովհ. Մկրտիչի, Պետրոս Առաքեալին վրայ, Խրատք քահանայից, ինչպէս նաեւ Ծողակաթի վրայ գեղեցիկ ճառը, զոր շատերը Ան. Նարեկացիի կը վերագրեն: Կիրակոս եւ Վարդան պատմիչները իրեն կ՚ընծայեն մեկնութիւն մըն ալ Պօղոսի 14 թուղթերուն. հասած է մեզի նման մեկնութիւն մը, որ սակայն չի կրեր Անանիայի անունը, այս պատճառաւ շատեր կը տարակուսին Սանահնեցիի պատկանելուն: Եթէ իրեն ալ ըլլայ, քաղուածոյ բան մըն է օգտուելով Ոսկերերանէ, Եփրեմէ, Կիւրեղ

Աղեքսանդրացին է, իր վարժապետին յանձարարութեամբ կատարած» (Պատմութիւն Հայ Գրականութեան, Ս. Վենետիկ 1944, էջ 263—264)։

Որքան ալ չատ անճշդատ կ'արտայայտուի Ներսէս Լամբրոնացի Գրիգոր Տուտէորդի աշակերտին մասին, սակայն պէտք է ընդունիլ որ ան «Այր երեւելի» էր եւ հմուտ անձ։ Հարկաւ թէ Հաղբատի եւ Սանահինի մէջ գիտութեան ծաւալումին եւ զարգացումին հետամուտ եղաւ։ Գրիգոր Տղայ կաթողիկոսը լրջօրէն կը թղթակցի երկու վանքերու հետ ալ եւ մանաւանդ Հաղբատացիները չարհամարհեր (Կիր. Պատմ. էջ 51, Նամականի Գրիգոր Տղայի եւ Թուղթ Ներսէս Լամբրոնացւոյ եւն, Վենետիկ 1865, էջ 122—135 եւն եւն)։

Սանահինի գահին վրայ Գրիգոր Տուտէորդիի յաջորդներէն՝ Գրիգոր Արքայ որդին Հայ Դպրութեան պատմութիւն մէջ մտնելու արժանացած է իր Գիրք Պատճառաց անուն երկով։ Անոր մասին Հ. Ակինեան կը գրէ «Բովանդակ հայ մատենագրութեան մէջ եզական երեւոյթ մըն է։ Ունեցած ենք պատմագրութիւններու, Ս. Գրոց եւ Ս. Հարց գրուածոց բազմաթիւ մեկնութիւններու, հոգեւոր ճառերու ճոխ մատենագրութիւն։ Բայց ի զուր պիտի որոնենք Գրիգոր Արքայ որդւոյ ձեռնարկութեան համապատասխան երկրորդ երկասիրութիւն մը։ Մեր նախ–

նիքը սիրած են Գրոց գիտութեան անեզր եւ անհաս ծովու — Գիրք Պատճառաց, Յառաջաբան — վրայ նաւել, կարդալ գրքեր, պատմագրել ժամանակակից կամ անցեալ դէպքեր··· բայց Գրիգորէ զատ ոչ ոք եւ այս կարելի է ըսել, բացարձակապէս խորհած է ուսումնասիրել գրքի պատմութիւնը, ի մի ամփոփել հեղինակի մը անձին, գրութեանց, թուոյն, շարժառիթին, պատճառին մասին ցրիւ բռուածները՝ պատմութիւնը պատրաստել, քննական համեմատական տեսութիւններ անոնց վաւերականութեան կամ անվաւերութեան վրայ կատարել, վերջապէս գործ մը որ այսօր Մատենագրութեան պատմութիւն գրողի մը պաշտօնը կը համարուի» (Հմմտ. Հանդ. Ամս. 1907, էջ 228 եւ 362):

Դարեր վերջ — ԺԵ դարու մէջ — երեւան կու գայ Յովհաննէս գրիչ եւ ծաղկող: «Նրա գեղարուեստական ստեղծագործութեան էջերը ձեզ տանում են պատմական Երուսաղէմի եւ Սանահինի վանքերը որ տեղ նա (Յովհաննէս) ձեռագրերի գեղարուեստական ձեւաւորման եւ նկարազարդման գործում ուշագրաւ դեր է կատարել եւ իր վրձինի արտադրութիւններով զարկ է տուել հայ գրչական եւ մանրանկարչական արուեստներին···:

Վաստակաւոր արուեստագէտից մինչեւ այժմ մեզ հասել են հինգ ձեռագրեր··· Այս

ձեռագրերի էջերի զարդանկարները ցայտուն կերպով դրսեւորում են նկարչի ստեղծագործութեան առանձնայատկութիւնները, միաժամանակ ընդգծում Սանահնի մանրանկարչութեան դպրոցի էութիւնը» (Բազմավէպ 1957, էջ 78): Յովհաննէս ապրած է Սանահինի մէջ, բայց ճամբորդած է մինչեւ Երուսաղէմ, ուր գրած է Մանրուսում մը (Հանրագիտակ 1899, Թ. 59, 64 եւ 67, հմմտ. Ազաւնունի, Հայ Երուսաղէմ, էջ 357):

Գրած է ուրիշ Մանրուսմունք մըն ալ որ կը գտնուի Վիեննա Մխիթարեանց Մատենադարանին մէջ: Անոր Յիշատակագրութեան մէջ կը կարդանք «Կատարեցաւ ցանկալի երգարանըս երաժշտական ձայնաւորաց ի Թուականութեան հայկազեան տումարի յութից հարիւրոց եւ խեակ տասանց, յամի յորում եղեւ ելանել ասպատակաւ ի մերում ժամանակըս չորրորդ անգամ ազգին Նետողաց Խորազմն անուանեալ ազանց Շահռուխ փաթշահին Պարսից սատակչին Թուրքման ազգին, ի յայս եւ ի սոյն ժամանակս գրեցաւ տետրակս ի սուրբ եւ ի գերահռչակ ուխտս որ կոչի Սանահին ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնին եւ հրաշափառ կաթուղիկէիս առ ոտս Ղազար վարդապետի եւ հարազատ եղբօր իւրոյ Յովսէփ փիլիսոփայի ձեռամբ ամենամեղ գրչի Յոհաննիսի ի լաւ եւ յընտիր աւրինակէ Առաքելցւոյ ի վայելս անձին սրբասէր աշա-

կերտի եւ ըստ հողւոյ եղբօր մերոյ Մելքիսեդ կուսակրօն քահանայի» (Տաշեան, Մայր Ցուցակ էջ 873, հմմտ. Խաչիկեան, ԺԵ. դարի հայ. Ձեռ. Յիշատ. Ա. էջ 257) ։ Ա. Երամեան անոր նուիրած է փոքրիկ բայց ամփոփ յօդուած մը եւ երեւան հանած է անոր արժէքը եւ նաեւ տուած աղբիւրները (հմմտ. Բազմավէպ 1957 էջ 79—82) ։

Սանահնեցի է նաեւ Առիստակէս գրիչը որ քիչ արդիւնք չունի (հմմտ. վերը) ։ Նմանապէս Սանահինէն է Սարգիս Վարդապետ (ապա եպիսկոպոս) Ջալալեան, որ երկու հատորի մէջ տուած է Ճանապարհորդութիւն ի Մեծն Հայաստան (տպ. Տփխիս 1841 եւ 1858), որ թէեւ ունի խոցելի կէտեր, սակայն արժէքաւոր գրութիւն է[18] ։

Ինչպէս կանխաւ տեսանք Սանահինի շէնքերուն մէջ կար շէնք մը, որ կը կոչուէր Մագիստրոսի ճեմարան ։ Այս՝ Սանահինի անունը մեծ Պահլաւունիի անունովը հռչակելու եւ պանծացնելու համար չէ, այլ ապացոյց որ անիկա սերտ կապեր հաստատած է սոյն վանքի միաբաններու հետ եւ անոնց կեանքին շատ մօտէն ծանօթացած ։ Թէպէտ պարագաներու հետեւանքով ստիպուած է Սանահինէ հեռու մնալ, բայց անոր եւ միաբաններու բարեկամութիւնն ու համակրանքը

[18] Վերջին շրջաններուն Սանահինի մէջ կը բացուի դպրոց մը, որ գնահատելի արդիւնք կու տայ (Մշակ 1878, Թ. 198 եւ Արձագանք 1893, էջ 399) ։

տեղւոյ եւ ժամանակի անջրպետ չեն ճանչցած : Անոնք գրով ու գրիչով իրարու հետ յարաբերութեան մէջ կ'ըլլան : Մագիստրոս ուզած է «Զիր եւ ընծայ ինչ ուխտից առաքել, որպէս պարտ է ճշմարիտ ձեր եղբօր» (Կոստանեան Գր. Մագիստրոսի Թղթերը, էջ 142) :

Մեր ձեռքը չեն հասած Սանահինի միաբաններու Գր. Մագիստրոսի ուղղած թղթերը, սակայն բարեբաստօրէն կրնանք կարդալ անոր անոնց գրած թուղթը եւ անկէ տեղեակ ըլլալ անոնց անոր գրած մէկ թուղթին բովանդակութեան կամ էական կէտերուն : Մագիստրոսի գրած թուղթը ընդարձակ է եւ կարելի է ըսել թէ այն ներբողեան է Սանահինի միաբաններու : Թէեւ այն թուղթը արդէն հրատարակուած է, սակայն մեր գրութեան մէջ մեծ պակաս մը զգալի պիտի ըլլար, եթէ անոր գոնէ կարեւոր մէկ մասը իր էական կէտերովը առաջ չբերէինք : Ուստի կարդանք զայն ·

«Պատասխանի սրբազան եղբարցն սուրբ ուխտին Սանահնի, որ գրեալ էին թուղթ օրհնութեան ի Միջագետս եւ մեղադրականս սակս ոչ գրելոյ թուղթ առ նոսա : Զսրբազանից եւ զի մարմնի անմարմնոցն եւ աննմանից հանդիսակցելոցն միեղինաբար կցորդութեամբ եւ յարատեւական մշտաշարժ ի երակատարան խաչակցութեամբ վկայից եւ մայրաքաղական բարեկարգութեամբ ի

միասին բնակելոց իմաստնոց բոլոր արհեստից եւ մակացութեանց պառելոց եւ յաստուածպետական բանն միացելոց անընդմիջաբար եւ անխեկեալ եւ անզօսացեալ անդամոց եւ առ նոյն ինքն Յիսուս գլուխն չարամանելոց եւ յարամանութեամբ յօղելոց, եւ եթէ պարտ է ասել հարց մերոց եւ եղբարց, քանզի ի միջէ յորովայնէ աստուածայնոյ գիտէ զմեզ բանս վերատին ծնեալ, ընկալայ գգիրս:

Եւ իբրու պարտ էր արտալածելոյ եւ տարագիր եղելոյ եղբօր տեսանել գգիր կամ զոմանս ի նոցանէ, այսպէս ի վերայ իմոյ եղեալ զսա հայրանի, արտաւսր եւ կականումն ոչ սակաւ հոսեցուցանէի, արտասուբեալ իբրու ի փտակաց աղբից ի ստորակացեալ երախանաց որ յերկիր ծովացեալ ծորմանն ծաւալէր չիթս, յիշելով զհայրական ծերոցդ ծայրագունից խնամս առ մեզ եւ խրատ եւ ողորմութեամբ բարեկարգութիւնս եւ զերխտաստրղացն, որք ի վարժարանսն, հռետորական եւ երաժշտական ընոցայն զմտաւ ածեալ զհանդէս եւ զմըրցումն եւ զգեղեցիկ մոլութիւնս եւ զմանկանցն սաղմոսերգութիւնս քաղցրաձայնութեամբ վերառեցեալ, որ զրեթէ պետութեանցն եւ բոլորն երկնային դասու եւ զօրութեանց զերակատար զտեալք եւ ոմանց զանազան եւ պէսպէս առաքինութեամբ եւ ճըգնութեամբ սքանչելի եւ զարմանալի երե-

ւեալ, որ եւ ոչ ի Սկիւթ կամ ի Թերայիդ այսպիսի երբեմն երեւեալ:

Քանզի ոմանք ի ձէնջ ի մորթոյ փայտից զգեստաւորեալ, եւ կերակուրս մարդկայինս ոչ հպելոյ, այլ խոտովք վայրենի շատացեալք եւ ոմանց մաշկեօք միայն եւ առանց պարեգօտի եւ զգեստու զտապ ամարայնոյ եւ զսառնամանեացն օդոյ դժնդակութիւն ձմերայնոյ ի հիւսիսային յինքն կրեալ եւ զետնախշտի տարտամեալ եւ սովու եւ ծարաւու համբերեալ եւ ոմանք ծածկարար ի ներքոյ պատատուն գօտին առասանս ի խոտալոյն ձարաձեւ այծից կշկըռոտունս կարկատեալս ի ներքուստ առորակայեալ եւ նոյնօրէն յառասանիցն պարպատեալ զմէջս եւ զկողս եւ ի պարանոց հարստեալ կաշկանդեալ անշորթելի մանուածով, բազմաժամանակեայ չարչարանաց այսպիսի եւ վտանգի համբերելով եւ անսուաղութեան եւ ծարաւու եւ զայն զուարթագին եւ աչալուրջ լրջութեամբ եւ նոցա ոչ այլ ինչ, եթէ ոչ երգել զԴաւթեան նուագ եւ պատարագել զանարիւն զենումն եւ առ եղելոյ եւ այսպիսի վախճանի հանդիպելոյ, որ յառասանիցն պատելոց իւրաքանչիւր ոք խզտեալ զօրէն սղոցի մինչեւ հեղուլ արտաքս փորոտեացն եւ գեղեցիկ պարանոցին, որ զաստուածայինն էր ընկալեալ մանեակ, ստորաքարշեալ հատանէր զմարմինն այսպիսի քաղցր լծոյ հաւանեալ, զի մտանել կարասցէ ընդ նեղ դուռն

եւ զայսոսիկ ոչ ոք յառաջ ծանուցեալ մինչեւ ի վախճանին երեւնալ: Իսկ ոմն անտանելի կիրս յանձին կալեալ եւ հրաշից եւ զարմանալոյ եւ մատենագրութեան արժանաւոր, քանզի ունեալ ի մերոյն Պարթեւէ սրբոյն Սահակայ, եթէ տուեալ էր նորա աշակերտս երկաթապատս եւ ի բռկանիս եւ խարազնազգեստս, պարտ վարկանէր լինել այսպիսի, զանտանելի կիրս կրօնից յանձին կալեալ իբրու զաստասնս կամ զպարանս տուեալս քաջոլորտս ի ձարից ձիոց եւ յարջառոց եւ որ այլք այսպիսի, քուրձ կազմեալ, զոր դժուարին է տեսողացն զնա կամ զատողացն տեսանել, որ եթէ պատժապարտի ումեմն միոյ աւուր հրամայէր զգենուլ թուի թէ լաւագոյն իմն զմահ համարէր եւ ի վերայ այսր ամենայնի ոտնակապանս երկաթիս եւ շղթայս եւ ձեռնակապանս եւ կանդրխւս ի միջոց ունելով եւ մանեակս ի պարանոցի եւ այլ կազմեալ աղխւսամիան ի ձեւ խաչին... եւ ոմանց ի տերեւոց ցաքւոյ եւ ի կորզոց հինից աղացեալ թրէին. յարեգակնային տապոյն արարեալ բլիթս եւ այն իսկ նոցա կերակուր եւ ոչ հաց, այլ ամենեւին ջուր, բայց միայն եթէ թթուիկ յեւթներրորդում աւուրն եւ մերկք եւ բոկանիք եւ ամենագիշեր սաղմոսերգութեամբ, հեգք եւ հանդարաք եւ լռեալք. սոցա ոչ այլ ինչ, եթէ ոչ գիշերի ձեռնատարած եւ յոտնաւոր սաղմոսերգութիւնս եւ ի

*տուրնջեանս...* (*եւ այսպէս դեռ յառաջ. Գրիգոր Մագիստրոսի Թղթերը, Ալեքսանդրապոլ*, 1910, *էջ* 136—138)։

ՍԱՆԱՀԻՆԻ ԿԱԼՈՒԱԾՆԵՐՆ ՈՒ ԳՈՅՔԵՐԸ

*Սանահին ու Հաղբատ անուանի եղած են իրենց հարստութեամբ, իրաւասութեան տարածութեամբ, արքայազուններու դամբարաններով եւ արքայական հիմնարկութեամբ, ինչպէս նաեւ ճարտարապետութեամբ* (Brosset, Mélanges Asiat. du Bul. de l'Acad. S. P., t. IV, *էջ* 606)։

*Սանահին ունեցած է շատ բարեբեր կալուածներ, վարելահողեր, անտառներ, արօտատեղիներ եւ բազմաթիւ գիւղեր ու ագարակներ։ Անոնցմէ շատերը կը յիշուին արձանագրութիւններու եւ հրովարտակներու մէջ, ինչպէս նկատուեցաւ։ Բայց անոր մուտքերը գրեթէ միշտ նուազ եղած են եւ զանոնք պահպանելու եւ պահելու համար ստիպուած է պայքարիլ, խնդիրներ ունենալ — մանաւանդ Հաղբատի հետ — եւ այն դժբախտաբար շատ կանուխէն եւ շարունակուած դարերու ընթացքին։* (*Կիր. Պատմ. էջ* 56)։ *Սակայն պէտք է ըսել թէ ինքն ալ ուրիշին ինչքին ձեռք երկնցուցած է։*

*Յառաջ բերինք արձանագրութիւններ, հրովարտակներ եւ նուիրագրեր*[19] — *որոնցմէ*

---

19 *Ձեռագիր Աւետարանի մը մէջ եղած են «Վանքին ընծայուած զանազան կալուածների մասին*

մաս մը եթէ նոյն իսկ չէ կեղծուած, բայց խաթարուած եւ յարմարցուած է — որոնք կը պատկերացնեն անոր նիւթական վիճակն ու կացութիւնը, որ կրնայ նախանձելի համարուիլ: Եւ այդ մենաստանը կրնար մեծ ծառայութիւն մատուցանել հայ ժողովուրդին մոքին ու սրտին եւ անոր կարիքներն ամոքել, բարիք տարածել եւ աւելի ծաղկուն վիճակ ունենալ, եթէ աննպաստ պարագաներ չապականէին ու չքանդէին շինութիւններէ մաս մը[20], չմնասէին այդիներուն եւ հողերուն եւ երեւան գային աւելի արթուն եւ կարող ղեկավարներ: Այսպէս ըլլալով ալ Սանահին եղաւ հայ այն վանքերէն, որ կրցաւ դարերու դէմ մաքառիլ, արդիւնաւորուիլ եւ ազգին օգտակար ըլլալ զանազան մարզերու վրայ (հմմտ. Նոր Դար 1891, Թ. 50, Բիւզանդիոն 1901, Թ. 3386, Ջալալեան, Ճամբ. Ա. էջ 1—52, Ազգր. Հանդէս, 1901, Է—Ը, էջ 394, ուր կըսուի թէ Սանահին ու-

---

տեղեկութիւններ եւ կալուածների վաճառման վկայաթուղթեր» (Ազգր. Հանդէս 1901, Է—Ը, էջ 319 եւ Ջալալեան, Ճամբ. Ա., էջ 38—42):

[20] Խրգըլըն որ թարգմանի «Կարմիր սա կառ գլօռէ քաղաք եւ գուխան Սանահին եւ դՀաղբատ» (Կիր. Գաձ. էջ 60, Սամուէլ Անեցի, Ժամանակագրութիւն, էջ 121, Արարատ 1886, էջ 451—453, Մելիքսէթ-Բէկ, Վրաց աղբիւրները Հայաստանի եւ Հայերի մասին, Երեւան 1955, Գ., էջ 117, 124, 125 եւն): — Վերջին շրջաններուն Սանահինի պաշտպաններն ու օժանդակողներն եղան Արղութեանները (հմմտ. Յովհաննէսեան Ա. Դրուագներ... էջ 451 եւ Մելիքսէթ-Բէկ Լ., Վրաց աղբիւրները... էջ 243):

նէր 1901ին վարելահող եւ անտառ 549 դե-սիատին, արօտատեղի 127 դեսիատին, մէկ ջաղաց, այգի մը — այսքան քիչ մնացած էր հին հարստութենէն, — Յովհաննիսեան Ա. Դրուագներ հայ ազատագրական մտքի պատմութեան, Երեւան 1957, էջ 458—460, Conybeare, Cat. Brit. Mus., էջ 302):

Սանահին իր մատենքներով հռչակուած է: Եւ բազմաթիւ ուխտաւորներ հոն եկած են իրենց աղօթքը մատուցանելու եւ իրենց նուէրները ընելու: «Գտանին ի Սանահին նշխարք ոսկերաց սրբոց յոսկեայ եւ յարծա-թեայ ամանս զետեղեալք, ի վերայ որոց գրեալ են յիշատակարանք արժանաւորք դի-տութեան» (Ջալալեան, անդ, էջ 48): Այս մատենքներու նշանաւորներն են «Մասն ի հիւսից գլխոյ Աստուածամօրն, Աջ Ս. Հ. Մ. Գրիգորի Լուսաւորչի, Աջ Յովհաննու Օձ-նեցւոյ, Մասն Ս. Նշանի, Ականջ Ս. Թով-մայի եւ մասն նորին, մասն Ս. Ստեփաննոս Նախավկայի եւ պատկեր Տիրամօր» (անդ էջ 48—52): Ազգր. Հանդ. 1898 Գ, էջ 310—312, 1901 Է—Ը էջ 393 394):

Սանահին ժամանակին ունեցած է շատ մը ձեռագիրներ, որոնցմէ հազիւ քանի մը հատը կրնայ տեսնել Յարութիւնեան, որ սրտի ցաւով կը գրէ «Ահա այս է Սանահնի ձեռագիրների բոլոր հարստութիւնը... Այն վանքի, որի քարաշէն եւ քանդակազործ դա-րաններում հարիւրաւոր եւ գուցէ նաեւ հա-

դարաւոր ձեռագիրներ էին չարուած, որի շրջակայ անմատչելի ժայռերից անգամ քարացած ձեռագիրների կապոցներ հանուեցան... ինչ որ անվնաս էր թողել վայրենի ազգերի բռնակալութիւնն ու յափշտակութիւնը, այն էլ ոչնչացրեց մեր խորին, անյատակ ագիտութիւնը (Ազգր. Հանդ. 1898 Գ. էջ 315)։

Այս Ձեռագիրներէն մաս մը փոխադրուած են Աչառանց այրին մէջ (Հաղբատի ձեռագիրներու հետ) եւ ապա ցրուած (Ջալալեան, անդ, էջ 11)։ Աննշան մաս մը պահուած է Էջմիածին (հմմտ. Արարատ 1905, էջ 391[21])։

Սանահինի «երկնահանդէս եւ գերահրաշակ» վանքը, որ դարերով Հայութեան ծառայեց եւ անոր օգտակար եղաւ, որքան պարագաները ներեցին, ներկայիս հայ Հանրապետութեան գուրգուրանքին առարկայ է իբրեւ յուշարձան եւ ան ինչպէս «Բոլոր յուշարձանները էլ լինեն, դրանք անվթար մնացած, կիսաւեր վիճակում, կամ իբրեւ աւերակների կոյտեր, հողաթմբեր կամ բեկորներ, բոլորն էլ մեծ արժէք եւ կարեւո–

---

[21] Գր. Նիւսացիի Երգերգոցի մեկնութիւնը Սանահինէն Աստրախան կը տարուի (Էփրիկեան, Բնաշխ. Բառն. Ա, էջ 263)։ — Մ. Խորենացիի Ս. Աստուածածնի փոխման եւ պատկերին պատմութիւնը կը գտնուէր «ի մեծ սուրբ ուխտն Սանահին»), Սարգիսեան, Մայր Ցուց., Բ., էջ 457, հմմտ. Զարբհանէլեան, Պատմ. հայկական Դպրութեան, Վենետիկ 1932, էջ 384—386, ծն. 21։

րութիւն ունեն մեր երկրի անցեալի պատմութեան, կուլտուրայի, արուեստի եւ արհեստների, հարեւան եւ հեռաւոր ժողովուրդների հետ ունեցած կապի եւ փոխազդեցութեան հարցերը լուսաբանելու համար» (Էջմիածին, ամսագիր, 1953, Թ. Ժ—ԺԲ., էջ 41)։



ՀԱՂԲԱՏ—ԵԿԵՂԵՑԻ

## ՀԱՂԲԱՏԻ ՎԱՆՔԻ ՇԷՆՔԵՐՈՒՆ ԵՒ ԵԿԵՂԵՑԻՆԵՐՈՒՆ ՆԿԱՐԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

«Կայ այս ուխտ ոչ ի Լոռի քաղաքն, որ ի Տաշիր գաւառի Գուգարաց, այլ ի սահմանավերջ Լոռայ՝ ի հարաւ արեւելս, որ ձգէր նաեւ արտաքոյ Տաշրայ, մինչեւ ի սահմանս նոյն իսկ Ուտիոյ կամ թէ՝ պարտ է ասել տեղի վանացս էր ի մէջ երկուց սահմանակցաց Լոռւոյ եւ Ուտի գաւառին ի Ձորափոր, ի սահմանագլուխս Գուգարաց, վասն որոյ ոմանք Ուտի դնեն եւ ոմանք Լոռի կամ Տաշիր» (Արարատ 1886, էջ 448) որ ըսել է նոյն վայրերուն սահմաններուն ընդարձակումներն ու անձկացումները նկատի առնելով։ Ամէն պարագայի Հաղբատ համարուած է Գուգարքի վանք, արդի Բուրչալու գաւառակին մէջ։

Երեք կողմէ, թէեւ քիչ մը հեռուէն, ձորերէ ու մէկ կողմանէ ալ անտառապատ լեռներով շրջապատուած է Հաղբատի հռչակաւոր վանքը, որ Սանահինի վանքի արեւելեան կողմը կը գտնուի եւ անկէ հազիւ թէ հինգ վերստ հեռու ըլլայ։

«Հաղբատ[1] մէկն է, կը գրէ Գարեգին արքեպիսկոպոս (ապա կաթողիկոս) Յովսէ-

փեան, Հայոց ամենանշանաւոր վանքերից եւ կեդրոններից․ ծագմամբ ունինք շատ աւելի հնադոյն վանքեր, բայց քիչերը դրանցից կատարել են այնպիսի երկարատեւ եւ կարեւոր դեր ինչպէս Հաղբատն է։ Նա նշանաւոր է նախ իբրեւ ճարտարապետական արուեստի մի թանգարան իր բազմազան շէնքերով, արձանագրութիւններով, Փիղուրատիւ եւ զարդերի քանդակներով․ Նշանաւոր է իբրեւ հոգեւոր կեդրոն իւր արքեպիսկոպոսութեամբ, որ ԺԲ․ դարից կարեւոր դեր է կատարել մեր եկեղեցական պատմութեան մէջ յատկապէս մինչեւ ԺԳ․ դարի վերջերը։ Բայց ոչ պակաս նշանաւոր է նաեւ իբրեւ մատենագրութեան եւ գրչութեան արուեստի գլխաւոր կեդրոն արեւելեան Հայաստանի մէջ» (Նիւթեր եւ ուսումնասիրութիւններ հայ արուեստի եւ մշակոյթի պատմութեան Պրակ Ա․ Երուսաղէմ 1935, էջ 41)։

Այս հոյակապ եւ նշանաւոր վանքը օժտուած է զանազան շինութիւններով։

Առաջին եւ հնադոյն եկեղեցին է Ս․ ՆՇԱՆ։

---

[1] Տէր Մովսէսեան կը գրէ «Հաղբատի վանքը իր կիսաւեր շէնքերի մնացորդներով թէկուզ միանգամայն լքուած եւ անտէրունչ վիճակում իրենից ներկայացնում է հնութիւնների թանգարան հոյակապ ճարտարապետութեան կառուցուածքների բազմաթիւ յուշարձաններով» (Հայկ․ երեք մեծ վանքերի Տաթեւի․․․ եկեղեցիները եւ վանական շինութիւնները, Երուսաղէմ 1938, էջ 130)։

«Արտաքին երեւոյթ շինուածոյ վանացս է սքանչելի ճարտարութեամբ յաղնիւ որձատաշ քարանց, զմրքէթազարդ երկնանման հրաշալի կաթուղիկէիւ մինչեւ ամենայն տեսանողք կրթին ի զարմանս» (Արարատ, 1886, էջ 493, հմմտ. Ջալալեան, ճամբ. Ա. էջ 53):

Ս. Նշան կառուցուած է սրբատաշ քարերով: Ներքուստ անսիւն է: Պատերու կից չորս գեղեցիկ կիսասիւներու վրայ կը բոլորուին չորս ռոմանական կամարներ, որոնք մանեկաձեւ շրջանակով մը միանալով կարող կ'ըլլան իրենց վրայ կրելու կաթուղիկէն, որ սիրուն է եւ չորս երկար ու նեղ լուսամուտներ ունի: Տաճարին չորս անկիւնները կը գտնուին իրարու վրայ շինուած երկերկու խորաններ: Աջակողմեան վերին խորանէն քարէ սանդուխ մը կ'առաջնորդէ ուրիշ խորան մը, որ պատարագելու սեղան ունի: Աւագ սեղանը գրեթէ երկու արշին բարձր է եւ սիրուն կամարով ու փայտեայ խաչով զարդարուած: Անոր ներքնածածկին վրայ նկարուած է Աստուած մէկ ձեռքին մէջ երկրագունդը եւ միւսին մէջ՝ խաչաձեւ գայիսոն:

Եկեղեցւոյ ներքին պատերն ալ հին ժամանակ կրօնական եւ պատմական նկարներով եւ արձանագրութիւններով հարուստ եղած են, բայց անհոգութեան հետեւանքով ապականած ու չափազանց վնասուած:

Յովհաննէս Դրիմեցին դայն կը նկարագրէ այսպէս՝

«Յեկեղեցիս Հաղբատայ նախկին ըստ հնութեան եւ առաջին՝ է աւագ տաճարն գերահրաշ նուիրեալ յանուն փրկարար խաչին Քրիստոսի, վասն որոյ եւ Ս. Նշան կոչեցեալ, շինուած հաստատկառոյց զարմանաքանչ հրաշակերտութեամբ գմբեթաւորեալ, համակ ի կոփածոյ յորձաքար վիմաց, քառանկիւնի ըստ դրիցն, իսկ ըստ տանեացն սալայարկելոյ արտաքին տեսլեան խաչաձեւ իմն արուեստագործեալ՝ ի մէջն անդ ունելով զկաթուղիկէն վերամբարձ եւ հրաշատեսիլ իբրեւ զգոհար իմն երկնագոյն։ Հաստատահիմն խարսխեալ ի վերայ չորից սեանց մեծամեծաց հաստահեղիւսից կցելոցն յորմունս անդր միջնորդութեամբ աւանդատանցն, որ յարեւելս եւ խորանաց ոմանց, որ յարեւմուտս, ըստ որոյ եւ ներքին տեսիլ նորա խաչանիշ իմն ձեւեալ եւ ըստ ամենայն մասանցն ճարտար յօրինուածովք չքնաղ յարդարեալ եւ սխրատեսակ ի զարմացումն տեսողաց։

Կրկին դրունք են ի նմա մին ի հիւսիսոյ կողմանէ, միւսն յարեւմտից . . . : Յաջմէ եւ յահեկէ բեմին են կրկին աւանդատունք . . . Ունի այս տաճար լուսանցոյց պատուհանս երկոտասան թուով . . . : Ճարտարապետ այսր գերապանծ շինուածոյ աւանդի լինել հռչակաւորն Տրդատ» (Թ. 239, էջ 53—54)։

Ս. Նշան եկեղեցւոյ ներքինը զգլխիչ է եւ խորհրդաւոր: Անոր միակ թերութիւնը գուցէ համարուէր լոյսի պակասութիւնը, բայց «Նորերումս ով որ է մէկը այս թերութիւնը լրացնելու համար, հարաւային կողմից մի մարդաչափ լուսամուտ է բաց անել տուել եւ այսպիսով նա աւելցնելով տաճարի լոյսը, պակասացնել է նրան գեղեցկութիւնը» (Արձագանք 1888, էջ 554. հմմտ. Ջալալեան (անդ, էջ 53): Շատ ճիշդ է դիտողութիւնը:

Զոյգ կամարակապ եւ հոյակապ դռներով — արեւմտեան եւ հիւսիսային կողմերը — կարելի է մտնել տաճարը, որուն կաղապարը իրենց ձեռքերուն մէջ բռնած են Աշոտ Ողորմածի երկու որդիները Սմբատ եւ Գուրգէն. առաջինը թագապսակ եւ երկրորդը ապարօշ մը գլխուն վրայ, ինչպէս նաեւ վարտակալ մը: «Զգեստ թագաւորացս է լայնաձեւ երկայն վերարկու, տարածեալ ի թիկանց մինչեւ ցկոճեղս իւրեանց ըստ արեւելեան տարազուց: Թագաւորքն պերճացեալք զինուորական զգեստիւք» (Արարատ 1886, էջ 494): Անոնց մարդաչափ պատկերները — բարձրաքանդակ — փորուած են եկեղեցւոյն արեւելեան արտաքին միակտուր քարին վրայ:

Եկեղեցւոյ երկարութիւնն է քան արշին եւ լայնութիւնն ալ նոյնքան, մինչ բարձրութիւնը զգալիօրէն աւելի (Ազգր. Հանդ. 1901, Է—Ը. էջ 397—398):

Ս. Նշան արքայաշէն է. Անոր հիմնարկութիւնն ըրած է Աշոտ Ողորմածի կինը Խոսրովանոյշ թագուհին իր ամուսնոյն օժանդակութեամբ, իսկ զայն աւարտած են անոր որդիները՝ Սմբատ եւ Գուրգէն՝ հսկողութեամբ Սիմէոնի եւ Տիրանունի: «Ի Հաղբատ ի գեօղն ի վերայ սուրբ Նշան եկեղեցւոյն գրեալ է զայս բան. Մեք Սմբատ եւ Գուրգէն թագաւորքս Հայոց շինեցաք զսուրբ Նշան եկեղեցիս ի թուին ՆԽ» (Ոսկերչեան, Թ. 513 Ձեռ. Վիեն. Մխիթ. Մատենադարանի, Թղ. 6ա. Ի ՆԽ թուականիս Սիմեւոն եւ Տիրանուն երէց շինեցաք եկեղեցիս Սմբատայ եւ Գուրգենայ փրկութեան Թ. 239, էջ 60—61 եւ 106, Ջալալեան, էջ 79):

Անոր կաթուղիկէն երկրաշարժով մը կը քանդուի եւ իշխանաց իշխան Մուկնորդի Հոնովար զայն կը վերականգնէ. «Ի ՆԿԷ թուականի (1016) Ես Մուկն որդի Հոնովարս շնորհիւն Աստուծոյ նոր նորոգեցի զսուրբ կաթուղիկէն, որ աւերեալ ի սաստիկ շարժմանէ եւ եոու զազարակ իմ գանձով գնած վասն.. մեղացս թողութեան... եւ պարտին ինձ յամենայն տարի զՎարդավառին.. քառասունք անխափան եւ որ պակասեցնէ եւ հանէ նզոված է» (Թ. 239, էջ 54 եւ Ջալալեան, էջ 68):

Եկեղեցւոյն չէնքն ալ քանի մը անգամ նորոգող ձեռքերու կարօտացած է եւ ան ալ ունեցած է բարեբար վերաշինողներ. այս—

պէս 1651ին Բէհրութ հարաւային կամարը, որ «Վեր էր յընկել», շինել կու տայ եւ երեք տարի վերջ Ագիգ ապաշխարողը տանիքը կը նորոգէ․ Ես քաղաքացի Խօճայ Բեհրուզս սուրբ Նշանի հարաւային կամարն վեր էր յընկել, շինել տուի յիշատակ ինձ եւ ծնողաց իմոց եւ կողակցին իմոյ, ամէն։ Շինեցաւ ի թուին ՌՃ (1651) եւ յառաջնորդութեան Աւետիս արքեպիսկոպոսին։ Շինեցաւ ձեռամբ Առնջեցի Նաւասարդին (Թ․ 239, էջ 123 եւ Ջալալեան, Ա․, էջ 69)։ Ի թուին ՌՃԳ (1654) նորոգեալ է տանի(ք)ս սուրբ ուխտիս ձեռամբ Ագիգ ապաշխարողիս (Ջալալեան, էջ 79—80)։

«Հանդէս տօնախմբութեան այսր եկեղեցւոյ կատարի յիւրաքանչիւր ամի յաւուր վերացման սուրբ խաչին, յորում ժամանակի ի նախնումն յաճախէին աստ բազմութիւնք յոյժ ուխտաւորաց, իսկ այժմ ոչ նոյնպէս» (Թ․ 239, էջ 55)։

Ս․ Նշան եկեղեցւոյ դրան առջեւ երբեմն գտնուած է գաւիթ մը որ յետոյ ընդարձակուած է եւ կոչուած ԱԽԱԳ ԳԱՒԻԹ կամ ԺԱՄԱՏՈՒՆ։

Յովսէփեան Գարեգին (Կաթողիկոսը) 1925 Օգ․ 26ին, երբ դեռ Հայաստանի մէջ կը շրջէր իբրեւ հնախոյզ եւ հայրենի ամէն բանով հետաքրքրուող, իր նկատողութեան տետրակին մէջ կը գրէ «Այսօր մեծ ժամատանն էի աշխատում, մեծ եւ բարձր վայելչի

*բովէներ ունեցայ այս հոյակապ չէնքի աւելի մանրամասն դիտողութեան ժամանակ։ Հաղթանակը պէտք է ունենայ իր պատմութիւնը․ ճարտարապետութեան, զարդարանքի, արձանագրական յիշատակների, պատկերաքանդակների, որմնանկարչութեան մի թանգարան է սա։ Կը կամենայի ապրել եւ աշխատել երկար երկար մինչեւ որ կարողանայի մի ամբողջական գաղափար տալ այն գեղարուեստական փառաւոր անցեալի մասին, որի տխուր մնացորդներն ենք մենք այժմ։ Միջոցներ պէտք են աշխատելու, լուսանկարելու, որմնանկարները արտանկարելու, ճարտարապետական մասերը չափագրելու եւ գծագրելու, արձանագրութիւնները նոյնահանութեամբ կորստից փրկելու, զարդաքանդակների ժամանակագրութիւն կազմելու եւ սերտ աղերսը մանրանկարչութեան հետ ցուցադրելու․ բայց ես խեղճ եմ, աղքատ, օրական ծախսերս հոգալ չեմ կարող եւ մտածում եմ շուտ հեռանալ։ Այս տեղ պէտք է նստիլ մէկ երկու, երեք ամիս մասնագէտ աշխատակիցների հետ» (Նիւթեր եւ ուսում․ նասիրութիւններ, պրակ Ա․, էջ 67)։*

*Այս մեծ եւ հոյակապ չէնքի մասին Յովհ․ Ղրիմեցի կը գրէ․ «Առ արեւմտեան որմով — տաճարիս կից ընդ նա է դաւիթ մեծ կամ ժողովրդանոց, որ եւ կոչի ժամատուն, հաստակառոյց եւ աހեղակերտ հոյակապ եւ սքանչելի, համակ վիմարդեան, սըր-*

բատաշ քարամբք յերկուբեալ, որ յիրաւի ըստ վկայելոյ Կիրակոսի պատմագրի Զարմացուցանէ զտեսողն հիացմամբ» (Թ. 239, էջ 55):

Ժամատունը խաչանման է, 22 արշին երկար, եւ 42 կանգուն լայն: Պատկուած է պզտիկ գմբէթով: Վեց կիսասիւներու եւ երկու սիւներու վրայ բոլորուող կամարներու վրայ հաստատուած է ձեղունը: Այս երկու սիւները երկուքուկէս արշին երկարութեամբ միակտուր քարեր են՝ ամուր եւ հաստատուն պատուանդանի վրայ զետեղուած եւ գեղեցկաքանդակ խոյակով զարդարուած: Անոնց կամարները աղեղնաձեւ են եւ կարմիր ու կապոյտ քարերով այնպէս մը յարմարցուած որ արեւին ճառագայթներէն հալածական ամպերու պատրանքը կու տան:

Գաւիթին արեւելեան կողմի երկու անկիւնները մէկական մէկ կամ երկու յարկանի պատարագամատոյց խորաններ կերտուած են իրենց սեղաններով: Ասոնցմէ զատ կան դեռ ուրիշ երկու խորաններ: Գաւիթին հիւսիսային եւ հարաւային պատերուն մէջ բացուած են երկերկու կիսաբոլոր, իսկ արեւմտեան պատին վրայ երկու հատ նեղկեկ եւ երկնեկ պատուհաններ: Նոյն կողմերը պատերու մէջ կան երկու կամարակապ եւ սիւնազարդ դռներ: Անոնցմէ երկուքը յետոյ քարով գոցուած են: Անշուշտ աւելորդ համարուած:

Այս Աւագ գաւիթը վերակազմուած, վերաշինուած եւ ընդարձակուած գաւիթ է[2]։ Ինչպէս ըսուեցաւ՝ նախապէս փոքրիկ գաւիթ եղած է եւ շինուած Կորիկէ Թագաւորի Մարիամ աղջկան հրամանով եւ դրամական օժանդակութեամբ։ Շինութիւնը տեղի կ'ունենայ 1185ին։ Ետքէն Յովհաննէս եպ. Խաչենեցի զայն անբաւարար գտնելով այժմեան մեծ գաւիթը շինելու կը ձեռնարկէ եւ գլուխ կը հանէ (Արարատ, 1886, էջ 518—519, հմմտ. Ջալալեան, անդ, էջ 53—54)։

Ինչպէս Ս. Նշանի նաեւ այս ժամատան ճարտարապետ աւանդուած է Տրդատ, որ սխալ է, զի վերջինը շինուած եւ ներկայ հոյակապութեան հասած է 1221ին (հմմտ. Անի ամսագիր 1954, Թ. 4, էջ 217, ուր ժամատուններու վրայ յաջող գրութիւն մը կայ[3])։

---

[2] Տէր Մովսէսեան կը գրէ թէ «Հոյակապ է գաւիթը եւ հերթիկի չուրջը առաստաղը կազմուած է մոզայիքի նման գոյնզգոյն քարերէ» (Հայկական երեք մեծ վանքերի Տաթեւի... շինութիւնները, էջ 125՝ հմմտ. Արարատ 1886, էջ 519—520)։

[3] Արձանագրութիւն մը կը հաւաստէ՝ «Յամս տանուտէրագաւր Թագաւորացս Թամարայ եւ որդւոյ իւրոյ Գէորգեայ եւ երկու հարազատաց Զաքարէի եւ Իւանէի հրամանաւ սոցա կոչեցայ յեպիսկոպոսութիւն սուրբ աթոռոյս Հաղբատայ ես Յոհաննէս ի Խաչենոյ. ներողամտութեամբ Աստուծոյ կացեալ իմ ամս բազում յառաջնորդութեանս եւ ըստ իմում կարողութեան սպասաւորեցի սրբոյս ի շինութիւն եւ յառաջադիմութիւն տանս Աստուծոյ, նախ ի ձեռն շինուածոց ի սուրբ Նշանս, ի մատեանս, ի սպաս զարդուց, զկաթուղիկէս սալել եւ զդուռնս կազմել, զսուրբ Գրիգոր նորոգել, զգաւիթս շինել, զգաւթի սուրբ սեղա—

*Յովհաննէս Խաչենեցիի շինարարական գործունէութեան մասին Յով. Ղրիմեցի կը գրէ. «Իսկ զնոր եւ զմեծագոյն հրաշագան մասն այժմու գաւթին հանդերձ չորեքումբք յիշատակեալ խորանօքն շինեաց Յովհաննէս եպիսկոպոս Խաչենեցի առաջնորդ ուխտիս ի սկիզբն երեքտասան դարու՝ քակելով զմիջին մեծ մասն առաջնոյ գաւթին, որ էր փոքրագոյն որպէս պատմէ Կիրակոս յասելն Զգաւիթն փոքրագոյն քակեաց, որ ի դուռն կաթուղիկէին Հաղբատայ եւ շինեաց մեծ եւ գեղեցիկ շինուածս, որ զարմացուցանէ զտեսօղն հիացմամբ: Յիշատակի շինութիւն գաւթիս եւ յարձանգրի նորին Յովհաննու այլովքն հանդերձ...: Մասունք հին եւ նոր շինուածոց այնչափ ճարտարարուեստ հմտութեամբ են բաղկացեալ, մինչեւ ի մօտոյ հազիւ նշմարի: Զեւ առաջնոյ գաւթին երեւի քառանկիւնի, ձգեալ ընդ երկայն ի հիւսիսոյ ընդ հարաւ կամ անդրադարձեալ ըստ չափու տարածութեան 24 քայլից, զոր եդաք ի վերոյ վասն տարածութեան լայնագոյն մասին այժմեան գաւթին» (Թ. 239, էջ 57):*

---

*նոյն եւ զերեք սուրբ Նշանն: Եւ իմ խնդիր է ի միաբանացս զսուրբ Յակոբայ տանի կիրակէն իմ սուրբ Նշանացս տուն կատարեն: Եւ զպարտս ուսուրն ինձ (վասն իմ) մատուցանեն յամէն եկեղեցիսն եւ մի ոք իշխեսցէ այլում տալ յայսմ աւուր զժամն: Եւ որք կատարեն զպաշտօնս մեր աւրհնեսցին ի Տեառնէ յԱստուծոյ, ի Թուին ՈՀ»* (1221, Թ. 239, էջ 113 եւ 343 եւ Արարատ 1886, էջ 521):

*Այս Աւագ գաւիթը[4] կ՚ըլլայ մշտնջենական հանգստավայրը Գուգարքի արքաներու, իշխանազուններու, ականաւոր անձերու եւ նաեւ բարերարներու: Այսպէս՝ հոն թաղուած են Աբաս թագաւոր, Դաւիթ, Կիւրիկէ թագաւոր, Թամար թագուհի, Ռուզուդան, Բուրխնայ, Մարիամ, Աբաս թագաւոր, Կիւրիկէ, Վասակ, Բուրդուխան, Սմբատ որդի Ուքանայ, Համզէ, Թայիկ, Կավթել, Նուսթի, Դոլ, Յովհաննէս եպիսկոպոս, Զաքարէի եւ Իվանէի քոյրը, Նեգուսին (Նեջամին), Սեւադայ, Սեներքերիմ թոռն Աւագ Սեներքերիմայ, Բուրդ եւ Գրիգոր ամիրաներ, Դաւիթ, Խաւտասհասան, Սմբատ, Խոստրովիկ, Նանայ, դարձեալ՝ Տէր Գրիգորիս, Փիլիպպոս արքեպիսկոպոս, Սմբատ, Մաթուն, Աբլ-հասան, Ծիթվասան, Մինաս վարդապետ, Սմբատ, Յովհաննէս եպ. Սեւադայ, Սեներքերիմ, դուցէ նաեւ Մխիթար Գօշի աշակերտը Մինաս (Թ. 239, էջ 81—82, Արարատ 1886, էջ 531, Ազգր. Հանդ. Ժ—Ը 1901, էջ 400—401):*

*Ս. Նշան եկեղեցւոյ եւ անոր Աւագ գաւիթին հարաւային կողմը բարձրացած է Ս.* ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐՉԻ *նուիրուած սրբատաշ եւ սադաշէն եկեղեցին: Մուտքի միակ*

---

[4] *«Ի կենդրոնի այսր ժամատան դոյ վիմափոր աւազան կերտեալ ի մեծ միակտուր քարէ, յորում ի տաճնի Աստուածյայտնութեան կատարեն գՋրօրհնէքն»* (*Արարատ*, 1886, *էջ* 518): *Հոն է նաեւ մկրտութեան աւազանը* (*անդ*, *էջ* 199):

դուռ մը ունի : Կը գտնուի անոր արեւմտեան կողմը : Սխնազարդ է եւ արտաքսան կրկնակ կամարներով օժտուած : Անոր վերեւը բացուած է երկար ու նեղ լուսամուտ մը :

Եկեղեցւոյն չորս անկիւնները գտնուող խորաններուն վրայ կը բոլորուին կամարներ : Անոնց վրայ հանդարտօրէն կը հանգչի ձեղունը : Առաջին գաւի խորանները մէկական են, բայց վերջին գաւինը երեքական խարսխի վրայ եկած : Բոլորն ալ պատարագ մատուցանելու սեղաններ ունին, որով աւագ խորանն ալ հաշուելով ինը սեղան կ'ունենայ (Թ. 239, էջ 73 եւ Արարատ 1886, էջ 530) :

Կ'աւանդուի թէ հիմնուած ըլլայ 1005ին եւ վերանորոգուած 1211ին (Համմտ. Արձագանք 1884, էջ 627, Ազգր. Հանդ. 1901, էջ 401 եւ Ջալալեան, Ճամբ. Բ. էջ 54) :

Ս. Նշանի գմբէթը կանգնած է Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ փոքր ու գեղեցիկ եկեղեցին, որ սրբատաշ քարերով շինուած է եւ քառակուսի է ու անսիւն : Ունի չորս կիսասիւներ ռոմանական կամարներով, որոնք կը կրեն կաթուղիկէն[5], որ չորս պատուհանէ լոյս կ'ընդունի : Իւրաքանչիւր պատի վրայ բացուած է լուսամուտ մը : Ունի մէկ պատարագամատոյց սեղան եւ մէկ սխնազարդ դուռ — արեւմտեան կողմը : «Արտաքին երեւոյթ սորա գեղեցիկ է եւ բոլոր քարինք

[5] «Առ դրան կաթուղիկէիս թաղուած են Սենեքերիմ եւ Սեդայ» (Արարատ 1886, էջ 532) :

ձեղուայն կխով չափ հաստատ ունելով պոր-ծելոյս ի սոյլ կոփածոյ քարանց իբրեւ պա-տուակ պահպանելոյ են մինչեւ ցարդ զեկեղե-ցիս յանձրեւային կաթլոց» (Արարատ 1886, էջ 231): Յովհաննէս Դրիմեցի կը գրէ. «Վիմարդեան, գմբեթաչէն, գեղեցիկ տեսլեամբ նմանաբանելոյ ըստ իմիք զձեւ Ս. Նշան ուխտ տաճարին» (Թ. 239, էջ 74):

Ս. Աստուածածին եկեղեցւոյ բարեբարն ու շինել տուողն է Տիկին Թաթուն Դեսու-մեանց, Յովհաննէս առաջնորդի օրով[6]:

Հաղբատի աչքառու մէկ հոյակապ շէնքն է Համազասպ կոչուածը, որ կ'անուանուի նաեւ Համազասպի շէնք կամ եկեղեցի: Ամ-բողջակէս սրբատաշ քարաշէն է եւ 39 արշին լայն եւ նոյնքան երկար. իսկ բարձրութիւնն է 49 արշին: Զորս ամբողջական եւ ութը կի-սախներու վրայ կը բոլորուին ռամանական

[6] Կամաւն Աստուծոյ շինեցաւ եկեղեցիս ար-դամբք Թաթունին մաւր Հասանոյ յազգէ Տեսումենց, որ բերաւ ի Թաչենոյ յամուսնութիւն Զաքարիայի, որ էր աէր Զաքայ, եւ Տամշոյ, Գարդմանոյ եւ Տէ-րունականին եւ այլոց գաւառաց՝ ընդ որում եկեալ եղբարք իւր Սենեքերիմ եւ Սեւադայ եւ փոխեալ առ Քրիստոս եղան առ դրան կաթուղիկէիս, իսկ Թա-թունն վասն յիշատակի նոցա եւ իւր շինեաց զսա եւ ետ ի սա զսուրբ Նշանն ակին, որ ունի մասունս եւ զաւետարան մեծածախ եւ ակի(հ)ք արծաթիք եւ մի այգի մի Թաթունաշինի: Եւ ես Տէր Յովհաննէս եւ միաբանքս Հաղբատայ տուաք սոցա քառասունք մի պատարագ ի տարուոջն, որ խափանէ դատէ զնա Աստուած եւ կատարիչքն աւրհնեցէ Քրիստոս Աստուածամէն (Թ. 239, էջ 74, Արարատ 1886, էջ 532 եւ Զա-լալեան, էջ 65—66):

կամարները : Մանեկաձեւ շրջանակով մը
չորս սիւներու կամարները իրարու հետ կու-
դան կը միանան, իսկ կիսասիւներու կամար-
ները ձեղունով իրարու կը կցուին : Այս մա-
նեկաձեւ շրջանակին վրայ կը բարձրանայ
ութանկիւնաւոր գմբէթը, որուն ծայրը խո-
չոր բացուածք մը կայ՝ լոյս ընդունելու հա-
մար : Նմանապէս արեւմտեան պատին մէջ
կայ կլորակ պատուհան մը, իսկ միւս պա-
տերու վրայ բացուած են մէկական նեղ եւ
երկար պատուհաններ (Արարատ, 1887, էջ
27, Արձագանք 1884, էջ 627, Ջալալեան,
անդ, էջ 55, Ազգր. Հանդ. 1901, էջ 404) :

Համադաշտի մասին Յովհաննէս Ղրի-
մեցի կը գրէ «Ի հիւսիսային կողմն Ս. Նշան
ուսաղ տաճարին կից որմն հիւսիսային գաւթի
է եկեղեցի մեծ Համադաշտ յորջորջեալ
կանգնեալ ի վերայ չորից սեանց ի քառան-
կիւն գլխս, գմբեթեայ, հաստատակառոյց, հա-
մակ ի կոփածոյ (կոփածու) յորձաքար վի-
մայ : Ներքին տարածութիւն նորա ընդ լայն
եւ ընդ երկայն հաւասար, այսինքն՝ քսան
եւ չորս քայլաչափ : Սեղան նորա կամ բեմն
անկանի արտաքոյ որմոյ նորա յարեւելից եւ
է փոքր առ համեմատութեամբ ընդարձա-
կութեան նորա, որոյ լայնութիւն ընդ հարաւ
է մետասան ոտնաչափ, իսկ երկայնութիւն
եօթն քայլաչափ : Սոյնպէս եւ բարձրութիւն
նորա առ ընդարձակութեամբն ցածագոյն է
յոյժ, որպէս եւ պատուհանք նորա սակաւ եւ

փոքրիկ, վասն որոյ եւ խաւարամած · պատուհանս չորս ունի ի չորից կողմանց յարեւելից եւ յարեւմտից, ի հիւսիսոյ եւ ի հարաւոյ · հարաւայինն է ծածկեալ յորմոյ անտի հիւսիսային գաւթի աւագ տաճարին: Ունի եւ գայլ պատուհան բոլորշի սակաւ ինչ մեծ յաստառաղն կամ ի գլուխ գմբէթին: Դուռն նորա մի միայն, բայց ընդարձակ յարեւմտից: Գմբէթ նորա արտաքուստ որպէս եւ սալայարկ տանիքն ու հատարակ են խանգարեալ այժմ, ընդ որ ջուրք անձրեւաց եւ ձեանց լուծելոց թափանցեալ ծովանան ի ներքս:

Զայս եւս շինուած կառոյց Համազասպ եպիսկոպոս յերկրորդ նուագի առաջնորդութեան իւրոյ, որպէս ցուցանէ արձանագիր նորա դրոշմեալ ի ճակատ դրան եկեղեցւոյն արտաքուստ...: Յիշատակէ եւ Կիրակոս զշինութիւն եկեղեցւոյն որպէս եւ զանգակատան ի ամին Համազասպայ յասելն · Շինեաց (Համազասպ) եկեղեցի ի տեղին հրաշալի եւ զանգակատուն եւ ժամատուն մեծ եւ սքանչելի:

Ժամատուն ասելով յայս եկեղեցիս ակնարկէ, զի չիք ի մենաստանիս այլ շինուած ի Համազասպայ բաց ի սմանէ եւ զանգակատանէն» (Թ. 239, էջ 71—72): Դիտենք որ գրողները՝ ժամատուն, եկեղեցի եւ նոյն իսկ գաւիթ երբեմն իրարու կը խառնեն:

Համազասպի այս շինութիւնը, որ իր ա–

նուռն անմահացուցած է ընդունելով Համապատը յորջորջանքն ու անունը, ստուգիւ «մեծափառ» է արձանագրութեան համաձայն (Մովսէսեան, Հայկ. երեք մեծ վանքերը... շինութիւնները էջ 130—131) եւ «Արտաքին երեւոյթ այսր գաւթի է զարմանալի յոյժ, զոդցես ահագին իմն բլուր կանգնեալ, այլ ձեռն ճարտար արուեստաւորի այնպիսի իմն գեղապարգեալ է զգժուարատաշ քարինս նորա մինչեւ զՄայիսեան ծաղկազարդ բլրակի բերել զնմանութիւն, ի տես որոյ չյագին աչք հայեցողաց ի նա» (Արարատ 1887, էջ 27):

Համապատի շէնքին մէջ եւ դուրս թաղուած են քանի մը անձեր:

Ս. Նշան եկեղեցւոյն եւ Համապատ շէնքի մէջ տեղը կայ Պողոտաձեւ գաւիթը, որ կը հասնի մինչեւ միաբաններու սենեակները: Այս գաւիթը հիւսիսէն սիւնապատ որմերով եւ աղեղնաձեւ կամարներով բարձրանալով մինչեւ Ս. Նշանի հիւսիսային պատուհանը եւ այս ցածնալով կու գայ կը միանայ նոյն եկեղեցւոյ հաստատուն որմերուն:

Այս գաւիթին մէջ շատերու աճիւնն ամփոփուած է: «Բոլոր յատակ այսր պաղատաձեւ գաւթիս ծայրէ ի ծայր սալեալ է ստուար եւ կոփածոյ գերեզմանաքարօք, այնպէս կից առ կից զատակարգեալք են տապանաքարքն մինչեւ այլ եւս չէն տեղի եղեալ այլ քարինք սալայատակի» (Արարատ 1887, էջ 30):

*Անոր հիւսիսային կողմը կը գտնուի Մուկն իշխանի Հնատուր որդւոյն, որ Հաղբատի մեծ բարերարներէն է — դերեզմանը։ Գեղեցիկ խաչքար մը կը գուժէ անոր տարաժամ վաղաժամ մահը (Թ. 239, էջ 64, Ջալալեան, էջ 79,* Brosset, Description... *էջ 74)։*

*Վերոյիշուած Համազասպ շէնքի հիւսիսային կողմը իրարու մերձ շինուած են երեք թաղակապ խորաններ մէկական պատարագամատոյց սեղաններով, նեղ եւ երկար պատուհաններով եւ դռներով։ Երեքն ալ մէկական խաչքար ունեցած են, սակայն երկրորդինը ներկայիս կը պակսի։ Առաջինն ու երրորդը կը ներկայացնեն Աստուածամայրը իր գրկին մէջ մանուկ Յիսուսը (Ազգր. Հանդ. 1901, էջ 404—405)։*

Նշխարատունը *«Անկանի յարեւելակողմն այոր գաւթի (Ս. Նշանի) եւ իւր հինգերորդ մասամբ ի հիւսիսային մասն արեւելեան գաւթին է շինուած ինչ ի քափածոյ քարանց կամարայարկ խորանարդ քառակուսի ըստ ներքին դրից եւ հաստակառոյց, չորքձանկի ծածկեալ ընդ հողով յարտաքուստ կողմանէ դառ ի գմբեթէն, ունի պատուհան մի եւեթ բոլորշի յատակատողն եւ դուռն միակ յարեւմտից հանդէպ միջնադրան հիւսիսային գաւթի, ներքին տարածութիւն նորա ընդ լայն եւ ընդ երկայն համաչափ, այսինքն՝ մետասան քայլաչափ։ Այս շինուած սովորա-*

բար այժմ մատուռնատուն կոչի, կամ առակ մատուռն եւ ուր ուրեմն նշխարատուն կամ նշխարախուց, յորում պահին մխարանիցն պարէնք եւ են կարասք գինւոյ մեծամեծք եւ փոքունք ի նմա ի վաղ ժամանակաց անտի թաղեալք ի գետնի ըստ սովորութեան կողմանցս: Ժամանակ շինութեան սորա անյայտ. բայց թուի հնագոյն գոլ եւ իբր ի միասին շինեալ ընդ աւագ տաճարին կամ սուղ ինչ զկնի» (Թ. 239, էջ 67—68):

Համազասպ կոչուած շէնքի կամ գաւիթի եւ Ս. Նշան տաճարի մէջ ինկած սրահին մէջ Յովհաննէս Դօփեան առաջնորդը[7] 1273ին կը կանգնէ քառանկիւն պատուանդանի վրայ կարմիր քարէ շինուած շատ գեղեցիկ խաչքար մը — ԱՄԵՆԱՓՐԿԻՉ մը (Արարատ 1887, էջ 32): «Խաչքարանի բարձրութիւնը յատակից մինչեւ գագաթը 5·17 մետր է, պատուանդանի լայնութիւնը միջին մասում 1·47, բուն խաչի բարձրութիւնն է 217, իսկ լայնքը 1·08» (Յովսէփեան, Հաւուց թառի Ամենափրկիչը... էջ 65): Խաչքարի վրայ կայ Քրիստոսի մարմինը, ձեռքերը պարզուած, թեւերը քիչ մը ճկուած, գլուխը դէպի աջ թեքուած: Ոտքերը մեխուած են իրարու հակառակ ուղ-

[7] Յովհաննէս Դօփեանի անունը արձանագրուած է Ամենափրկիչի առջեւ եւ ունի սա տապանագիրը՝ Այս է հանգիստ Տէր Յովհաննէսի թուին ՊԻԴ (1375) (Աղպր. Հանդ. անդ, էջ 406, Թուականի սխալ կայ):

գութեամբ: Խաչին հորիզոնական թեւերուն տակ կը գտնուին՝ Յաւագին Տիրամայրը աջակողմը եւ Սիրոյ աշակերտը — Յովհաննէս — ձախակողմը, Ս. Կուսի կողմը, քիչ մը վարը, կը տեսնուի Յովսէփ Արեմաթացին, որուն դիմացն է Նիկոդեմոս: Ասոնցմէ զատ ներկայացուած են տասնուերկու առաքեալները — աղօթողի դիրքի մէջ — եւ ուրիշ առարկաներ, որոնք խաչելութեան հետ առնչութիւն ունին, ինչպէս լուսին՝ ու արեւ, Ադամի գանկը:

Այս Ամենափրկիչի պատմութիւնը հետեւեալ արձանագրութիւնները կը հաղորդեն՝ «Շնորհաւք սուրբ Երրորդութեան եւ օգնութեամբ սուրբ Նշանիս, ես Տէր Յովանէս նուաստ ծառայ ծառայից Աստուծոյ շինեցի զգաւիթս, զդրաստոնս եւ զարահ նորին ածի զպզպատս զլիճն եւ եաւ կազմեց զմեծածախ պահարանն ու (°) Բրգաձորս սուրբ Նշանին զնեցի զգեղն Բուրա եւ ընծայեցի սուրբ Նշիս (առանց պատուի), կանգնեցի զխաչս վասն արեւշատութեան աթաբակ Ամիր սպասալար պարոն Սադունին եւ զաւակաց նորա եւ յիշատակ անանց ինձ եւ ծնողաց իմոց եւ եղբարց եւ հոգեւոր որդո իմո Սարգիս վարդապետի, այլ եւ սահմանեցի Ծաղզարդարին իրից արարացն Բ. ամիտակ յէրէցն տայ եւ միաբանքս կատուն մեզ Զատկին ճրագալոյցն պամէն եկեղեցիքս պատարագել. կատարիչքն աւրհնին, (Յովսէ-

վեան, Հաւուց Թառի Ամենափրկիչը, էջ 61—62) :

Թուին ՉԻԲ — 1273 — յիշխանութեան եւ տէրութեան սուրբ ուխտիս աթարակ Ամիր ազատայար պարոն Սադունին ես Տէր Յոհաննէս կանգնեցի զխաչս Ամենափրկչի աւգնական պարոն Սադունին եւ յիշատակ ոգւո (կրկ) իմո» (Յովսէփեան, անդ, էջ 462, Ազգր. Հանդ. 1901, էջ 406, Արարատ 1887, էջ 32—35 եւն եւն) :

«Յարեւելից սուրբ Նշանի աւագ սեղանոյն կամ յարեւելից հիւսիսոյ իբր քան եօթն քայլաչափով բացակայ ի նմանէ կանգնեալ կայ Զանգակատուն ուխտիս, կերտուած հրաշագան, ոչինչ պակաս քան զաւագ տաճարն եւ քան զարեւմտեան գաւիթն մեծ, շքեղութեամբ եւ հոյակապութեամբ, հաստակառոյց համակ ի տաշածոյ յորձաքար վիմաց ստորին մասն նորա կիսով չափ խաչանիշ ձեւեալ ըստ դրից ծոցաւորեալ անկեամբ, վասն որոյ եւ ութանկիւնի ըստ ներքին դրից, իսկ վերին մասն մինչեւ ցծայր ձեղունին է քառանկիւնի ամփոփակեալ անկեամբք, անկիւնքն ծոցաւորք ըստ վերին մասանց արտաքուստ այնչափ քաջարուեստ ճարտարութեամբ են արուեստայարմարեալք, մինչեւ զարմացուցանել զարդեան ճարտարապետս» (Թ. 239, էջ 69) :

Սրբատաշ քարերով շինուած է, քառա—

կուսի եւ 16 արշին երկար ու 16 արշին լայն ։ Անոր իւրաքանչիւր կողմը ուղիղ անկիւնով ներս ինկած է՝ կրելով իր վրայ գեղաքանդակ կամար մը ։ Չորս պատերը ունին մէկական պատուհան ։ Ներքուստ անսիւն է ։

Արեւելեան կողմը ունի երկու պատարագամատոյց խորան, սեղաններով միասին ։ Ասոնց կողքէն քարեայ նուրբ սանդուխ մը կը բարձրանայ ուրիշ խորան մը, որուն կողքէն ալ ուրիշ սանդուխ մը կը հանէ սրահը ։ Հոն չորս ամբողջական եւ ութը կիսասիւններու վրայ բոլորուող կամարներու տակ կան չորս Աւետարանիչներու նուիրուած խորաններ ։ Այս սրահին վրայ կայ գմբէթ մը, որ կը հանգչի ութը կլոր սիրուն սիւներու վրայ ։

Զանգակատունը կարելի է մանել անոր արեւմտեան կողմը շինուած սիւնազարդ եւ կամարակապ դռնէն ։ Անոր աջէն ու մերձ թաղուած են Յովհաննէս Սարկաւագ (Ոսկեան, Մատենագրական Քննութիւններ, Վիեննա 1922, էջ 21—23, Աբրահամեան Ա., Յովհաննէս Իմաստասէրի մատենագրութիւնը, Երեւան 1956, էջ 33), Յովհաննէս Երզնկացի, Դաւիթ Քարայրեցի, Պօղոս Հայրապետ, Կիրակոս, Ղուկաս, Աստուածատուր, Մակար, Զաքարիա բարուն եւն եւն ։ Թ. 239, էջ 97, Արարատ 1887, էջ 73, եւն եւն) ։

Ձանգակատունը շինել տուած է Համազասպ արքեպիսկոպոսը 1245ին եւ յայտ բերած թէ ձեռներէց եւ ճաշակի տէր անձ է (Հմմտ. Ազգր. Հանդ. 1901, էջ 408, Արարատ 1887, էջ 70, Արձագանք 1884, էջ 628 եւ Տէր Մովսէսեան Մ. Հայկ. երեք մեծ վանքերի շինութիւնները, էջ 111—112)։

Անուանի է Հաղբատի ՍԵՂԱՆԱՏՈՒՆԸ, որ քառաշէն եւ ընդարձակ սրահ մըն է։ Ներքուստ զոյգ սիւներով եւ անոնց վրայ բարձրացող կամարով մը կը բաժնուի երկու մասի, որոնցմէ իւրաքանչիւրը վեց կիսասիւներու վրայ կամարներ քաշելով կը վերջանայ նախ քառակուսի եւ ապա ութանկիւնի լուսամուտ գմբէթով մը։ Արեւելեան պատի մէջ կայ կամարակապ ներանկուած մը, որ գեղեցիկ խաչքար մը կանգնուած է։ Դուռը սիւնազարդ է, կամարակապ եւ երկու կողմէ մէկական երկար ու նեղ պատուհաններով օժտուած (Հմմտ. Տէր Մովսէսեան, անդ, էջ 78)։

Իշխանաւորներու եւ միաբաններու երբեմնի այս շքեղ ճաշարանը ետքէն Ձիթահանքի եւ ապա ... յարդանոցի կը վերածուի։

Առընթեր Համազասպայ յարեւելս կոյս կաթուղիկէ եկեղեցւոյ է քերովբաքանդակ ԳՐԱՏՈՒՆՆ տասանց սեանց շինեալ ի Յովհաննէս եպիսկոպոսէ Դսեղեանց, որ կ'ըսէ Ես Տէր Յովհաննէս ... շինեցի զգաւիթս, զգրա-

տունս եւ գրաւն նորին (Արարատ 1887, էջ 68 եւ Արձագանք 1884, էջ 628 [8]) :

Հաղբատի եկեղեցիներու եւ գաւիթներու մէջ ու մերձ, ինչպէս նկատուեցաւ, գտնուած են շատ մը գերեզմանաքարեր, որոնց տակ ամփոփուած են մեծ մասով մենաստանին բարերարները, իշխանուհիներ, առաջնորդներ եւ երեւելի անձնաւորութիւններ: Իսկ փոքրիկ բլրակի մը հողերուն տակ իրենց յաւերժական հանգիստը գտած են միաբաններ եւ նմանապէս ուրիշ անձեր: Այդ բլրակը վանքին եւ գիւղին ԳԵՐԵԶՄԱՆԱՏՈՒՆՆ եղած է եւ դեռ է: Հոն եւ միւս գերեզմատան մէջ կան շատ մը խաչքարեր արձանագրութիւններով: (Արարատ 1887, էջ 173—174 եւ Թ. 239, էջ 87 ու Brosset, Description... էջ 38) :

Հաղբատի վանքը շրջապատուած է հարիւր արշին երկար եւ տասնուհինգ արշին լայն հաստ ու բոլորակաձեւ ՊԱՐԻՍՊով, որ ժամանակին ունեցած է վեց աշտարակ եւ երկու դուռ, որոնցմէ մէկը շինուած է 1246ին Համազասպ առաջնորդի ժամանակ: Պարիսպը ունէր մասնական փլուզումի ենթար-

[8] ՎԱՐԺԱՐԱՆ (Ջիթահանք) Հաղբատայ վանգակատան մերձ քարաշէն եւ գեղեցկայարմար բաժանեալ յերկուս արձակ գաւակարգս ճարտարաշէն կամարօք եւ երկու մեծամեծ գմբէթայարկ լուսամուտօք (Արարատ 187, էջ 170) : Ջիթահանք այս վարժարանի մէջ երբեմն գտնուած է Յովհաննէս Պլուզ (անդ. էջ 170—171) :

կուած է, բայց նաեւ վերանորոգուած: Զայն ընդարձակել տուած է Ամրատ իշխանի որդին աւելի հող ներս առնելով (Արարատ 1888, էջ 169 եւ Ազգր. Հանդ. 1901, էջ 169):

Պարխայէն դուրս կը գտնուի վանքին ԱՂԲԻՒՐը, որուն ջուրը խողովակներով Լոյս լեռնէն բերուած է: Ջուրը կու գայ կը թափի քարեայ հինգ աւազաններու մէջ, որոնց վրայ շինուած է որահ մը որուն կամարին վրայ կը կարդացուի. ի թուին ՉԷ — 1258 — հաստատուած կամարակապս ի հայր Յովհաննէսէ ի հալոյ ընչից իւրոց, որում աղօթեսցի Քրիստոս տալով հոգւոյ նորա ի լուսեղէն յարկաց եւ յանմահական ջրոյն, ամէն (Արարատ 1888, էջ 171 եւ Ազգր. Հանդ. 1901, էջ 412):

Հայրատի վանքի պարխայէն դուրս, սակայն անկէ ոչ այնքան հեռու, կան քանի մը շինութիւններ եւ մատուռներ, որոնք հաւանօրէն մենաստանին սեպհականութիւն եղած են, զի անոնց մօտ ու մէջ ամփոփուած են Հայրատի առաջնորդներէն ու միաբաններէն եւ նմանապէս բարերարներէն:

Այսպէս Տէրունական լերան ստորոտը կայ սիրուն եկեղեցի մը, որ կոչուած է ԿՈՒՍԱՆԱՑ ԱՆԱՊԱՏ: Անհաւանական չէ որ անոր հովանիին ներքեւ երբեմն ապրած ըլլան կուսաններ միաբաններու առաջնորդութեամբ եւ կամ նախապէս կուսաններու վանք եղած ըլլայ (Արարատ 1887, էջ 213 եւ Արձագանք

1884, էջ 629)։ Եկեղեցին դմրէթաւոր է եւ անախին չէնք մըն է։ Ունի պատարագամատոյց սեղան, քանի մը յուսամուտ եւ սինապորդ ու կամարակապ դուռ։ Այս դրան մերձ թաղուած են Տէր Յովհաննէս, Տէր Գրիգոր, Տէր Ստեփանոս, Սարգիս վարդապետ, իսկ անոր բակին մէջ Յովհաննէս ու Համազասպ արքեպիսկոպոսները, Գէորգ, Իգնատիոս, Համդ. 1901, էջ 416[9]։

Պարխալին հարաւային կողմը Սեղիկ փոքր գետին մերձ 1279ին Յովհաննէս Դոփեան աստնորդին առեն Բարսեղ քահանան կը կանգնէ ՋՕՐԱՎԱՐՔ եկեղեցին, որուն մօտ կը գտնուին գերեզմաններ (Արարատ 1887, էջ 214 եւ Ազգր. Համդ. 1901, էջ 414—415)։

Հազրատ գիւղին հիւսիսային դին կը տեսնուի կիսաւեր եկեղեցի մը, որ կանխաւ կոչուած է Ս. ՍԻՈՆ, բայց ժողովուրդը գայն սիրով անուանած է ԱՌԱՋԱԴԷՄ եկեղեցի իբրեւ թէ Ս. Լուսաւորիչը այդ կողմեր շրջած առեն բոլոր եկեղեցիներէն յառաջ այդ շինած ըլլայ։ Անոր շուրջը կան բաւական թուով խաչքարեր եւ արձանագրութիւններ (Արարատ 1887, էջ 217)։ Նոյն

---

[9] Վերջին շրջաններուն անուանի կուսաստան էր Ս. Ստեփանոսի վանքը (Թիֆլիս) որուն միաբանները յաւ գործունէութիւն կ'ունենան (Արեւելք 1894, թիւ 3119, 3121 եւ Ծոցիկեան, Արարատ–Կովկաս, Բ. էջ 274—275, եւն)։

դիւղի արեւմտեան–հարաւային կողմը կանգնուած է Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ մատուռը — սովորաբար յորջորջուած Ս. ԿԻՐԱԿԻ, որ նմանապէս իր շուրջը ունի մեռեալներու հանգստարաններ (տես, էջ 214 եւ Ազգր. եւն եւն: (Ազգր. Հանդ. 1901, էջ 414):

Հաղբատ ունեցած է շատ մը սրբութիւններ, որոնցմէ անուանի է Ս. Նշանի մատուռը (Համմտ. Ազգր. Հանդ. 1901, Է—Ը. էջ 418—419. պէտք եմ շեշտել որ այս ամսագրէն մեծ մասով քաղած եմ Հաղբատի նկարագրութիւնը):

Աստուածեան եւ բարեգործութիւններ ընելու մէջ իրարու մրցակից թագաւորներ եւ իշխաններ իրենց բարեսէր ու կրօնասէր տիկիններով, եպիսկոպոսներ եւ վարդապետներ իրենց հպատակներով եւ հաւատացեալներով Հաղբատը հիմնեցին, զարդարեցին եւ նախանձելի վիճակի հասուցին: Սակայն քաղաքական անցուդարձեր եւ աննպաստ պարագաներ, նաեւ անպարտաճանաչ անձեր պատճառ եղան, որ շէնքերը վնասուին, քանդուին, անշքանան եւ աւայելի դրութեան մատնուին: «Արձագանք» կը գրէր «Հաղբատի հռչակաւոր վանքը իր ներկայ քայքայման մօտեցած դրութեամբ այցելուի արտասուքն է շարժում» (1884, էջ 649): Բայց պէտք է ըսել որ խնամող եւ նորոգող ձեռքեր անպակաս եղան են:

Բարեբախտօրէն Սովետական կառավարութեան կազմած ճարտարապետական Յուշարձանների Կոմիտէն նկատողութեան առած է նաեւ Հաղբատի Աղբիւրը, Ս. Նշան եկեղեցին, Ժամատունը, Համազասպը, Ս. Գրիգոր եւ Ս. Աստուածածին եկեղեցիները, Գրատունն ու Սեղանատունը եւ ջանացած է զանոնք վերանորոգել եւ կործանումէ փրկել (Էջմիածին 1953, Թ. ԺԱ.—ԺԲ., էջ 52[10]) :

«Էջմիածին» Ամսագրի համաձայն՝ Հաղբատի Աղբիւրը՝ 1258ին, Ս. Նշան եկեղեցին՝ Ժ. դարուն, Ժամատունը՝ 1161ին, եւ 1201ին, Մատենադարանը՝ ԺԳ. դարուն եւ Սեղանատունը՝ միեւնոյն դարուն, Համազասպը՝ 1257ին, Ս. Գրիգոր՝ 1025ին եւ Ս. Աստուածածին՝ ԺԲ. դարուն շինուած են. (անդ, 1953, էջ 52) : Իսկ Լալայեանց անոնց շինութեան պատկերը կը դնէ՝ Աւագ Ս. Նշան՝ 967, Ժամատուն՝ 1185, Ս. Գրիգոր, Ս. Աստուածածին եւ Համազասպ՝ 1257, Նշխարախուց կամ Մատենադարան՝ 1260, Սեղանատուն եւ Կուսանաց անապատ՝ 1279, Զղրաշէն՝ 1195, Ս. Կիրակի 1188 Թուականներուն (Ազգր. Հանդ. 1901, Է—Ը, էջ 396) :

---

[10] Յայսմաւուրքի համեմատ Հաղբատի ծեր միաբան Յովհաննէս վարդապետը Շահաբասի օրով Ասպահան կ՚անցնի ծպտուած եւ Պարսիկներէն հոն գերի տարուած Ս. Նշանը կ՚առնէ եւ շատ մը դժուարութիւններու դիմագրաւելով զայն անկորուստ կը հասցնէ իր երբեմնի տեղը (Ս. Նշանի մասին հմմտ. Նոր Դար 1891, Թ. 49—50) :

Հաղբատի շէնքերու նկարագրութիւնը եւ նմանապէս պատմութիւնը շատ ստէպ գրչի նիւթ եղած են եւ պէտք էին ըլլալ իրենց կարեւորութեան համար: Անտեսելով մատենագիրներու եւ հին գրողներու հատ-ընտիր տեղեկութիւններն ու նկարագրու-թիւնները հոս կը բաւականանամ յիշելով վերջին շրջաններու այն գրութիւնները, որոնք թերթերու եւ գրքերու մէջ լոյս տեսած են: (Անոնցմէ քանի մը հատը Բէյրութի մէջ հակառակ ջանքերուս աչքի առջեւ չեմ կըր-ցած ունենալ եւ ոմանցմէ ալ օգտուած եմ զանոնք նմանատիպ լուսանկարել տալով):

Ջալալեան Ս., Ճանապարհորդութիւն ի Մեծն Հայաստան, Ա., Տփխիս 1842; էջ 58:

Ինճիճեան Հ. Ղ., Նոր Հայաստան, Վե-նետիկ 1806, էջ 279:

Երզնկեանց Ո., Արարատ, Ամսագիր, 1886, էջ 444, 498, 518, 1887, էջ 23, 68, 168, 213, 256, 300 եւ 339 (նոյնը Հնախօսա-կան տեղագրութիւն Հաղբատայ, Վաղարշա-պատ 1886):

Լոյս, Նոր Նախիջեւան 1911, Թ. 99, 1912, Թ. 40, 41 եւ 49:

Արձագանք 1884, էջ 627, 1888, էջ 517, 522, 570:

Լումայ 1900, էջ 247. 1901 (Բ.) էջ 165 եւ 442 եւ 1898 (Ա.) 261:

*Հովիւ* 1911, *Թ.* 35 (*էջ* 557) *եւ* 1914 *Թ.* 9 (138):

*Նոր Դար* 1901, *Թ.* 49—50:

*Մեղու* 1860, *Թ.* 10:

*Ճռաքաղ*, *Բ.* *էջ* 121:

*Ազգագրական Հանդէս* 1901, *Է—Ը.*, *էջ* 272:

*Արարատ* 1901, *էջ* 271 *եւ* 337:

*Յովսէփեան Գ. արքեպ., Նիւթեր եւ ուսումնասիրութիւններ հայ արուեստի եւ մշակոյթի պատմութեան, Պրակ Ա., Երուսաղէմ* 1935, *էջ* 40:

*Տէր Մովսէսեան Մեսրոպ Մագիստրոս արքեպ., Հայկական երեք մեծ վանքերի Տաթեւի, Հաղարծնի եւ Դադի եկեղեցիները եւ վանական շինութիւնները, Երուսաղէմ* 1938:

*Կռունկ Հայոց աշխարհին, ամսագիր,* 1862 (*Գ*) *էջ* 305 *կամ Թ.* 518 *Ձեռագիր Վիեննա. Մխիթարեան մատենադարանի* (*Հմմտ. Տաշեան, Մայր Ցուց.*, *էջ* 984):

*Յովհաննէս Ղրիմեցւոյ Պատմութիւն հռչակաւոր վանից Հաղբատայ Ս. Նշանի կամ Թ.* 239 *Ձեռագիր Ս. Ամենափրկչեան վանքի Մատենադարանի ի Նոր Ջուղա*:

*Մելիքսեթ Բէկ Լ., Վարդապետք Հայոց հիւսիսային կողման, Թիֆլիս* 1928:

*Մելիքսեթ Բէկ Լ., Վրաց աղբիւրներ*

Հայաստանի եւ Հայերի մասին (Ա․, Բ․, Գ․ հատ․) եւն եւն ։

Кавказкая Старита 1872-3 № 1, 2, (Еризовъ).

M. Brossetի երկերը, մանաւանդ անոր Description… (Համմտ. Հանդ. Ամս. 1957, էջ 419—420) ։

---

# ՀԱՂԲԱՏԻ ԱՌԱՋՆՈՐԴՆԵՐԸ[1]

Հաղբատի առաջնորդներու շարքն ու պատմութիւնը կրնանք սկսիլ իւրացնելով Յովհաննէս Ղրիմեցիի խօսքերը «Առ լրումն բովանդակութեան կարգի աթոռոյ համօրէն առաջնորդաց Հաղբատայ, որք միանգամ ի սկզբանէ եւ այսր յաջորդեցին յայս աթոռ, յոլովս տաժանեցաք, բայց յանհնարից եղեւ գիւտ ամենայնին, ուստի ի չարակարգութեան սատ նոցին, ի միջոցս ինչ ժամանակաց, մանաւանդ ի չորեքտասան եւ ի հնգետասան դարու պակասին ոմանք յառաջնորդաց, որք թերեւս յայս ժամանակս եկեացեն ի յայտ ի հին պատմագրաց, որք ոչ եկին ի ձեռս մինչեւ ցայսօր կամ յարձանագրաց այլոց վանորէից կողմանց եւ կամ մանաւանդ ի մատենէն անտի յիշատակարանաց յորժամ ի յայտ եկեսցէ ուրեք (շատ կարեւոր է այս տեղեկութիւնը, որ կը յայտնէ ու կը վկայէ թէ Հաղբատ ունեցած է իր դաւադանգիրքը), եւս եւ յարձանագրոց խաչարձանաց եւ մա-

---

[1] Հաղբատի հիմնարկութեան պատմութիւնը եւ քանի մը կարեւոր գիտելիքներ նկատի առած եմ Սանահինի մասին գրած ատենս (հմմտ. վերը էջ 85)։

հարձանաց ոմանց եղելոց ի կայուածս Հաղբատայ աստ եւ անդ յանկոխ վայրս բազմախիտ անտառաց խորաձորոց եւ լերանց եւ մասնաւորապէս առ աւերակօք կամ առ տեղեօք հնագոյն խրճթաց եւ ճգնարանաց նախնի միանձանց Հաղբատայ, որոց ամենայնի զհետ կրթիլ անձամբ եւ զննել աչօք չյաջողեցաւ մեզ» (Թ. 239, էջ 105):

Կարելի է ըսել թէ Հաղբատի առաջնորդները կամ վանահայրերու գաւազանագիրքը եւ անոնց պատմութիւնը կը պարտինք Յովհաննէս Ղրիմեցիի, որ ջանացած է հնարաւորութեան սահմանին մէջ կատարեալ գործ մը երեւան հանել. այդ յաջողութեամբ պիտի պսակուէր մասամբ, եթէ իր ակնարկած Գաւազանագիրք—մատեանը աչքին առջեւ ունենալ կարենար: Անոր գրութենէն մեծապէս օգտուած են եւ պակասներ լրացնել ու սխալներ սրբագրել ջանացած են Երզնկեան (Արարատ 1888, էջ 262—265 եւ Brosset, (Description . . . էջ 71):

Հաղբատի առաջին առաջնորդը կը ներկայանայ Սիմէոն, որ գիտէ խոհեմօրէն կառավարել բազմաթիւ միաբաններ. «Յաւուրս սորա շինեցան կրօնաւորանոցք ճգնաւորականաց տեղիք Սեաւորդեաց աշխարհին հասարակեացք, միաբանականք ըստ յառաջասացեալ կանոնին սահմանադրութեան սրբոյն Բարսղի, որոց երկոցունց տեղեացն անուանք Հաղբատ եւ Սանահին հանդէպ մի-

մեանց, միակրօնք ի տան Աստուծոյ արանց Ծ. ոց: Եւ առաջնորդ Սանահնի՝ Յովհաննէս Գիտնական այրն Աստուծոյ, իսկ Հաղբատայ Սիմէոն ճգնազգեաց ծառայն Քրիստոսի» (Աստղիկ Պատմ. էջ 181): Նոյնը կը հաստատէ Յովհ. Ղրիմեցի աւելի ընդլայնելով «Բայց զի Խոսրովանոյշ Թագուհին արդէն նախ քան զաւարտումն շինութեան ուխտիս իրր տասն ամօք յառաջ վախճանեալ էր, որպէս երեւի յարձանագիրս անտի սորին մենաստանի, պարտ է դնել, թէ նա անդէն ի կենդանութեան իւրում որոշեաց լինել առաջնորդ Հաղբատայ զՍիմէոն, վասն որոյ եւ ի սկզբանէ հիմնարկութեան մինչեւ ցաւարտումն շինութեան տաճարին եղեւ նա ինքն Սիմէոն անմիջական հոգաբարձու եւ աշխատակիր ի շինութեան անդ, որպէս ցուցանէ ինքն յարձանագրի իւրում յասելն՝ Ի ՆԽ Թուականիս (991) Սիմեւոն հայր եւ Տիրանուն երէց շինեցաք եկեղեցիս Ամբատայ եւ Գուրգէնայ փրկութեան: Եւ այսպէս Սիմէոն եղեւ ոչ միայն առաջին վանահայր կամ առաջնորդ ուխտիս, այլ եւ անընդմիջական պատճառ շինութեան նոցա ըստ հոգաբարձութեան կամ ըստ վերակացութեան» (Թ. 239 էջ 10): Ուստի եթէ խորհինք թէ Սիմէոն հիմնակութեան տարիէն սկսած՝ առաջնորդութիւն ըրած ըլլայ, այն ատեն քառասուն տարւոյ առաջնորդութիւն մը պիտի ընդունինք, իսկ եթէ 991էն սկսած՝ այն ատեն շատ աւելի

նուազ: Վերջին անգամ կը յիշուի
1005 Թուակիր արձանագրութեան մը մէջ[2]:

Կարծիք անձ է Սիմէոն որ կրնայ առաջ-
նորդել, զարդացնել ու շէնցնել: Անոր աջա-
կից եղած է Տիրանուն, որուն մասին
զժբախտաբար սակաւ տեղեկութիւն ունինք:

ՏԻՐԱՆՈՒՆ 996ին Սիմէոնի յաջորդ կը
նշանակուի «Արարատ» ամսագրին մէջ (1901,
էջ 279), սակայն չէ ըսուած թէ ինչ հիման
ու տուեալի վրայ: Մինչ Յովհաննէս Ղրբի-
մեցի կը գրէ «Յետ Սիմէոնի անմիջական յա-
ջորդութեամբ երեւի նստեալ առաջնորդ ուխ-
տիս ՅՈՎՍԷՓ վանահայր» (Թ. 239 էջ 106):
Եւ այս է ճիշդը, զի 1008ին գրուած արձանա-
գրութեան մը մէջ յստակ կայ «Ի ՆԾԷ ի Թա-
գաւորութեան Դաւթի եւ ի հայրութեան
Յովսեփայ եւ Մեսրոպ կանգնեցի զսուրբ
Նշանս յուխտիս Հաղբատայ» (Թ. 239 էջ 106
եւ Արարատ 1886, էջ 522):

Անոր յաջորդներու անունները մեզի չեն
հասած: Տասնեակ տարիներ յետոյ Երզնկեա-
նի համեմատ իբրեւ կը յաջորդեն
1068 ՍԱՐԳԻՍ Ա.

---

[2] Առ տրեւմտեան որմով մատրան Ս. Սիոնի «ի ՆԾԴ (1005) Թուիս ի հայրութեան Սիմէոնի եւ Աթանագինէ եւ Փիլաքսոն կանգնեցաք զսուրբ խաչս ի փրկութիւն հոգւոց մերոց եւ ամենայն երկրպագուաց իւրոց եւ ուղղականութիւն Թագաւորիս մերոյ Դաւթի» (Թ. 239, էջ 106, Brosset, էջ 42, Արարատ 1887, էջ 217):

1086 ՍԱՐԳԻՍ Բ. արքեպիսկոպոս[3]

ՅՈՎՍԷՓ արքեպիսկոպոս, Դաւիթ Թագաւորի ժամանակ,

ԲԱՐՍԵՂ արքեպիսկոպոս, Թամար Թագուհիի կառավարութեան շրջանին,

ԳԷՈՐԳ արքեպիսկոպոս, Ներսէս Շնորհալիի կաթողիկոսութեան ատեն,

ԳՐԻԳՈՐ ՏՈՒՏԷՈՐԴԻ, Գրիգոր Տղայի հայրապետութեան շրջանին,

Եւ այս ՅՈՎՀԱՆՆԷՍ ՍԱՐԿԱՒԱԳ եւ հուսկ յետոյ ԴԱՒԻԹ ՔՈԲԱՅՐԵՑԻ եւ անկէ վերջ ՅՈՎՀԱՆՆԷՍ Ա., Քուէրորդի՝ Զաքարէ եւ Իւանէ իշխաններու (Արարատ 1887, էջ 263)։

Այս անուանացանկը սրբագրութեան կը կարօտի։

Թէ 1068ին Հաղբատ ունեցած է Սարգիս անուն առաջնորդ մը եւ այս թէ անոր յաջորդած ըլլայ ուրիշ Սարգիս մը, այդ չենք կրնար հաստատել, բայց գիտենք որ 1082 Հաղբատ կ'ունենայ Սարգիս արքեպիսկոպոս վանահայր մը։ Մխիթար Անեցի (էջ 106) եւ Կիրակոս Գանձակեցի (էջ 56) կը հաղորդեն թէ Հաղբատի մէջ 1082ին տեղի կ'ունենայ ժողով մը եւ հոն Անիի Բարսեղ եպիսկոպոսը կաթողիկոս կ'ընտրուի՝ յարմար դատուելով։ Հայրապետական ձեռնադրութիւնն ալ կը կատարուի նոյն վանքին մէջ եւ կարելի է

---

[3] 1068ին յիշուած Սարգիսը եւ 1082ին եպիսկոպոսացած Սարգիսը, որ մինչեւ 1089 սոյն կը յիշուի, գուցէ միեւնոյն անձն ըլլան։

*մատծել՝ թէ այդ օրը որքան չատ ժողովուրդ հաւաքուած էր հոն, ուր Կիւրիկէ Թագաւորն ես իր արքունիքով փութացած էր: Քանի մը օր յետոյ ուրիշ ճոխ հանդէս մը տեղի կու–նենայ եւ այդ՝ Հաղբատացիներու համար աւելի հաճելի է, զի Կիւրիկէ Թագաւորը իր դրան երէցը Սարգիս Հաղբատի եպիսկոպոս ձեռնադրել կու տայ «Եւ յայնըմ հետէ եղեւ աթոռ եպիսկոպոսի» (Կիր. էջ 56): Յովհ. Ղրիմեցին կը դրէ–ամփոփելով պատմագիր–ներու տեղեկութիւնները–. «Նոյն բնիկ Թե–մորայք նորա եւ սպա սկսան ընդարձակել ի ժամանակէ անտի, յորում այս մենաստան եղեւ արքեպիսկոպոսութիւն յաւուրս կաթո–ղիկոսութեան Գրիգորի Վկայասէրի եւ Թա–գաւորութեան Կիւրիկեայ արքայի Բագրա–տունեայ, որ նստէր ի Լօռի: Քանզի նորին Վկայասիրի հաւանութեամբ իբրեւ ձեռնա–գրեցաւ աստէն ի Հաղբատ քեռորդի նորա Բարսեղ արքեպիսկոպոս Անի քաղաքի ի Յով–սէփայ կամ ըստ այլոց ի Ստեփաննոսէ Կա–թուղիկոսէ Աղուանից կաթուղիկոս արեւել–եան Հայոց, յամի Տեառն 1082 եւ Հայոց ՇԼԱ, նոյն երկու կաթուղիկոսունք սպա ի նմին ժամանակի հրամանաւ վերջիչատակեալ*

---

[4] *«Ի ՇԼԵ Թուականիս (1086) ես Տէր Սարգիս տառաջնորդ սուրբ ուխտիս Հաղբատայ չինեցի գՋրա–ղացս եւ արարի ազատաղայ, արկի եւ գայգիս, տնկեցի եւ գդրախտս զանազան մրգաբերաւք ի փառս սրբոյ Նշանին եւ ի վայելումս տանն Հաղբատայ...» (Թ. 239, էջ 157, Արարատ 1887, էջ 219:*

Կիւրիկէ արքայի զՍարգիս աւագ երէց արքունի դրան նորին Կիւրկեայ ձեռնադրեն միանգամայն արքեպիսկոպոս Հաղբատայ եւ հաստատեալ զայս վանք՝ լինել աթոռ մեծ, ընծայեն սմա թեմս ընդարձակս ի վիճակաց իւրեանց երկաքանչիւր կաթուղիկոսունք» (Թ. 239 էջ 99 հմմտ. Մովսէսեան Հ. Ղ. Լօռիի Կիւրիկեան թագաւորներու պատմութիւնը էջ 53—54)։ Սարգիս կ՚ըլլայ ձեռներէց եւ ժրաջան առաջնորդ եւ կը ստեղծէ հասութաբեր աղբիւրներ։ Հետամուտ կ՚ըլլայ միաբաններու բարօրութեան եւ հանդարտութեան (հմմտ. Թ. 239 էջ 107, Արարատ 1886, էջ 489 1887, էջ 219. Brosset, էջ 43)։

Հասած է մեր ձեռքը «Մեծամեծ կայսերաց թուղթ, որ կան հանդուցեալ ի Հաղբատ լուսահոգիքն այնք» (Լումայ 1898, Ա. էջ 260—264)։

Անոր վերջաւորութենէն սկսինք եւ սկիզբը դանք։ «Նմանապէս հաստատ պահօղքն եւ կատարողքն սորին եղիցին օրհնեալք յԱստուծոյ ... յաւիտեանս յաւիտենից ամէն։ Գրեցաւ ի թուին Հայոց հինգ հարիւր եւ երկու տասանին։» Որ է ըսել 1063ին։ Իսկ սկիզբն է «Ի ժամանակս թագաւորացն Յունաց Միքայէլի, Վրաց Բագրատունեան Բագարատին եւ որդւոյ նորին Գէորգեայ եւ Հայոց Գագկայ եւ որդւոյ նորին Սմբատայ եւ որդւոյ Աշոտեան Բագրատունւոյ եւ Ազուանից Կիւրիկէի եւ որդւոյ նորին Ոնորիոսի եւ

Ներքէսի որ միաբանութեամբ եւ սիրով պատրաստեցան երթալ ի Պարս ի սպաս Մէլիք շահ մեծ թագաւորին ...» (որ գահ բարձրանալէ վերջ կը ցանկայ քրիստոնեաներու հետ լաւ յարաբերութիւններ մշակել եւ իր հաւատարիմ պաշտօնեաներէն Արգուլ դեսպան կ'առաքէ «առ ի գնալ ի դուռն մեծ թագաւորին») : Այս՝ տեղի ունեցած պիտի ըլլայ ուրեմն 1063էն յառաջ, մինչ իրականին հաւանօրէն կատարուած ըլլալու է 1089ին : Սակայն կանգ առնենք առաջին թուականէն յառաջ.

Արդ Բիւզանդիոնի գահին վրայ կը գտնենք Միքայէլ Զ. 1056—1057, Իսահակ Ա. 1057—1059, Կոստանդին Ժ. 1059—1067, Ռոմանոս Դ 1067—1071 եւ Միքայէլ Է 1071—1078 (եւ յետոյ շատ ուշ՝ Միքայէլ Ը (1261—1281) : Հետեւաբար երկու Միքայէլներն ալ չեն կրնար նկատի առնուիլ, զի մէկը 1063էն յառաջ եւ միւսը 1089 էն յառաջ մեռած են : Վրացիներու Բագարատ թագաւորը եւ իր որդին (յոյժ հետաքրքրական է որդիներու յիշատակութիւնը, գուցէ շեշտելու համար թուղթին վաւերականութիւնը եւ նմանապէս յաջորդներու եւ ժառանգներու համամտութիւնը) Գէորգ ժամանակակից են. (մէկը՝ կը թագաւորէ 1027—1072 եւ միւսը՝ 1072—1088, նոյն իսկ թերեւս 1089) : Յետոյ գրուած են Գագիկ եւ անոր որդին Սմբատ թագաւորները : Բոլորովին սխալ է եթէ հոս ակնար-

կել ուղուած ըլլան Գագիկ Ա. (989—1020) եւ Յովհաննէս Սմբատ (1020—1040)։ Աւելցուցէք նաեւ Գագիկ Բ. Բագրատունի դժբախտ դահակալը, ուստի հարկ է մտածել որ հոս ակնարկուած Գագիկ Թագաւորը Կարուց դահակալն է (1029—1064) որ ունեցած կ'ըլլայ Սմբատ անուն որդի մը։ Իսկ Ազուանից Կիւրիկէ Թագաւորն է՝ Կիւրիկէ Ա. որ 1048—1089 կ'իշխէ, սակայն թէ սա՝ Ոնորիոս եւ Ներսէս անուն որդիներ ունեցած ըլլայ՝ այդ կը վկայէ այս Թուղթը, մինչ անոր որդիներ են Դաւիթ Թագաւոր Մածնաբերդի, Աբաս Թագաւոր Տաւուշի եւ Ստեփանոս եպիսկոպոս (Հմմտ. Մովսէսեան Հ. Ղ. Լոռիի Կիւրիկեան Թագաւորներու պատմութիւնը, էջ 49—62)։

Արդ այս Թագաւորները համամիտ համաշունչ կը ցանկան Խորասանի Մելիք Շահ սուլթանին այցելել եւ անոր բարեկամութիւնը շահիլ (հմմտ. Ս. Անեցի, էջ 118, Վարդան, էջ 169) «Եւ այնու միաբանութեամբ եկին ի դուռն սրբոյ եւ մեծի վանիցն Հաղբատու ի աղաչել զԱստուած եւ զսուրբ Նշանն տէրունական՝ թերեւս օգնեսցէ եւ յաջողեսցէ զճանապարհս նոցին մաղթանօք արքեպիսկոպոսին Հաղբատայ եւ խոստացան արեամբ ներկեալ սուրբ Նշանին Քրիստոսի խոստմունս եւ ընծայս մեծամեծս ...» (անդ էջ 261)։ Յաջողութեամբ կը պսակուի անոնց այցը եւ անոնք գոհ սրտով կը վերադառնան

Հաղբատ, ուր կը գտնեն «Յայնմ ժամու եւ երկու կաթողիկոսք Հայոց Բարսեղ եւ Ադուանից Ստեփաննոս որք եկեալ էին ի Թաղումն հանդուցեալ արքեպիսկոպոսին Հաղբատայ ... եւ ընտրեցին անդ քահանայ մին ի յառաջադրութեան տանն Հաղբատայ, Գագիկ արքայի սուրբ եւ փիլիսոփայ խաղաղ եւ ամենայն առաքինութեամբ զարդարեալ Բարսեղ անուն եւ հրամանաւ երկու Թագաւորաց կաթողիկոսքն ձեռնադրեցին զքահանայն ի յառաջնորդութիւն սրբոց վանիցն Հաղբատու» (անդ էջ 262) : Ուրեմն Բարսեղ կաթողիկոսը համանուն Բարսեղ քահանայ մը Հաղբատի արքեպիսկոպոս առաջնորդ կը ձեռնադրէ, մինչ Կիւրիկէի դրան երէցը Սարգիս է, որ այդ պաշտօնին կը կոչուի եւ ոչ թէ Գագիկի սուրբ քահանան Բարսեղ :

Այս վերջին պարագան, Թագաւորներու անունները եւ անոնց դահակալութեանց թուականները եւ ուրիշ տուեալներ կը ցուցնեն թէ «Մեծամեծ կայսերաց» այս թուղթը անվաւեր է եւ խմբագրուած է Հաղբատի կալուածներն ընդլայնելու եւ զանոնք թշնամիներու դէմ պաշտպանելու համար :

Կիրակոս Գանձակեցի Սարգիսի յաջորդ կը նշանակէ Գէորգ «Եւ յետ Սարգսի Գէորգ» (Պատմ. էջ 56), զոր կը մեկնեմ Սարգիսի աշքի զարնող, անուն ունեցող յաջորդներէն՝ Գէորգ : Կու տամ այս մեկնութիւնը, զի Սարգիսի մահէն յետոյ (հաւանօրէն հանդիպած

1089 էն քանի մը տարի վերջ) մինչեւ Գէորգ երկարաձիգ ժամանակամիջոց կայ, ինչպէս Յովհ. Դրիմեցի ալ ուշադիր եղած է, երբ կը գրէ «Կիրակոս ցուցանէ զատ (Գէորգ) լինել յաջորդ Սարգսի յասելն Եւ յետ Սարգսի եղեւ եպիսկոպոս Գէորգ: Բայց յայտ է թէ ի մէջ սորա եւ նորա է միջոց երկարաձիգ» (Թ. 239 էջ 108): Եւ ինքը Յովհ. Դրիմեցի կը դնէ յաջորդ Սարգսի Յովհաննէս Ա. (անդ. էջ 107), որուն համար կ'արտայայտուի «Երեւի յաջորդեալ զառաջնորդութիւն ուխտիս զկնի Սարգսի, բայց թէ ե՞րբ, անյայտ է. յիշատակի միայն ի տապանագրի իւրում առ եկեղեցեաւն Տիրամօր այսպէս՝ Այս է հանգիստ Տեառըն Յոհաննիսի: Զսա համարիմ այն յորոյ աւուրս Դաւիթ արքայ Վրաց ընծայեաց ուխտիս գեօղ մի եւ այգիս ըստ արձանագրին, զոր եդաք ի Գլ. Ե. յորում արձանագրի անուն առաջնորդի գլխովին եղծեալ գոլով, այսչափ ինչ գրուած զնմանէ երեւի ամբողջ Գրեցաւ գիրս յարքեպիսկոպոսութեանն առաջնորդի Հաղբատայ, որ է եղբայր Գրիգորի ի Թուին ՇՀ... այսչափ: Եւ ըստ այսմ համարի սա ինքն Յովհաննէս յաջորդ Սարգսի եւ միանգամայն նախորդ Գէորգայ» (անդ էջ 107—108): Հարկ է դիտել որ վերոյիշեալ դամբանագիրը կրնայ Յովհաննէս եպիսկոպոսի մը ըլլալ որ Հաղբատի առաջնորդ չէ եղած եւ կամ նոյն իսկ եթէ առաջնորդի մը՝ կրնայ նաեւ յետին շրջանի մը առաջնորդի մըն ալ ըլլալ

եւ դարձեալ չէ կարելի հաւաստեաւ հաստատել որ երկրորդ արձանագրութեան մէջ եղծուած անունը՝ Յովհաննէս ըլլայ, զի Գրիգոր կրնայ ուրիշ անունով եղբայր մը եւս ունեցած ըլլալ:

Յովհաննէսով կարելի չէ Սարգիսէ մինչեւ Գէորգ երկարող ժամանակը լեցնել: «Արարատ»ի մէջ (հմմտ. վերը), ինչպէս յիցինք, կը տրուի Յովսէփի արքեպիսկոպոսի մը անունը Սարգիսէ վերջ, բայց չէ նշանակուած թէ ի՞նչ հիման վրայ: Նաեւ այժմէն իսկ ըսենք որ՝ Յովհ. Սարկաւագ եւ Դաւիթ Քոբայրեցի Հաղբատի առաջնորդ չեն եղած: Այո՛ եղած են աչքառու դէմքեր, սակայն այդ չ՚ենթադրեր որ առաջնորդ ալ եղած ըլլան: Յովհաննէս Սարկաւագի մասին արդէն այլուր պիտի խօսիմ:

Անցնինք արդ Գէորգի, որուն համար կ՚ըսէ Յովհաննէս Ղրիմեցին «Երեւելին իմաստութեամբ եւ սրբութեամբ, նստի առաջնորդ Հաղբատայ, բայց թէ ե՞րբ՝ անյայտ է յարձանագրաց, նաեւ ի պատմութեանց...: Սոյն այս Գէորգ առաջնորդ էր ժամանակից Շնորհալւոյն Ներսէսի, ընդ որում ունելով ընտանութիւն մեծ, թղթակցութիւնք յոլով ի միջի առ միմեանս եղեն չուրջ զթուականաւս ՈԺԵ եւ զամաւ Փրկչին 1166: Յիշատակի ի պատմագիրս արարեալ սորին Գէորգեայ եւ զմեկնութիւն Եսայեայ մարգարէութեան ի թուին ՈԽԲ յամի Տե–

*առն 1173, ըստ որոյ յայտնի ամք առաջնորդութեան նորա հաշուին իբր եօթն, այլ սկիզբն եւ վախճան առաջնորդութեան անյայտ»* (*անդ էջ* 108—109) : *Ներսէս Շնորհալիի հետ աւելի կանուխ թղթակցութեան մէջ եղած է* (*Հմմտ. Կիր. էջ* 56, *Տեառն Ներսէսի Շնորհալւոյ Թուղթք, Վենետիկ* 1873 *էջ* 273—277 *եւ Յովսէփեան Նիւթեր եւ Ուսումնասիրութիւններ, Պրակ Ա. էջ* 66) : *Անոր դամբանագիրը շատ պարզ է «Այս է հանգիստ Տեառն Գեորգա* (*եթէ ուրիշ Գէորգ մը չէ ակնարկուածը*) :

*Գէորգի*[5] *յաջորդութեան կը կոչուի* Բարսեղ, *որ «Գեղեցիկ է տեսլեամբ» եւ Թամար Թագուհին «Մեծապէս պատուեաց զնա վասն վայելչութեան գեղոյ նորա եւ դարձեալ, զի եղբարք նորա գործակալք էին տանն արքունի»* (*Կիր. էջ* 56) : *Ուքանանց տոհմէն է եւ այս խնամութեամբ կապուած է Կիւրիկեան տան հետ : Իր օրով «Աւարտեցան Մարիամ Բաղրատունու իւր նախնեաց եւ ազգա–*

---

[5] *Գէորգ կը հետաքրքրուի Ս. Սարգիսի վկայաբանութեամբ, որուն վերջաւորութեան կայ՝ Թարգմանեցաւ ճառս յԱսորւոց ի լեզու մեր... ի Հաղբատայ...» Դարձեալ կայ՝ «Թուղթ առ ի Ներսիսէ եղբաւրէ Տեառն Գրիգորիսի Հայոց կաթողիկոսի: առաջնորդի սուրբ ուխտին Հաղբատայ, յաղագս հե-Պատասխանի Թղթոյն Գէորգայ արեւելեան եպիսկոպոսի առաջնորդի սուրբ ուխտին Հաղբատայ, յաղագս հետազաւտելոյ առ ի սուրբ գրութիւն զպատմութիւն երանելոյ նահատակին սրբոյն Սարգսի զաւրավարին մեծի»* (*Յովսէփեան, Յիշատ. Ձեռ. Ա. էջ* 371—372) :

*կանների գերեզմանների վերայ կանգնած արձանագրութիւնը ՈԼԴ — 1185 — թուին եւ այն երեք առաջնակարգ գեղեցկութեամբ խաչերը, որ հաստատուած են այդ շէնքի արեւելեան պատին» (Յովսէփեան, անդ էջ 66)։*

*Հետեւեալ յիշատակագրութեան մէջ Բարսեղի մասին կան կարեւոր տեղեկութիւններ՝*

*...Յոյժ ըղձիւ եւ յաւէտ տարփմամբ անձկոյ ի վաղուց ժամանակաց տաչօրեալ այսմ աստուածահրաշ վարդապետութեան սիրով սրբոյն Բարսղի, սուրբ ուխտս Հաղբատայ ... ոչ գրեալ եւ ոչ ստացեալ ումեք զայս գիրս եւ ամենափարթամ գանձարանս այսմ ուխտի ոչ ունէր զսա, որոյ թերութիւն զիւրն խնդրէր լրումն, որ պահիւր համանուանս իւրոյ Տեառն Բարսղի արհիեպիսկոպոսի աստուածարնակ այսմ սրբարանիս ... որ եկեալ ի գաւառէն Խաչենոյ ... յաջորդեալ զաթոռ Տեառն Գէորգեայ ամենայնիւ առաւելեալ քան զառաջինսն ի փոյթ շինութեան սրբոյ ուխտիս։ Քանզի թէպէտ եւ էր ի հարց եւ ի հաւուց յազատաց եւ եւս առաւել զոյր արժանաւոր մեծի գովութեան վասն հոգւոյ անարատութեան եւ վարուց մաքրութեան, որով եւ կոչեցաւ իսկ յայս յաթոռ ըստ վկայելոյ թագաւորիս եւ համայն ազատաց, այլ եւ ճգնաւորական զաստ կրօնաւորաց եւ յամենեցունց եղեւ պատուեալ ըստ արժանւոյն։ Նւս առաւել ի մեծ Ամիր*

սպասալարէն յԻւանէէ եւ ի զուգակցէ նորին ի բարեսէր Թագուհւոյն Ռուսուդանայ ․․ որ ցուցանէր զգութ հարց իւրոց եւ նորոգէր զիւրոյ նախնեացն սէր առ ամենեսին առ հեռաւոր եւ մերձաւոր ուխտս սուրբս։ Քանզի ամենայն տեղի, որ ի նախնեացն սորա շինեալ էին, եւ նուազեալ յետոյ, ի սորա աւուրս պայծառանային եւ նորոգէին վերստին, եթէ ի մերում գաւառիս եւ եթէ ․․․ Քանզի յամենայն տեղի շինութեան ․․․ Իւանէի առն սորա հասանէր եւ սա ջանայր զի զիւր նախնեացն շինեալ եկեղեցիսն պայծառացուսցէ, որ եւ կամեցաւ զգերեզմանս առաջնոց Թագաւորացն որ ի սուրբ ուխտիս առնել պատուել եւ պայծառացուցանել, վասն որոյ եւ զսուրբ ուխտս ի ձեռն Տեառն Բարսղի եւ սա ելից ընդ այլ Թերութեանցս բազմաց եւ զայսմ գրոց պակասութիւն եւ հաստատեաց ի սուրբ տեղւոջս ․․․

Գրեցաւ գիրքս ի Թուականիս հայոց նորումս ՁԹ—89 (1172) ․․․ Գրեցաւ ձեռամբ Սարգսի նուաստ գրչի եւ ախմարի եւ յետին աշակերտի եկեղեցւոյ սրբոյ ուխտիս ․․․ Կազմեցաւ ձեռամբ Յովսէփայ վարդապետի եւ եդաւ յարկեղ սրբոյ Նշանիս[6] ․․․» (Հայա-

[6] Յիշատակագրութեան մը մէջ կայ՝ «Գրեցաւ աստուածային տառս ձեռամբ նուաստ գրչի Գրիգորոյ ի մայրաքաղաքիս Հաղբատայ յառաջնորդութեան Տեառն Բարսղի, զոր սկիզբն արարաք զարարածոց մեկնութիւն, զոր ոմն ի վարդապետաց եկեղեցւոյ համառօտեալ էր․․․» (Զարբհանէլեան, Մատենա-

պատում, Բ. էջ 382 եւ Զարբհանէլեան, Մատենադարան էջ 339 եւ Ցովսէփեան, Ցիշատ. Ձեռ. Ա. էջ 407 եւ Սարգիսեան, Մայր ցուց. Բ. էջ 1267—1268)։

Այս շրջաններուն տեղի կ'ունենան Գրիգոր Տղայի եւ Ներսէս Լամբրոնացւոյ թղթակցութիւնները։ Այս է՝ Գրիգոր Տղայ Հաղբատացիներու եւ Սանահնեցիներու յորդոր կը կարդայ եկեղեցական միութեան, իսկ Ներսէս Տարսոնի եպիսկոպոսը անոնց, մանաւանդ Գրիգոր Տուտէորդւոյն մասին աննպաստ կ'արտայայտուի (հմմտ. Գրիգորի Կաթողիկոսի Տղայ կոչեցելոյ Նամականի, Վենետիկ 1865 էջ, 5, 53 եւ 207)։

Ցովհ. Ղրիմեցւոյ համաձայն Բարսեղ մանակցած է Հռոմկլայի ժողովին — 1179ին եւ «Ի Թուղթն ժողովոյն առ Ցոյնս ստորագրեաց եւ ինքն զանուն իւր այսպէս՝ Բասիլիոս արքեպիսկոպոս Թագաւորանիստ քաղաքին Վրաց Տփխեաց» (Թ. 239 էջ 109)։

Նոյն հեղինակը Բարսեղի յաջորդ կը

---

դարան, էջ 344)։ — Ժամատան դրան ճակատին վրայ արձանագրուած է՝ «Ի ՈԼԸ Թուին (1189) յառաջնորդութեան Տեառն Բարսղի հարբեղբաւր իմոյ ես Դաւիթ որդի Արանին... շինեցի զխորանս եւ զեկեղեցիս ի վերայ հանգստարանի հաւր իմոյ եւ քվեր Բուրդուխանայ, արդ աղաչեմ սուրբ եղբայրութիւնդ որ զաղուհացին զշարաթն եւ զկիւրակէն... իմ մաւրն Վանէի դստեր Կիւրիկէի Թագաւորի եւ իմ քվերն Բուրդուխանայ եւ իմ հաւրն Արանին եւ յետոյ ինձ եւ իմ քվերն տանեն եւ ով խափանէ մեր խղճիս պարտական է առաջի Աստուծոյ» (Թ. 239, էջ 56, Արարատ 1886, էջ 523)։

նշանակէ ՅՈՎՀԱՆՆԷՍ Ա. (հմմտ. անդ էջ 109) բայց ըստ իրեն ՅՈՎՀԱՆՆԷՍ Բ. (հմմտ. վերը), մինչ Կիրակոս Գանձակեցին ԳՐԻԳՈՐԻՍ, «Որ է ազգական Զաքարիայի եւ Իւանէի, այս է Որդի Տուտեայ կամ Տուտէորդի Գրիգոր» (հմմտ. նաեւ Օրբէլեան, Պատմ. էջ 343)։ Երկու պատմագիրներն իրարու հետ հաշտեցնելը շատ դիւրին է. Բարսեղի անմիջական յաջորդը կ'ըլլայ Յովհաննէս Խաչենցի, բայց կարճ ժամանակէն կը թողու իր աթոռը աննպաստ պարագաներու պատճառով եւ կը քաշուի Խաչէնք եւ Գրիգոր անոր գահին վրայ կը բազմի։[7]

Տուտէորդին բուռն բնաւորութիւն ունի, թէեւ կարող անձ։ Եւ եթէ գիտնար խոհեմօրէն վարուիլ եւ զուսպ ըլլալ աւելի արդիւնաւոր գործունէութիւն պիտի ունենար եւ գնահատուէր։

Զաքարիա Սպասալար Լոռիի մէջ եկեղեցական ժողով մը կը գումարէ եւ անոր անդամներէն է նմանապէս «Գրիգորիս եպ. Հաղբատայ» (Կիր. էջ 84)։ Ժողովը փոթորկալից կ'ըլլայ. «Ոմանք հաւանեցան եւ կէսքն ոչ եւ այսպէս անմիաբան լեալք քակտեցան ի միմեանց։» Զաքարիա բանութեան կը դիմէ եւ կ'ուզէ որ՝ Հաղբատի մէջ ալ Ս. Կոյսի փոխման եւ Ս. Խաչի տօները պատկերը ինչ օր բերէ այդ օրը տօնուին եւ ոչ թէ Կիրակի։

---

[7] Մխիթար Գօշ կը յիշէ «...Յեպիսկոպոսութեան Տեառն Բարսղի հռչակաւոր ուխտիս Հաղբատայ» (Յովսէփեան, Յիշատ. Ձեռ. Ա., էջ 522)։

Մինաս եպիսկոպոսը Հաղբատ կ՚երթայ այդ որոշումը ընդունելի եւ պարտաւորիչ ընելու: Սակայն Գրիգորիս, որ համակարծիք չէ, անոր ճամբան կտրել կ՚ուզէ՝ մարդ ղրկելով եւ ասոնք «Հարին զնա բրօք եւ զպաշտօնեայս նորա եւ վէրս ի վերայ եդեալ թողին կիսամահ եւ զջորիսն որք էին ընդ նմա բեռնակիրք զահավէժ արարեալ սատակեցին» (Կիր. էջ 85): Կիսամահ եպիսկոպոսը կը տարուի Զաքարիայի մօտ եւ անիկա «Բարկացեալ յոյժ ի վերայ եպիսկոպոսին, այս է՝ Գրիգորի, հրամայեաց ըմբռնել զնա, մահուչափ սպառնացեալ ի վերայ նորա» (անդ էջ 85): Տուտէորդի փախուստի կը դիմէ. նախ՝ Գետիկ վանքը եւ ապա՝ Կեչառուս կ՚ապաւինի, բայց կը բռնուի հոն եւ Զաքարիա «Եդ զնա ի բանդի եւ զՅովհաննէս կացոյց եպիսկոպոս Հաղբատայ փոխանակ նորա, որ այն որ յառաջն եթող զաթոռն եւ գնաց ի Խաչէն»[8] (անդ էջ 85):

Յովհաննէս Ա. «այր հեզ եւ առաքինի, ազգական իշխանաց Խաչենոյ» (Կիր. էջ 56) այլ եւս անխռով ու ապահով կը բազմի Հաղ–

[8] Ներսէս Լամբրոնացիի Յովհաննու Մեկնութեան ետեւ հեղինակին յիշատակարանէն վերջ կայ «Ի յոլովից եղեալ զանխուլ այս տառ մեկնութեանս Յովհաննու աստուածաբան աւետարանչիս: Սակս որոյ մերոյին սրբազան վարդապետին Դաւթայ խնդրեալ զսա յորժամ գնաց առ տէր Գրիգոր կաթուղիկոսն Հայոց: Եւ զառեալն աւրինակ ի նմանէ տայ պարգեւ տեառն Գրիգորի Հաղբատայ առաջնորդին» (Զարբհանէլեան Հ. Գ. Մատենադարան, էջ 303):

բատի առաջնորդական եւ հայրապետական աթոռին վրայ եւ կը սկսի տալու շինարարական գնահատելի գործունէութեան: «Բագում գործս յիշատակի արժանիս գործեաց ի Հաղբատ, ընդ որս եւ զհռչակաւոր զաւիթս շինեաց եկեղեցւոյն որ հիացուցանէ զտեսողսն» (Կիր. էջ 85 Ցովսէփեան կը գրէ «Արդարեւ Հաղբատի այս մեծ եւ հոյակապ գաւիթը հայ ճարտարապետութեան ամենափառաւոր կոթողներից մէկն է, իսկ գաւիթների ճարտարապետութեան մէջ առաջինը» (Նիւթեր եւ ուսումնասիրութիւններ Ա. էջ 66, համմտ. Արարատ 1887, էջ 264):

«Ի ճակատ դրան արեւմտեան մեծ գաւթի կամ ժամատան աւագ տաճարին» կայ սա կարեւոր արձանագրութիւնը.

«Կամաւք եւ ողորմութեամբն Աստուծոյ Հաւր հզաւրի եւ Միածնի Բանին եւ ամենասուրբ Հոգոյն այս գիր արձանագրեցաւ կոտակ մշտնջենաւոր յամս ածելոյ Աստուծոյ թագաւորաց թագաւորին Գէորգէ որդոյ մեծ թագաւորին Թամարին յորոյ ժամանակս ետ Աստուած ի ձեռս Բ. հարազատացս Զաքարէի եւ Իւանէի զսեփհական դղեակն մեր զբերթ զչինեալն ի նախնեաց մերոց եւ զայլ բազում ամրոցըս: Արդ ես մանդատոր թախուցէս բարեպաշտի իշխանաց իշխանին Սարգսի՝ եատ ի սուրբ ուխտս Հաղբատայ զիմ հայրենի գեղերն որ յԱչոցք, զՀալալաչէն եւ . . . եւ զի այս գեղերս հեռի էին ի Հաղբատայ,

փոխեցի եւ ետու հայրենիք Դաւթի որդոյ Տոթոռկայ եւ առի Բ. գեղին փոխան զՀաղբատ հայրենիք եւ ընծայ սուրբ Նշանին Հաղբատայ ամենայն սահմանաւք ոնց ընական եղեալ է(ր) հողով եւ ջրով, խոտամարգերով. մայրիւք եւ ջաղացովք գոմամարգերով, լերամբ եւ դաշտով վասն երկար կենդանութեան թագաւորին եւ արեւշատութեան որդոյ իմոյ Տահնշահի եւ եղբաւր իմոյ Իւանէի եւ որդոյ իւրոյ Աւագին եւ յիշատակ մեզ եւ ծնողաց մերոց: Եւ է այս գեղ ազատ յամենայն հարկէ, ի պատրոնաց, ի ձեռնաւորաց, ի գեւղաւագաց: Եւ եղի լուծ ի վերայ սոցա զայս որ ի մեծ եկեղեցին զաւագ խորանին պատարագն անխափան յիմ Զաքարիայի անուն մատուցանեն յայամհետէ, որ թիւ Հայոցս է ՈԾԹ մինչ ի գալուստն Քրիստոսի: Եթէ հակառակի ոք եւ զմեր յիշատակս խափանել ջանայ յիմոց կամ յաւտարաց. մեծ կամ փոքր, ի Վրաց կամ ի Հայոց, ի Լոռու տերանց, յեպիսկոպոսաց, ի քահանայից եւ յաշխարհականաց արանց կամ Հաղբատս յետ առնու եւ զիմ պատարագն խափանէ նզովի յամենակալ բերանէն Աստուծոյ եւ աւանդող հոգւոյ նորա սատանայ լիցի»(Թ. 239, էջ 37—38: Արարատ 1886, էջ 525 եւ Brosset, 6—7, Ջալալեան, (Ա.) էջ 58—59):

Յովհաննէսի առաջնորդութեան ընթացքին Հաղբատի մէջ կը ծաղկի դրչագրութիւնը. այսպէս՝

1195*ին Հաղբատի մէջ կը գրուի Եփրեմի Համաբարբառի մեկնութիւնը. «Որպէս աւանդ հայրենի յաղագս որդւոց յառաջապահեստ արարեալ գանձեալ եւ եդեալ սուրբ եւ արդիւնակատար ումն Անանիա ժառանգաւորաց տանս Հաղբատայ եւ ի լուսաւորութիւն հանուրց աշխարհաց ... Արդ ես Խաչատուր, այր ումն անտոհմիկ թափառական եւ աղքատ սուտանուն աբեղայ, դիմեալ ի հրահանգս վարժից առ սոս իմաստուն եւ սրբազնեալ վարդապետաց, գտեալ ապա զսյս աստուածատուր գանձարանս առ մեծարգի եւ իմաստուն վարդապետի իմոյ Դաւթի եւ խնդրեալ չարագրեցի անարուեստ եւ անվարժ գրով ... Բայց (գրեցաւ) գիրքս այս ի գաւառիս Ձորոյգետոյ ի վանքս Հաղբատ, ... յեպիսկոպոսութեան Տեառն Յովհաննիսի ... ի վարդապետութեան Դաւթի, Պետրոսի, Իգնատիոսի, եւ զկնի մահուան Վարդան վարդապետի, յորում ամի գերեալ ի Վրաց գաւառն Կարնոյ եւ ի վանորայն յաւերումն յառ եւ ի գերութիւն մատնեցան: Յայսմ ժամանակի ես Խաչատուրս տկարացեալ եւ խելայեղեալ գրեցի զգիրս այս խոշոր եւ անյարմար յանպիտան նիւթի ... զարդիւնակատար եւ ամենաերջանիկ վարդապետն ... զհովիւն բանաւոր ոչխարաց ... զհանգուցեալն (ի Քրիստոս եւ զԳրիգոր վարդապետ, նորին հարազատ եւ զԽաչատուր որբացեալ աշակերտ յիշեսջիք յաղաւթս» (Ալիշան,

Հայապատում, էջ 383, Մատենագրութիւն Եփրեմի, Ա. Վենետիկ 1836, էջ 7, հմմտ. Ցովսէփեան, Յիշատակարանք, Ա. էջ 589—592)։

Ցովսէփեան կը կարծէ թէ նաեւ Եսայիի եւ Պօղոսի ԺԴ. թուղթերու արտագրութիւններն ալ ԺԲ. դարուն Հաղբատի մէջ գրուած ըլլան (հմմտ. Հաղբատի դպրոցը)։

Հաղբատի գլուխ գործոց Աւետարանին — որ Գետաշէնի Աւետարան կը կոչուի, զի հոն գտնուած է — Յիշատակագրութեան կարեւոր մասերն են ... «Որում եւ այսպիսոյ յօքնապատիկ բարեաց բաղձացող եղեալ իմ ամենանուաստի եւ տրուպ սպասաւորի տան Աստուծոյ Սահակ կրաւնաւորի եւ յետին քահանայի, որ էի աշակերտ սուրբ ուխտիս Հաղբատու, ազգաւ եւ տոհմիւ ի մեծ մայրաքաղաքէն յԱնւոյ, անեալ ի սրբարան ուխտիս ի Հաղբատ, ստացայ զսուրբ Աւետարանս իմովք արդեամբք առ ի յիշատակ ապագայից ինձ նուաստիս Սահակայ եւ ծնողացն իմոց Ռովմանոսի եւ Կատային եւ երկուց հարազատաց եղբարցն իմոց Իպատոսին եւ Առաքելին եւ իւրեանցն զաւակաց եւ քերցն իմոց եւ զաւակացն նոցուն եւ ազգայնոց ամենից կենդանեաց եւ մեռելոց։ Եւ ետու գծագրել զսա եւ կազմել ներքոյ եւ արտաքոյ յաւրինուածով ըստ իմում կարի եւ կատարեալ սիրով։ ... Ցորժամ առնուք զսա ի ձեռն ձեր զիս զՍահակ ստացող սորա եւ զվերոգրեալ

*ծնողն իմ եւ զեղբարսն եւ զՄարգիս հոգեւոր ծնողն իմ զՅակովբոսն եւ զՎարդն: Որպէս զի ձերոյին սուրբ աղաւթիւքդ արժանասցուք հանդիպել ի դէպ ժամանակի հանդերձելոցն բարեաց պատրաստելոցն ի Քրիստոս: . . . Եւ արդ գրեցաւ սա եւ ծաղկեալ կազմեցաւ յամի յորում էր թիւ համարոյ թուականութեանս Հայոց հարիւրոց վեցից եւ նոյնքանեաց տասանց, իսկ Նորոյ շրջանի միոյ հարիւրոյ քսան եւ ութեակ թուով, ի սուրբ ուխտս Հաղբատայ գծագրեցաւ ձեռամբ Յակոբայ յառաջնորդութեան Տեառն Յովհաննիսի սրբասիրի, ի թագաւորութեան Հայոց արեւմտային կողման Լեւոնի քրիստոսասէր թագաւորի եւ ի սպարապետութեան Զաքարիայ Շահնշահի, յորոց յաւուրս ժամանակաց յոլովս կատարեաց Աստուած յաղթութիւն ի բազում տեղիս, զորմէ այլք պատմեսցեն զայլ ինչ եւ մեզ վասն զի խնդիր է առ սրբութիւնդ ձեր մատուցանել մաղթանս հոգեհեծ պաղատանաւք, ով լուսերամ բնակիչք սրբոյ ուխտիդ Արջուառճի, առ որ զլոյս հաւատոյ մեր եդեալ զրովանդակ զոյք ծնողաց մերոց եւ եղբարց ծախեցաք եւ շինեցաք զաստուածբնակ եկեղեցիքս եւ աւանդեցաք զսուրբ Աւետարանս յԱստուծոյ սուրբ եկեղեցիս, որ շինեցաւ ի մէնջ ի վանս Արջուառճի, որպէս զի սուրբ եկեղեցեաւս եւ սուրբ Աւետարանաւս մեք եւ ծնաւղքն մեր եւ եղբարք եւ ազգականք զացուք ողորմութիւն . . . Հրամանաւ*

*հաւր Մխիթարայ կազմեցաւ ի վանքս Հոռոմոսի, որոյ ողորմեսցի Քրիստոս Աստուած։ Զկազմող սորին զԱբրահամ եւ զնկարիչս սորին զՄարգարէն եւ զողորմութիւն խնդրող զՅովհաննէս յիշեսջիք յաղաւթս»* (*Յովսէփեան, Նիւթեր եւ ուսումնասիրութիւններ հայ արուեստի եւ մշակոյթի, Պր. Ա. էջ* 42, *հմմտ. նոյնը, Յիշատակարանք, Ա. էջ* 749—750)։

*Յովհաննէսի առաջնորդութիւնը երկարատեւ կ'ըլլայ։ Կը յիշուի դեռ* 1218*ին*[9]. *«Ի թուականութեան Հայոց ՈԿԷ եւ ի հայրապետութեան սուրբ ուխտիս Հաղբատայ Տեառն Յովհաննէսի հեղի եւ առաքինւոյ եւ ի սպարապետութեանս Հայոց եւ Վրաց Իւանէի եւ մանկանն Շահնշահի, ես նուաստս Ստեփանոս հանդերձ եղբարբս իմով Սարգսիւ յետին աշակերտ հոգեւոր վարդապետին Իգնատիոսի, որոյ յիշատակն աւրհնութեամբ (եղիցի) անեալ եւ վարժեալ առ ոտս սրբոյ Նշանիս Հաղբատայ։ Արդ ցանկացաւղ եղեալ իմ այս Տաւնամակացս լցեալ հոգեւոր գանձիւք եւ յերկնային մանանայիւն, զոր չարայարեալ սրբոց վարդապետաց»* (*Յովսէփեան, Յիշատ. Ձեռ. էջ* 795)։

*Յովհ. Ղրիմեցի կը գրէ «Ամք առաջնորթեան սորին Յովհաննու յայս նուագ (այս է*

---

[9] *Կարեւոր արձանագրութիւն մը կայ իր օրերէն* 1211*ին* (*հմմտ. Արարատ* 1887, *էջ* 108)։ *Եւ ուրիշ աւելի կարեւոր մը* 1221*էն* (*անդ* 1886, *էջ* 521—522)։

*երկրորդ անգամ) ի նախագրեալ ՈՄԵ թուականէ հաշուեալ մինչեւ յայս ՈՀ* (1221) *թուական երեւին առ առաւելն հնգետասան, բայց թէ որչափ եկաց աւելի քան զհինգ ամ, զի արձանագիր ինչ ի Սանահին ընդ ՈՀԶ թուականաւ* (1227) *որ թուի լինել յաջորդի նորին միւս Յովհաննու»* (*Թ.* 239 *էջ* 113)*.*

*Ուստի եւ* 1227*ին Յովհաննէս Ա. ի յաջորդ է արդէն* Յովհաննէս Բ. *որ անոր եղբօրորդին է եւ քեռորդին Զաքարէ եւ Իւանէ իշխաններու։ Կիրակոս անոր գործունէութիւնը կը նկարագրէ «Սա շինեաց բերդ մի ամրագոյն պարսպօք ի մէջ Հաղբատայ եւ Սանահնի, վասն որոյ դժուարութիւն ընդ երկուս մեծամեծ վանորայս եղեւ, որպէս թէ ի հողոյ Սանահնին իցէ եւ վրէժխնդիր եղեւ իշխանն Շահնշահ որդին Զաքարէի Սանահնին, զի հայր նորա անդ թաղեալ էր եւ իւրեանց սեփական համարէին, զի Հաղբատ ի Վրաց թագաւորին հաշուին էր յայնմ ժամանակին»* (*Գամ. էջ* 56)*։ Յովհաննէսի այս ձեռնարկը մեծ գործ էր եւ շատ դրամի կարօտ, ինչպէս եւ շատ յոգնութիւն կը պատճառէ իրեն, սակայն հարկաւոր էր այդ վանքին ապահովութեան եւ պաշտպանութեան համար։ Թէեւ կ'ունենայ հակառակորդներ, բայց որովհետեւ Յովհաննէս կորովի է եւ աննկուն եւ դարձեալ հրամանով ժամանակի մեծ իշխաններուն ձեռնարկած էր գործին եւ անոնց հետ արխնի կապ եւս ունէր, ոչ ոք կը համար-*

ձակի շինութեան արգելք ըլլալ: Նոյն իսկ Ծահնշահ՝ որ համամիտ չէր եւ դժդոհ էր, բայց խոհեմական կը համարի անոր կենդանութեանը շատ անհաճոյ քայլ չառնելու (հմմտ Կիր. էջ 56): Արձանագրութիւն մը կ՚աւանդէ «Ի Թուին Հայոց ՈՁԲ (1233) կամաւն Աստուծոյ ես Տէր Յովհաննէս առաջնորդ Հաղբատայ քուերորդի մեծ պարոնացն Զաքարէի եւ Իւանէի ի ժամանակի որ եհաս սատանուՃն աշխարհիս մերոյ ի Խորազմենացն, ոչ գոյ տեղի ապաստանի սուրբ Նշանիս ... հրամանաւ քեռորդոյն իմոյ (քեռւոյ որդւոյն) եւ որդւոյն իւրոյ Աւագին եւ Ծահնշահի որդոյ Զաքարէի շինեցի զամրոցս եւ զեկեղեցիս Հաղբատայ սուրբ Նշանիս բազմաւ աշխատութեամբ: Արդ եթէ ոք զսա ի Հաղբատայ հանէ, եթէ մեծաց թէ ի փոքունց, զինչ եւ իցէ պատճառաւ, մարդն այն նզովեալ եղիցի ի մահ եւ ի կեանս ... մինչեւ ի դալուստն Քրիստոսի, ինչ նզովք կայ ի վերայ նորա եղիցի, երերեալ եւ տատանեալ եղիցի որպէս Կայեն եւ բաժան (բաժին) զՅուդային առցէ եւ աւանդիչ հոգւոյն նորա սատանայ իցէ ... (լիցից°) ... կամ նախանձու կամ ծուլութեամբ կամ կաշառաւ զսա ի Հաղբատայ հանէ, զվերոյգրեալ նզովն առցէ: Եւ որք հաստատեն աւրհնին յԱստուծոյ: Եւ պարտին ինձ Տէր Յովհաննէսիս զԱստուածածնին տաւնի Գաւրն ի սմա զպատարագն ինձ (վասն ի մատուցանել)» (Թ. 239

էջ 114—115, Արարատ 1887 էջ 220—221, Ջալալեան, էջ 80, Brosset էջ 44) :

Հաղբատի Դրսի վանքն է Կայան բերդը՝ օժտուած եկեղեցիով եւ ամուր պարիսպներով : Բերդին շինութենէն քանի մը տարի յետոյ կը մեռնի Յովհաննէս եւ անոր տապանաքարին վրայ կը գրուի «Զաքարէի եւ Իւանէի քեռորդի Յովհաննէս եպիսկոպոս տեղոյս» (Թ. 239, էջ 114—116 եւ Brosset, էջ 45) :

Անոր մահէն վերջ «Թակեցին եւ զպարսպն բերդին հրամանաւ Թաթարին» (Կիր. Պատմ. էջ 56) եւ անոր կը յաջորդէ Կիրակոսի համաձայն «ՅՈՎՀԱՆՆՍ Գ, որդի Աղսարթանայ Մածնաբերդէ Բագրատունեացն, ամս երկու որ չեւ էր ձեռնադրեալ եպիսկոպոս վասն շփոթման ժամանակին, որ յետոյ ձեռնադրեցաւ ի կաթուղիկոսէն Աղուանից Ներսէսէ կողմանցն Մածնաբերդին» (Պատմ. էջ 56—57) : Եւ ապա անոր կը յաջորդէ Համազասպ «ի քաղաքէն Անւոյ» (անդ էջ 57) : Իսկ Յովհաննէս Ղրիմեցիի համաձայն Յովհաննէս Բ. ի յաջորդ կ'ըլլայ Համազասպ եւ ասոր՝ Յովհաննէս եւ դարձեալ՝ Համազասպ (Թ. 239 էջ 116) :

Կիրակոս Գանձակեցիի Պատմութեան շատ ծանօթ Յովհաննէս Ղրիմեցի Համազասպի մասին կը գրէ «Համազասպ Անեցի իշխանազն յաջորդէ յաթոռն անմիջապէս զկնի Յովհաննու Երրորդի (ըստ իրեն, բայց մեր կար—

ծիքին համեմատ Երկրորդի)։ Զաս Կիրակոս ղնէ յաջորդեալ զկնի Յովհաննու Զորրորդի (սակայն կը համարիմ թէ դնելու է Երրորդի) Բագրատունւոյ, բայց ըստ որում յայտնի երեւի յարձանագրաց ոչ միայն եղեւ նա յաջորդ նորա այլ եւ նախորդ նորա, զի ի Թուականէ Հայոց ՈՂԱ մինչեւ ցԹուականն ՈՂԸ ի բազում արձանագիրս պարզապէս յիշատակի առաջնորդութիւն նորա» (Թ. 239 էջ 116)։ Եւ կը պատճառաբանէ որ այս Թուականներուն պէտք է որ Համազասպ առաջնորդ ըլլայ, քանի որ կը յիշուի թէ Կոստանդին կաթողիկոսի Թուղթին – զոր Վարդան Արեւելցին կը բերէ – համամիտ կ՚ըլլայ եւ թէ Դաւիթ Մոլորեցուցիչին սաստի Թուղթ կը գրէ (անդ էջ 116—117 եւ Կիր. Պտմ. էջ 174 եւ 184)։ Յովհաննէս Ղրիմեցին ինքն եւս անտեղեակ է թէ ի՞նչ պատճառով Համազասպ առաջնորդութենէ կը հեռանայ եւ կամ կը հեռացուի, եւ անոր կը յաջորդէ Յովհաննէս Գ (անդ էջ 117)։ Այս վերջինին յաջորդութիւնը արդ մեզ չի հետաքրքրեր, զի կարճ ժամանակ պաշտօնավարած է եւ կարեւոր ձեռնարկ մը չունի, ուստի անցնինք Համազասպի գործունէութեան։ «Սա շինեաց եկեղեցի ի տեղին հրաշալի եւ զանգակատուն եւ ժամատուն մեծ եւ սքանչելի» (Կիր. Պտմ. էջ 114—116)։ «Ի Թուին ՈՂԴ (1245) շինեցաւ գեղեցկազարդ տաճարս զարթուցանող փառաբանչաց Տեառն եօթն խորանաւ ի Տէր Հա–

մաղապարտ, որում ողորմեցի Քրիստոս եւ տացէ ի լուսեղէն յարկաց խուրց ողւոյ նորա եւ Յովհաննէսի քուերորդոյ խուրոյ եւ այլ աշխատողացն, զի բաղում ջանիւ շինեցաք զսա ի դառն ժամանակիս Թաթարաց» (Ջալալեան, ճամբ. Ա. էջ 76 Արարատ 1887 էջ 72 եւն): «Սա է երկրորդ մեծ եւ գեղարուեստական անձն Հաղբատի առաջնորդների մէջ» (Յովսէփեան, Նիւթեր ... էջ 67): Անոր շինութիւնները մէկական կոթողներ են անխոնջ եւ գիտակից առաջնորդութեան: Գիտցեր է գժուարութիւններու կուրծք տալ եւ հետամուտ եղած է լաւը շինելու եւ լաւագոյնը ընելու: Անունը միշտ պիտի յիշուի իր կերտած «Համազասպ» ով: Սիրած է նմանապէս գիտութիւնը եւ խնդրած Վարդան Արեւելցի վարդապետէն Ս. Գրքի մատեաններու մեկնութիւններ (հմմտ. Հաղբատի Դպրոցը եւ Արարատ 1888, էջ 580):

Համազասպի առաջնորդութեան շրջանին կը դրուի հետեւեալը, որ իր բովանդակութեամբ հետաքրքրական է եւ կարեւոր.

Փառք ... Յընտրելագունից մերոց եղարց մաւրս լուսոյ բազմազան զաւակաց նոր Սիոնի կաթուղիկէիս Հաղբատայ ցանկացող եղեալ եւ բաղում ժամանակաց Սարգիս անուն որ եւ Սամուիլեանց երէց կոչիմք եւ գրել զպատմութիւնս ... սքանչելագործ Աւետարանչին Յովհաննու, զոր գրեաց Պրոխորոն ... եւ զտեսիլ նորին Աւետարանչին ապա-

զայնցն ցուցմանց զոր ետես հոգւոյ ականբ ի Պատմոս կղզւոջ: Ընդ նմին ետ գրել եւ զպատմութիւն զզարմ գերութեան անուանի․․ Սր․ Նշանիս մերոյ զոր Աւագիազ անուանի (երկու տող քերուած) ․․․ Եւ ես նուաստ եւ անպիտան հոգս Սարգիս ․․․ ետու գրել զպատմութիւններս վասն յիշատակի ինձ եւ ծնողաց իմոց եւ եղբարց եւ իմ սնուցած տղայիս Սուքիասիս եւ ընծայեցի առաջի սուրբ Կարապետիդ եւ պատուական եւ փառաւոր սուրբ եղբայրութեանդ եւ զիս մահու ձայն լսէք, զիմ միաբանութեանն յիշատակն կատարէք եւ զինչ որ այլ յիս կարողութիւն լինիցի առնեմ:

Գրեցաւ սուրբ պատմութիւնս ի Հաղբատ առաջի աստուածընկալ սուրբ Նշանիս, եւթն հարիւր եւ մի (1252) թուականութեան Հայ(ոց) ․․․ (քանի մը տառ աւրուած) ի հայրապետութեան Կոստանդնոյ Հայոց Կաթուղիկոսի, յեպիսկոպոսութեան երկուց լուսաւոր արանց (բառ մը քերուած) մերոյ տէր Համազաս (երկու բառ նորէն քերուած) նահանգիս եւ մեծայարկ տանս Հաղբատայ եւ յառաջնորդութեան Այրարատեան գաւառին սուրբ Կարապետին Յովհաննու վանից մեծապատիւ բարունւոյ տէր Մկրտիչին․․․

Կատարեցաւ Պատմութիւն սրբոյ Առաքելոյն Յովհաննու Աւետարանչի: Ձմեղապարտ գրիչս Վարդան յիշեցէք յաղաւթս ձեր, ով սուրբ Հարք» (Սամուէլեան Ս․ Վ․

Յուց. հայ. ձեռ. Պոնտոսի Թ. 1, անտիպ):

Այս Թուականէն տասը տարի առաջ «Տեր ոմն Պետրոս սպասաւոր Ս. Նշանիս Հաղբատայ» Սահմանաց գիրքը գրել կու տայ Յովհաննէսի (Յովսէփեան, Յիշատակարանք, Ա. էջ 951):

Համազասպ եպիսկոպոսի յաջորդն է ՅՈՎՀԱՆՆԷՍ ԴՕՓԵԱՆ, որ 1265ին արդէն իբրեւ արքեպիսկոպոս կը ներկայանայ: Յովհաննէս Երզնկացի զինքը կ'անուանէ «Մեծազգ Տէր Յոհան յազնուական զարմից եւ բարեպաշտ հայրց ծնունդ», զի Դօփեան տոհմէն էր: Հաղբատի եւ այլ վանքերի արձանագրութիւններ մէջ Յովհաննէս եպիսկոպոսը յիշւում է որպէս շինարար, նուէրընկալ, եւ առաջնորդ, բայց նաեւ ձեռագրական յիշատակարաններ մէջ որպէս մեկենաս, վարդապետ եւ սրբագրող» (Յովսէփեան, Հաւուց Թառի Ամենափրկիչը ... էջ 64, Նոյնը, Նիւթեր եւ ուսումնասիրութիւններ, Ա. էջ 67, եւ Հայապատում, Բ. էջ 537): Լոկ զովեստի համար այդ որակումները չեն շռայլուած: Անոնց արժանի էր: Ժամանակակից կարեւոր հարցերու մէջ մտած է: Հաւանօրէն անոր եռանդուն գործունէութեամբ գումարուած է Հաղբատի ժողովը, որուն գրագման նիւթը մօտաւորապէս կարելի է կռահել Ջագավանքի ժողովի կանոններէ (Յովսէփեան, Հաւուց Թառի Ամենափրկիչը էջ 64): Վարդանի Երզ Երզոցի մեկնութիւնը 1265ին կը գրուի

«Յաստուածամերձ սուրբ ուխտս... յարհիեպիսկոպոսութեան Տէր Յովհաննէսի» (Գէորգեան, Յուց. էջմ. էջ 532 եւ 1267ին Տօնապատճառ մը (Յովսէփեան, Քարտէզ հայ հնղր. էջ 36):

Հաւանական է որ Սինեաց Ստեփաննոս եպիսկոպոսի առ Գրիգոր Անաւարզցի գրուած թուղթի ստորագրողներէն մէկն ալ Յովհաննէս եպիսկոպոս եղած ըլլայ (Օրբէլեան, Պատմ. էջ 461): Անոր եղբօրորդին դրամական կարեւոր նուիրատուութիւն մը կ՚ընէ Հաղբատի գինքը քաջալերելով եւ անոր շինարարական գործունէութեան աջակցելով. «Ես Ծիթվասան ծառայ սուրբ Նշանիս, եղբաւրորդի տէր Յովհաննիսի, կացեալ ընդ հովանեաւ սուրբ Նշանիս զիմ հոգւոյ արդիւնս ի հալալ վաստակոց ընծայեցի ի սուրբ Նշանս եւ ի միաբանքս ԺՁ եղն, ԳՌ. սպիտակ յառաջնորդութեան տէր Յովհաննէսի եպիսկոպոսիս եւ միաբանքս սահմանեցին մեզ պատարագ զՅայտնութեան տնաւրինեցաւ աւրն զամէն եկեղեցիքս մեզ պատարագել, մինչ մեք կենդանի եմք մեր հաւր Գարբանէլին եւ մաւրն Յացային, յետ մեր ելից Բ. պատարագ իմ եղբաւրն Վաչէի, Աղբերադեղին եւ զայլն մեզ առնեն Ծիթվասանիս... թուին Ձիէ» (Թ. 239, էջ 78—88, Արարատ 1886, էջ 528 եւ Ջալալեան, էջ 64 եւն):

Նմանապէս Յովհաննէսի օրով 1279ին Բարսեղ քահանան կը շինէ Ս. Զօրավարք

եկեղեցին իր սրահովը․ «Կամաւ նախախնամութեան Աստուծոյ Հաւր եւ յառաջնորդութեան տէր Յովաննիսի ի թուին Հայոց ՁԻԸ ես Բարսեղ քահանայս կանգնեցի զսուրբ Զօրավարքս եւ շինեցի զսուրբ խորանս լուսոյ յանուն սրբոցս մեծաւ ջանիւ եւ քրտնամուխ անձամբ ի փրկութիւն հոգւոյ իմոյ եւ յիշատակ մեզ եւ ծնողաց մերոց եւ սնուցողացն» (Թ․ 239 էջ 84, Արարատ 1887 էջ 215, Բրոսսէ էջ 36) ։

Իսկ ինքը Յովհաննէս իր շինարարական ընտիր գործունէութիւնը կը պատմէ Ամենափրկիչի ընդարձակ արձանագրութեան մէջ եւ այլուր (հմմտ․ Յովսէփեան, Հաւուց Թառի Ամենափրկիչը ․․․ էջ 65, Թ․ 239 էջ 119 եւ Արարատ 1887 էջ 34) ։

Յովհաննէս Դօփեան, որ եւ Արմանեցի, նախապէս եղած է Գետիկի եւ Հաղարծնի առաջնորդ «եւ ապա գնաց ի մեծ աթոռն Հաղբատ» (Կիր․ Պատմ․ էջ 116), ուր հաւանօրէն երեսուն տարիէն աւելի առաջնորդութիւն կ'ընէ ։ Յովհ․ Ղրիմեցին կը գրէ «Ի վերոյգրեալ թուականացդ (արձանագրութիւններու) յայտնի չափ ժամանակի առաջնորդութեան նորա, զի ձգի ընդ ամս երեսուն եւ վեց սկսեալ ի ՁԷ թուականէ մինչեւ ցՁԽԳ ։ Այլ թէ որչափ եկաց եւ անդր մինչեւ զվախճան իւր ոչ է յայտ ։ Գերեզման նորա․․ երեւի առընթեր սեմոց հիւսիսային դրան աւագ տաճարին, յորոյ վերայ թէպէտ չիք

տապանագրութիւն՝ բայց ի խաչարձան անդր (Ամենափրկչի) յառաջնոյ կողմանէ կայ դրոշմեալ վերտառութիւն Սուրբ Աստուած, սուրբ եւ հզօր սուրբ եւ անմահ որ խաչեցար, ողորմեա տէր Յովանիսի» (Թ. 239, էջ 120, Բրոսէ էջ 46):

Յովհաննէս Արմանեցիին հաւանօրէն յաջորդած ըլլայ Աստուածատուր արքեպիսկոպոսը:

Ունիմ յիշատակագրութիւն մը 1281 Թուականէն. բայց մէջը առաջնորդի անունը լռուած է: Կարդանք զայն՝ «ԶԲարսեղս սպասաւոր բանի որ եւ զգիրքս գրեցի խոշոր եւ անյարմար, յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր. ի ծաղկերանդ մարդս յորժամ մտանէ ոք ախորժելի է ի նմա յարաժամ մնալ անդրէն, ... ուստի վայելել կամելով նպաստ եւ ապիկար ումն Բարսեղ կոչեցեալ ... ընթացս ի մարդս աստուածային ... բանից հարց սրբոց առնելով ի նոցունց բանից որքան կարացի, վասն որոյ աղաչեմ ... յիշել զանարժանութիւնս մեր միով այսու աղերսիւ Տէր Յիսուս ողորմեա մեղուցեալ ծառայի քո Բարսղի ստացողի գրոցս եւ Հազարադեղի նորին հարազատի, յառաջադոյն ի Քրիստոս գնացելոյ եւ այլոց եւս եղբարց եւ ազգականաց ... ամէն:

Եւ է որ գրեցաւ իմով ձեռամբ խոշոր եւ անյարմար, եւ է որ ի ձեռս այլոց ի հալալ արդեանց իմոց, ի գերահռչակ ուխտս Հաղ-

բատայ, յորում եղէ արժանի կոչել սպասաւոր բանի յաղագս որոյ ծաղկաքաղ արարի սակս իմոց պիտոյից ... Եւ եղեւ աւարտ սորին ի մերումս թուականի եւթնհարիւրերորդի երեսներորդի ՉԼ (1281) ամէն:» (Ակինեան, Հաւաք. Յիշատ. էջմ. 1324):

Երկու տարի յետոյ կը գրուի Ճարակնոց մը եւ անոր մէջ յատակօրէն յիշուած է Աստուածատուրի անունը.

«Փառք գրեցաւ չարունակ աստուածաչունչ տառի չարակնացս ի թվականութեան հայկազան տումարի (այս է Հայկայ — ՉԼԲ) ձեռամբ սրբասէր կրաւնաւորի եւ գեղեցկաչար գրչապետի Յովհաննէս գրչի: Ի հոյակապ եւ հռչակաւոր սուրբ ուխտս Հաղբատայ, ընդ հովանեաւ սուրբ Նշանացս, որ աստ կան հաւաքեալ եւ Ամենափրկչիս: Ի յառաջնորդութեան սուրբ ուխտիս տէր Աստուածատուր արքեպիսկոպոսի եւ այլ միաբանիցս որ աստ կան հաւաքեալ տէր Դանիէլ վարդապետի, տէր Գրիգորի եւ տէր Մանուէլի, տէր Մկրտչի եւ տէր Խաչատրի, տէր Կարապետ եկեղեցպանի եւ տէր Ներսէս ձեռնասնունդ աշակերտի իմոյ որ բազում աշխատութեամբ ուսուցի ...» (Արարատ 1909 էջ 871, Ակինեան, Հաւաք Յիշատ. էջմ. 1577):

Աստուածատուր կ'երեւայ թէ իր ծերութեան ատեն կամ ուրիշ պատճառով մը իրեն օգնական կ'ունենայ ՂՈՒԿԱՍ, որուն հետ կը

յիշուի սա արձանագրութեան մէջ «Կամաւ ամենակալին Աստուծոյ ես Յոհանես փակակալ սուրբ ուխտիս Սանահնոյ եկի ի դուռըս Ս. Նշանիս առաջնորդութեամբ տէր Ղուկաս արքեպիսկոպոսի եւ տէր Աստուածատուրի ետու մեծածախ սկի(հ) կամակցութեամբ եղբաւրորդւոյս Ներսէս փիլիսոփայի ...» (Թ. 239 էջ 121)։ Յովհաննէս Ղրիմեցին կը խորհի թէ սանոցմէ մէկը կրնայ Սանահինի առաջնորդ ըլլալ եւ միւսը Հաղբատի, որ անընդունելի չ'երեւար, երբ խորհինք թէ Սանահինի փակակալը եղած է Հաղբատ եւ նուէրը ըրած ժամանակ կը յիշէ նախ իր առաջնորդը (այս է Սանահինի) եւ ապա Հաղբատի վանահայրը։

Ինչպէս երբեմն Վարդան Մեծ վարդապետը կը նստի Հաղբատի մէջ եւ գրելով կը գրաղի, այսպէս նմանապէս հոն կը բնակի Յովհաննէս Երզնկացի եւ գրութիւններով կը պարապի (հմմտ. Արարատ 1887, էջ 264)։

Աստուածատուրի (կամ Ղուկասի) յաջորդներու անունները մեզի չեն հասած։ Տապանաքարի մը վրայ կայ «ՊԽԴ (1395) Այս է հանգիստ տէր Յովաննիսի» եւ Յովհաննէս Ղրիմեցի կը համարի թէ այս ՅՈՎՀԱՆՆԷՍը Հաղբատի առաջնորդ եղած ըլլայ (Թ. 239 էջ 121)։

Ասոր յաջորդը կրնայ ըլլալ ՅԱԿՈԲ, որ 1423ին Կաֆայի մէջ գրուած Շարակնոցի մը մէջ կը խնդրուի յիշել. «Զտէր Յակոբ վա-

նահայր մեծահռչակ ուխտին Հաղբատայ» (Հմմտ. Խաչիկեան, ԺԵ. դարի հայ. Ձեռ. Յիշատ. Ա. էջ 312):

Յովհ. Ղրիմեցի ինչպէս անոր՝ նաեւ ԶԱՔԱՐԻԱ առաջնորդին անուններու անծանօթ է:

Հաղբատի մէջ 1437ին «ի յառաջնորդութեան տէր Զաքարէի» Մարտիրոս կը գրէ Ճառընտիր մը (Նոտարք, էջ 112), իսկ 1438ին հոն կ'արտագրուի Ճաշոց մը[10]:

«Փառք ... Արդ ես Աստուածատուր մեղապարտ երէց բազում ժամանակաց այրի, ի Կոտեւույ երկրէն ի գեղջէն Արծնոյ, ցանկացող եղէ այս հոգելից տառիս ի դառն եւ ի նեղ ժամանակիս, որ որդի մեծի Խորազմին Թամուր Ճահ Ռուխ կոչեցեալ չորս անգամ բազում հեծելօք անգութ եւ անագորոյն եւ անողորմ եւ ծարաւի արեան քրիստոնէից, երեկ ի վերայ աշխարհիս Թավրիզոյ, որ բազում անասելի աւերած ի վերայ աշխարհիս Հայոց ... Յայս դառն եւ կսկծալի ժամանակիս կարի աղքատութեամբ եւ չքաւորութեամբ ետու գրել գգիրքս ի յօտար երկիրս Վրաց ի ձեռս Յովհաննէս քահանայի ի վանքս Հաղբատայ առ դրան սուրբ Նշանիս եւ սուրբ մայրաքաղաք Խմբարանիս եւ սուրբ

---

[10] Արէլ 1410ին ի վանս Սարկաւագանց կոչեցելոյ ընդ հովանեաւ սուրբ Կարապետիս կը գրէ Գր. Տաթեւացւոյ Մատթէի մեկնութիւնը (Նոտարք էջ 35, ուր կը կարծուի թէ Սարգաւագանց վանքի տակ կարելի է հասկնալ Հաղբատ):

*Աստուածածնին եւ սուրբ Գրիգորին առ դրան սուրբ վարդապետաց եւ սուրբ Հայրապետաց եւ մեղապարտիչ եւ աստուածարնակ տաճարացս ի յառաջնորդութիւն տէր Զաքարիա արհի եպիսկոպոսին եւ ի թագաւորութեան Վրաց Ալեքսանդրէի եւ պարոնութեան տեղւոյս եւ նահանգին Լոռոյ մեծափառ եւ աստուածասէր իշխանաց իշխանին պարոն Բեշքենին յազգէն Օրբէլեանց, թոռին մեծի պարոնին Բիւրթելի ի թուականին հայկազեան տումարիս ՊՁէ ամին»* (1438, *Նոտարք*, *էջ* 115—116, *հմմտ. Հայապատում Բ.* *էջ* 557—558 *եւ Խաչիկեան, ԺԵ. Դարի հայ. Ձեռ. Յիշատ. Ա.* *էջ* 485) :

*Զաքարիայի յաջորդը եղած պիտի ըլլայ* Գրիգոր, *որ համամիտ ու համակարծիք կ'ըլլայ Հայոց կաթողիկոսութեան Էջմիածին փոխադրութեան: Յովհ. Դրիմեցին կը գրէ «Գրիգոր երկրորդ ի հնդետասան դարու կացեալ առաջնորդ յուխտիս ի Թուականի Հայոց ՊԳ յամի Տեառն* 1441, *գտաւ եւ ինքն ընդ այլոց բազմաց ի մեծ ժողովն յայն գումարեալ ի սուրբ Էջմիածին վասն նորոգութեան նորին, ուր եւ ընտրեցաւ եւ նստաւ կաթողիկոս Կիրակոս Վիրապեցի ի գաւառէն Քաջբերունեաց: Այս Գրիգոր գտանի ի պատմութեան յիշատակեալ ժողովոյդ, իսկ յարձանագիրս չերեւի ուրեք բնաւին յիշատակութիւն զնմանէ, սորայն ե'ւ նախորդ ե'ւ յաջորդ եւ ամք առաջնորդութեանն ան–*

յայտ» (Թ․ 239 էջ 121)։

Դաւիթ Բաղիշեցի ժամանակագիրը ժողովականներու մէջ կը յիշատակէ Գրիգոր վարդապետ ի սուրբ Թադէոսէ, «Գրիգոր միւս վարդապետ Հաղբատու» (Հմմտ. Նօտարք էջ 122)։[11]

Գրիգոր ապրած է խռովայոյզ շրջանի մը մէջ, ինչպէս 1441ին գրուած յիշատակագրութիւն մը այնքան յուզումնալից կը նկարագրէ․

«Փառք ... արդ յանկ ելեալ աւարտեցաւ ... ի մեծահռչակ եւ աստուածաբնակ եւ հրեշտականճեմ յաթոռս Հախրատայ ընդ հովանեաւ աստուածադաւր եւ արեամբ ներկեալ սուրբ Նշանիս եւ երկնանման կաթուղիկէիս եւ բարձրացեալ բազկատարած Փրկչիս եւ սուրբ Աստուածածնիս եւ սուրբ Կարապետիս եւ Առաքելոց եւ սուրբ Կարապետիս (այսպէս) եւ սուրբ Գրիգորիս եւ սուրբ Յակոբիս եւ սուրբ Նիկողայոսի եւ սուրբ տէրունականիս եւ Լեգանի սուրբ Նշանիս եւ Ծեքիքարի սուրբ Սարգիսիս եւ սուրբ Երրորդութենիս եւ Սարկաւագ վարդապետի սուրբ դամբարանիս եւ Թեփակեր ճգնաւորի սուրբ չիրմիս եւ այլ բազմահաւաք սրբոցս, որ աստ կան հաւաքեալ, ի պատիւ արեամբն ներկեալ սուրբ Նշանիս ի Թուականու-

---

[11] Հմմտ. նաեւ Յակոբեան Վ. Ա., Մանր ժամանակագրութիւններ. Բ. էջ 353)։

*Թեանս տումարի Պ երրորդի եւ իննսունրորդի – 1441 – ի դառն յանբարի ժամանակի, յորում սաստկացեալ էր սուրն Իսմայելացւոց ի վերայ մեր հալածանաւք բատ յառաջատես տեսլեանն սրբոյն Սահակայ, որ եւ տատանեալ ծփիմք ամենաներհակ արկածիւք ի ներքուստ եւ արտաքուստ, որ ախշութիւն տեսականի եւ միջնումն գործոյս: Զի յայսմ ամի Ղանն Դարվրժու Ջահնշահ Իմիրզայն որդի Թուրքման Ուսուփին որդւոյ Ղարա Մահմուտին ելեալ բազում զաւրաւք եւ անթիւ հեծելաւք մահմետականաւք եկն ի Վերաստան ի վերայ Վրաց, զի ոչ հնազանդէին ազգին Տաճկաց, փախստական եղեն ազգն Վրաց եւ մտան յԱփխազս եւ մնաց ազգս Հայոց, որք եկեալ էին եւ բնակեալ ի Վրաց տունս ի ձեռն անաւրինաց եւ իբրեւ գկատղած գաղան յարձակեցան ի վերայ Հայոց եւ սուր եդին ի վերայ եւ սպանին եւ բազում եկեղեցիք ի հիմանց տապալեցին եւ զբազում մանկունս ի մարցըն խլէին եւ ընդ քարիւ հարկանէին եւ մայրն զայն տեսանէր եւ զբազում մանկունս անմեղս մերկացուցանէին եւ սրով խոցոտէին եւ տղայն ճչէր եւ աղաղակէր եւ լայր եւ անաւրէնքն ծիծաղէին եւ ասէին ահա ձայն որ յԽուրեանց ԲԵՀԵչտէն կու գայ եւ մայրն եւ զայն տեսանէր եւ աղէղարշեալ մորմոքէր եւ լայր եւ ոչ ոք էր որ աւգնէր, բազում*

կանայք գողայն ի գիրկն աթնէին եւ քարի վայր անկանէին եւ դ․ ամիս նստան ի վերայ ամուրին Սամշուլտու եւ յորժամ խարէութեամբ առին զբերդն, յափշտակեցին զինչս եւ բաժանեցին զարքունի կանայքն կամ որպէս խլէին» (Խաչիկեան ԺԵ դարի հայ Ձեռ․ Յիշատ․ Ա էջ 514)։

Գրիգորի յաջորդած պիտի ըլլայ ԹՈՒՄԱՅ եպիսկոպոսը, որ Յովհ․ Ղրիմեցիին անծանօթ կը մնայ։ Հետեւեալ յիշատակագրութեան մէջ կայ անոր անունը․ «Յանուն ... ես Մուստաշէս ծախեցի զիմ հայրենի աւետարանս քեզ Խաչատուր իրիցիդ որդոյ Յոհանիսի ի գաւառէն Եղիշէ Առաքելոյն ի յաթոռոյն Ջրվշկայ վկայութեամբ մեր եպիսկոպոսի Թումի եւ սպասաւորի սուրբ ուխտին Հաղբատայ» (Բարխուդարեան, Արցախ, էջ 269 եւ Խաչիկեան, ԺԵ․ դարի հայ․ Ձեռ․ Յիշատ․ Ա․ էջ 618)։

Թումայի թափուր թողուցած առաջնորդական գահի վրայ կը բազմի Տէր ՂՈՒԿԱՍ, եւ այն դուցէ 1452ին (ամէն պարագայի այդ թուականին վանահայր է)։ Այդ թուականին կը գրուի Քարոզգիրք մը «Ի վերադիտողութեան նահանգիս Վրաց տէր Ղուկասու Հաղբատայ արքեպիսկոպոսի» (Ակինեան, Հաւաք․ Յիշատ․ էջմ․ Թ․ 2156)։

Երեք տարի յետոյ 1455ին «Ի վերայ – դիտողութեան մերոյ նահանգիս տէր Ղու–

կատու» Յովհաննէս քահանան Աւետարան մը կ'արտագրէ (անդ, առնուած էնֆիաճեանցի Հայ. Ձեռ. ցուցակէն, Թ. 79):

Նաեւ ճիշդ միեւնոյն տարին ԱՍՏՈՒԱԾԱՏՈՒՐ առաջնորդի օրով Գրիգոր կը գրէ Աւետարան մը (Բարխուդարեան, Արցախ, էջ 281), որով կարծեմ թէ կարելի է խորհիլ թէ Ղուկաս 1455ին մեռած ըլլայ եւ անոր յաջորդած՝ Աստուածատուր: Ասոնց անունները Յ. Ղրիմեցին չի յիշատակեր:[12]

Աստուածատուրի առաջնորդութեան շրջանին Հաղբատի մէջ բաւական թուով միաբաններ կային, ինչպէս սա յիշատակագրութիւնը կը ցուցնէ.

«Արդ եղեւ գրաւ գրչութեան սորա (ճաշոց) ի շրջագայութեան հայկազեան տումարի Ջ եւ Է (1458) ի հայրապետութեան Տեառն Գրիգորի ի Վաղարշապատ արքայանիստ քաղաքի ի բուն քահանայապետական յաթոռ որ է Իջումն Աստուծոյ Բանին եւ յաշխարհակալութեան տանն Հայոց Ջահանշահի Թուրքմանի եւ արեանարբու գազանի, յաստուածապահ գաւառս Լաւռոյ ի յերկնահանգէտ մեծարգոյ եւ գերահռչակ ուխտի Հախբատ վերաձայնելոյ ի դրան

[12] Երզնկայի Աւագ վանքի մէջ կը յիշուի Ներսէս Հաղբատացի մը (1464ին), որ ինչպէս կը կարծեմ Հաղբատ գիւղէն ըլլալու է (Արարատ 1918, էջ 600—604):

մաւրս լուսոյ Ս. Սիովնի ի հրաշափառ կաթուղիկէ սուրբ տաճարիս եւ արեամբ ներկեալ աստուածընկալ սուրբ Նշանիս։ Եւ յառաջնորդութեան սորա տէր Աստուածատրոյ, զոր ի յաւուրս եւ ի ժամանակս յայս կան բազում կրաւնաւորք եւ ազաւթարարք տէր Ղուկաս, տէր Աստուածատուր, փակակալ, Տիրատուր, Գրիգոր, Պետրոս, Գաւրգի, Յովսէփ, Մխիթար, Ներսէս, Յովս, Ոհս, Վարդան, Հայրապետ, Դաւիթ, Աբրահամ, Արթուխ, զոր Տէր Աստուած ընդ երկար աւուրս արասցէ զսոսա։ ... Յիշել ի Տէր զՅովհաննէս վարդապետն, որ զաւրինակն շնորհեաց ... նաեւ զեղբայրն իմ ըստ հոգւոյ զԳրիգոր կրաւնաւորն եւ զատացաւղ գրոցս զՋանազիզ վարդապետն եւ զկենակիցն իւր զՄինա խաթուն (եթէ Մինա խաթուն դեռ կենդանի է վարդապետն կարդալու է վարպետն) եւ զհանգուցեալ որդիքն իւր զՄկրտիչ եւ զԱստուածատուրն» ... Գրիչն է Յովհաննէս, որ է «Ծեր եւ ծանրացեալ աչաւք» (Ակինեան, Հաւաք. Յիշատ. Cod. Arm. Laz. 8. f. 582)։

Աստուածատուրի յաջորդած կրնայ ըլլալ ՊԵՏՐՈՍ հայրապետ, որ 1491ին կը մեռնի, ինչպէս իր տապանագրէն յայտնի է «Այս է հանգիստ Պետրոս հայրապետին, թուին ՋԽ» (Թ. 239, էջ 122, Արարատ 1887, էջ 72, Արձագանք 1884, էջ 628)։

Անոր մասին անդրադարձ տեղեկութիւններ կը պակսին։ Ապա իրարու յաջորդած կ՚ըլլան ԳԷՈՐԳ եպիսկոպոս, ՅԱԿՈԲ, ՎԱՐԴԱՆ մեկնիչ քաջարան, ՌՈՒՍԻՆՈՍ, ԲԱՐՍԵՂ եւ ԳՐԻԳՈՐ առաջնորդները։ Այսպէս՝ Երզնկեանցի համեմատ (Արարատ 1887 էջ 264)։[13]

Պետրոսի յաջորդ ընտրուած է ՅՈՎՀԱՆՆԷՍ[14], որուն օրով 1494ին Խաչատուր արեղան կը գրէ Տարականոց մը (Ակինեան, անդ, Թ. 1627)։

Դարձեալ նոյն թուականին «Եղեւ գրաւ գրչութեան ... ի սուրբ եւ ի հռչակաւոր ուխտս Հաղբատու ընդ հովանեաւ կաթուղիկէիս եւ աստուածընկալ սուրբ Նշա-

---

[13] 1488ին Վարդան Աւետարան մը կը գրէ «ի յերկնահանդէտ եւ գերհռչակ ուխտս Հաղբատ» (Էջմիածին, ամսագիր, 1950, Թ. ԺԱ—ԺԲ, էջ 84)։

[14] Գանձարանի մը մէջ կը մաղթուի «Զաւակաւաշխատող զՙՏնատիրս եպիսկոպոս Հաղբատացի յիշեցէք ի սուրբ յաղաւթս» (Ակինեան, Հաւաք. Յիշատ. Երեւան, 354։ Հաղբատ գիւղէ՞ն է սա թէ Հաղբատ վանքի անծանօթ առաջնորդ մը երեւան կու գայ։ — 1498ին «ի սուրբ ուխտս ի Հաղբատ առ ոտս Տեառն Սարգիս կաթողիկոսի կը գրուի Մաշթոց մը (անդ էջմ. 1084, հմմտ. Կարենեան, Ցուց. էջմ. 1055)։ — «Ծաղիկ»ի մէջ (1898, էջ 438—439) կայ՝ «ի ժամանակս փայտչահութեան Ղուստյբանտին եւ ի թագաւորութեան Վրաց Սիմըն թագաւորին (ուստի 1619—1630 թուականներուն) որ նա աւերեաց Լոռի եւ զվանորայս եւ գերացոյց բազում անօթս եւ զրեանքս եկեղեցեաց։ Ես Տուրեցի պարոն Փիլոյի որդի պարոն Բայինդուրս ի հալալ արդեանց իմոց գնեցի սուրբ Աւետարանս եւ զարծայթած արակաքըն Հաղբատայ, այլ եւ ետու ի դուռն Հաղբատայ սուրբ Նշանին վասն յիշատակի հոգւոյ իմոյ»։

նխս եւ այլ սրբութեանց, որ աստ կան հաւաքեալ ի հայրապետութեան Սարգսի Հայոց կաթողիկոսի եւ ի դանութեան Թաւրիժի թաղափ Ռըստամ բէկի ... սան բէկին: Եւ յառաջնորդութեան սուրբ ուխտիս տէր Յոհաննէս արհիեպիսկոպոսին եւ միեղէն եղբարցս: Արդ գրեցաւ Մաշտոցս ձեռամբ յոգնամեղ եւ անարհեստ դրչի սուտանուն աբեղայի, որ անուամբ միայն եմ եւ ոչ գործով: Ես Յակոբ քահանայս եսու գրել զՄաշտոցս ի հալալ ընչից իմոց ի վայելումն անձին իմոյ եւ յիշատակ ինձ եւ ծնողաց իմոց եւ մաւրն իմոյ Շամամին» (Ակինեան, անդ, Երեւան, Թ. 455):

Գրեթէ ամբողջ դար մը Թանձր խաւար մը կ՚իջնէ Հաղբատի պատմութեան վրայ եւ այդ խորհիլ կու տայ Թէ վանքը ծանր օրեր անցուցած պիտի ըլլայ:

Արձանագրութենէ մը կ՚իմանանք Թէ 1586 ին[15] առաջնորդ է Մատթէոս. «բայց ամք առաջնորդութեան նորա անյայտ, նոյնպէս եւ նախորդն», բայց յաջորդը հաւա-

---

[15] Վասիլ քահանան 1594ին իր դրած Յիշատակագրութեան մէջ կը գրէ «Քանզի աւրինակեցաւ դա ի Սափեստոս Սարկաւագ վարդապետին յաւրինակէն.. գնացի հետի իմով ի վանքն նորուն եւ համբուրեցի զերկնային գանձարանն, զկենդանի եւ զոժչկարաչի զերեզման նորա եւ առեալ զնորա սաղմոսարանն եդի ի վերայ աչաց իմոց եւ որպէս էր բանքն այն սոյնպէս գրեցի անթերի» (Սիւրմէեան, Ցուց. հայ. Ձեռ. Հալէպի Ա. էջ 124—125):

նական Թուլի Թէ է՛ Կիրակոս, զի «մերձ է ժամանակաւ» (Յովհ. Ղրիմեցի, Թ. 239 էջ 122):

Կիրակոսի գործունէութիւնը կը մնայ անծանօթ, միայն անոր մահը ծանօթ է. այդ կը հանդիպի 1629ին, ինչպէս իր տապանագիրը կը ցուցնէ «Կիրակոս տեղոյս Թուին ՌՀԸ» (Թ. 239 էջ 123 եւ Արարատ 1887, էջ 72):

Անոր յաջորդած կ'երեւայ Մինաս: 1641ին «Արդ եղեւ գրաւ աւարտ Աւետարանիս ի Թուին Հայոց ՌՂի ի դաւազանութեան Հայրապետաց սուրբ Նշանին Մինաս վարդապետին...» (Կարենեանց, Ցուցակ. էջմ. Թ. 1848):[16]

Անիկա 1649ին նորէն կը յիշուի «Փառք աւարտեցաւ ... ի քաղաքն Տփխիս ի դուռն Փեթլայիմու սուրբ Աստուածածնայ ... ի Թագաւորութեան Վրաց տան Բագրատունեան ազգէ Ռոստոմ խանին, զոր ընդ երկար պահեսցէ Տէր Աստուածն ամենայնի: Եւ ի հայրապետութեան սուրբ Էջմիածնի Տեառն Փիլիպոս կաթողիկոսին եւ յառաջնորդութեան Հայրապետաց Մինաս բարունապետին ձեռամբ ... Սարգիս իրեցի ... ի խնդրոյ Ճահպարոնին» (Ակինեան, Հաւաք. Ցիշատ. Երեւան 24):

---

[16] 1643ին Յովհաննէս կրօնաւորը կը գրէ Հաղբատի մէջ Դաւթի Սահմանացը (Կարենեան, Ցուց. Էջմ. Թ. 1848):

*Մինասի պարապ թողուցած գահին վրայ կը բարձրանայ* ԱԻԵՏԻՍ, *որ ծերերու աւանդութեան համաձայն կը պաշտօնավարէ* ԲԱՐՍԵՂ*ի հետ* (*Թ*. 239 *էջ* 124)։ *Արձանագրութեան մը մէջ կայ «Յաւաջնորդութեան Թումանի որդի Բարսեղ եպիսկոպոսի եւ Աւետիս եպիսկոպոսի Հաղբատայ եւ Թիֆլիսցի խօճայ Մարութենց Յակոբ տվի ի դուռն Հաղբատայ սուրբ Նշանին մէկ դանդակս յիշատակ հօրն իմոյ Գուլասպին, թուին ՌՃԴ»* (*անդ էջ* 123)։

*Աւետիսի մասին ունինք «Փառք ... կատարեցաւ խնդրածս յԱւետիս եպիսկոպոսիս եւ միաբանացն ամենեքեան, որ է առաջնորդ Հախբատայ սուրբ Նշանիս. յիշեցէք ...։ Դարձեալ յիշեցէք հոգեւոր մայր մեր Աղիզ ապաշխարողս, որ շատ աշխատանք ունի այս սրբոյ դասնս ...։ Զվերջին կազմող մեղայպարտ եւ սուտանուն Գարիանէ ապաշխարաւղս յիշեցէք եւ Աստուած զձեզ յիշէ, եղբարք իմ թողութիւն շնորհեցէք ինձ աչքս վատայտես էր, խիստ խաղաղութիւն էր ժամանակս թագաւորութեան Առեստում խանին էր, առաջնորդութիւն էջմիածնայ Տեառն Յակոբայ որ երեկ Վրաստուն Թիպլիս քաղաքն Ե. ամիս եկայ եպիսկոպոսունք ամենեքեան յինքեան ունէր, չէն կենայ դարձաւ ուրախութեամբ աթոռն իւր, որ շինել էր,*

յԱւետիս եպիսկոպոսն, եկեղեցին իւր եւ խիստ աշխատեցան ամենեքեան յիշեցէք ...թվին (Ռ (ՃՁ)» 1657, Ակինեան, Հաւաք. Յիշատ. Երեւան Թ. 207):

Աւետիս[17] վանքին պարիսպը կը նորոգէ եւ ուրիշ վերշինութիւններով կը զբաղի: Հողային հարցի մը առթիւ 1660ին սպանութիւն տեղի կ'ունենայ «Ի Հախրատայ տիրոջէ եւ կամակցութեամբ Աւետիս եպիսկոպոսի» (Conybeare, Cat. Brit. Mus. էջ 302):

Իսկ 1663ին Աւետիսի օրով Դսեղի մէջ կը գրուի Աւետարան մը (Մառ Ն. Ցուց. Ձեռ. Սեւանայ, էջ 43): Ապա՝ շատ ժամանակ յետոյ 1675ին սրբասէր եւ հեղահոգի տէր Աւետիս արհիեպիսկոպոսի տանն կը գրուի Մաշտոց մը (Ակինեան, անդ Թ. 78):

Հետեւեալ կարեւոր Յիշատակագրութեան մէջ արդէն կը յիշուի ԲԱՐՍԵՂ.

«Ես ամենամեղս ... Զաքարիա լոկ անուամբ եւեթ հանդիպեալ ի կարգս սպասաւորաց բանի ըստ վարդապետական ձեւոյ ... բազում ամաւք ... ցանկութիւն ի մտի կալեալ կարի փափագմամբ ստանալ զգիրս արարողութեան ըստ եւթեանց խորհրդոց սուրբ եկեղեցւոյ արարեալ եւ

[17] ԺԵ. դարուն ծանօթ է Աւետիս եպ. Հաղբատացի գրիչը, որ Երուսաղէմ ապրած է (Ադաւնունի, Հայ Երուսաղէմ, էջ 40—41):

եղեալ ի մէջ հայասեր ազգի սուրբ վարդապետին Մաշտոցի Սեւանցւոյ. որ էր եղծեալ խառնակութեամբ այլեւայլ կերպից արարողութեանց եւ ի բազումս ի նոցանէ կորուսեալ եւ անհետ արարեալ ի թուլութենէ եւ յանհոգութենէ բազմաց: Իսկ իմ յոլովագոյն աշխատութեամբ ի խնդիր ելեալ խնամօք եւ ողորմութեամբ ամենազաւրին գտեալ զբովանդակն եւ ի մի վայր հաւաքեալ, որպէս եւ տեսանի ի սիրելութենէ ձերմէ: Եւ վարձատրութեամբ բարեպաշտ եւ մեծահաւատ ... պարոն խոճասայրն, զի յորդորեցաք զնա եւ տուաք զբել ի հալալ եւ յարդար վաստակոց իւրոց եւ եդաք յիշատակ անջինջ ... ի դուռն եւ ի ծոց գերահռչակ եւ մեծավայելուչ Ամատունեաց սուրբ Կարապետիս Յովհաննավանից, որ է ի յատն Արագածու սուրբ Աստուածածնիս եւ սուրբ Կաթուղիկէիս ... բայց գիտասցէ սիրելութիւն ձեր, զի որպէս գրեցաքն ի վերոյ վա՛ն բազում պատճառաց ելաք ի խնդիր վասն ժողովման սուրբ գրոցս, մանաւանդ սակս երկուց հարկաւոր պատճառաց, քանզի սովորութիւն է ի մէջ կարդացողաց ազգիս մերոյ, զի այնոքիկ, որ աշակերտք են գրոց եւ անուանի վարդապետք անհոգացեալ եւ անվարժ գոլով իբրեւ զհեշտ ինչ համարեալ զարարողութեան կարգ սորա, ոչ երբեք հողան, բայց ի ժամու կատար-

*ման գործոյն անհմուտս երեւին: Իսկ տգէտքն եւ անուսմունքն ի գեղջկաց եւ յաշխարհիկ քահանայից ոչ երբեք գիտելով ընաւ զկարգ սուրբն արարողութեանց, որպէս գիտէին այնպէս աներկիւղածութեամբ վարէին: Վասն որոյ հաւաքեալ ի միասին գրովանդակ չարժմունս կարգաց ըստ իւրաքանչիւր յաճախութեան գնացից, եղաք ի ծոց մարս լուսոյ վերոյգրեալ սուրբ Աթոռոյս՝ զի սովաւ ի ձեռն առեալ անվթար եւ թարց խառնակման զկարգաւորութիւն օրինաց յառաջեցուցեալ բարեպէս վարեսցին բարւոյն կամեցողքն … Սկսեալ եղեւ ի ժամանակս թագաւորութեան Պարսից Շահաբասի երկրորդի եւ ի հայրապետութեան սրբազան կաթողիկոսին Հայոց Տեառն Փիլիպպոսի Աղբակեցւոյ, որ է փոխանորդ եւ աշակերտ Տեառն Մովսէսի Տաթեւացւոյ կրկին Լուսաւորչի հայկազանս տոհմի եւ իմոյս վարժապետի եւ հոգեւոր երկամբք դաստիարակողի: Բայց կատարեցաւ յամի ՌՃ հնգին թւոց յաւելուածի ի ժամանակս Տեառն Յակոբայ նորունց փոխանորդի Ջուղայեցւոյ: Որ եւ մեք … չոգաք ի Շոշ քաղաք որ այժմ ասի ըՍպահան, եւ անդ մեծաւ աշխատութեամբ եւ բազում երկունս կրելով ի տեղեաց տեղեաց գումարեալ գրագում աւրինակսն հաւաքեցաք ի մի տասն ամաւ հազիւ թէ կատարումն առնելով, սակս գաղափարացն առձեռն պատ–*

*րատ ոչ գտանելոյն եւ անտի դարձեալ եկաք աթոռ մեր եւ ի վանս մակագրեալ Ս. Յովհաննու որ էր հանգստարան մեր եւ տեղիք բնակութեան: Բայց ի վաղ ժամանակաց էր խախտեալ եւ հնացեալ բովանդակ շինուածքն սուրբ եկեղեցեացն եւ ոմանց ի նոցանէ փայտիւ գտանիւն ծածկեալ: Որ եւ օգնականութեամբ Աստուծոյ վերստին նորոգեցաք մեծապայծառ ճոխութեամբ զբովանդակ հնութիւն սրբոց եկեղեցեացն գեղեցկապէս յօրինմամբ: Նաեւ տունս գեղեցկաշէնս եւ սենեակս ըստ բաւականի հաստատեցաք, ի ներքուստ կողմանէ շուրջ զպարսպաւն եւ զայգիս եւ զմիւլքս եւ զանդաստանս եւ զբովանդակ ջուլխս կենդանեաց ի Թագաւորական հարկաց ի դուրս հանեալ ազատեցաք, նոմոսաւ եւ կնքով հաստատեալ: Դարձեալ ... յիշեսջիք ... զաշակերտեալ որդեակս եւ զմանկունս զՅովհաննէս վարդապետն, որ է յաջորդ իմ եւ փոխանորդ ի սուրբ աթոռս ի կենդանութեան իմում եւ ի մահուան եւ զԲարսեղ եպիսկոպոսն մեծահռչակ սուրբ աթոռոյն Հաղբատայ, յապատ տանէ, եւ զԹաչատուր վարդապետն առ Տէր հանգուցեալ եւ զփոքրիկ տէր Մովսէս սպասաւոր ծերունոյս եւ զայլ համաւրէն դաս աբեղայից եւ սարկաւագաց եւ զմիաբանելոց բազմութիւնս, որ աստ հաւաքեալ կան ի ծոց սուրբ աթոռոյս» (Ակինեան*

Հ. Ն. Հաւաք. Ցիշատ., էջմ. 953)։

Բարսեղ՝ Թումանեան զարմէն է եւ պաշտօնակից կ'ունենայ Փիլիպպոս արքեպիսկոպոսը, ինչպէս կ'երեւայ սա յիշատակագրութենէն՝

«Փառք ... անպիտան Թումայ սուտանուն գպիրս գրեցի սուրբ Աւետարանս ի գեօղս Աղթալայ ի դուռն նահատակացն Սահակայ եւ Յովսէփայ եւ այլ սրբոցն որ աստ կան հաւաքեալ ...։ Աւարտեցաւ գիրքս ի թվին Հայոց ՌՃԼԱ – 1682 – ի հայրապետութեան Հայոց Տեառն Եղիազարի, որ է աւարտ գրոյս նստաւ յաթոռ։ Ի յառաջնորդութեան սուրբ ուխտիս Հախպատայ տէր Բարսեղ[18] եւ տէր Փիլիպպոս արհեպիսկոպոսացն։ Արդ յիշեցէք զիս զանպիտանս եւ զհայրս եւ ուսուցիչն իմ Սարգիս քահանայն, այր արհեստիւ, որ տեղեակ իսկ է հին եւ նոր Կտակարանացն

---

[18] «Գիր աղերսանաց գրեալ առ Եղիազար կաթողիկոսն ի միաբանիցն սրբոյ էջմիածնի ի սուրբ Երուսաղէմս» (հմմտ. Մխիթարեան Խ. Վ. Համառօտ պատմ. Երուսաղէմի, էջ 107—111) գրութեան ստորագրողներէն են՝ «Ես Բարսեղ վարդապետս Հաղբատցի, ես Սահակ վարդապետս Մակուեցի... ես Սարգիս վարդապետս Հաղբատցի» (Պօղարեան Ն. Եպ. Մայր ցուց. հայ Ձեռ. Ս. Յակովբեանց Բ. էջ »()։ — «Աօրնթեր հանդստարանի Աւետիս եպիսկոպոսի յանդիման ժամատան Հաղբատայ յարեւմտից առ արտաքին պարսպաւ կայ՝ «Այս է հանգիստ Բարսեղ եպիսկոպոսի. ես էի յազգէ Թումաների, որ բազում ամս ի յաստ կացի եւ զկեանս իմ աստ անցուցի. ԻԵ. ամ առաջնորդ կացի, Թուին ՌՃԾԲ» (1703, Թ. 239, էջ 124)։

եւ մայրն իմ Հերիքնազան եւ կողակիցն իմ Լալփէրօզն եւ եղբարքն իմ Թամազն, Առաքելն. Դաւիթ» (Ակինեան Հ. Ն. Հաւաք. Յիշատ. 1682) ։

Նոյն տոհմէն Բարսեղի կը յաջորդէ Թովմաս եւ «Վարէ զիշխանութիւնն առաջնորդական ամս իբր երկոտասան» (Թ. 239 էջ 124) ։

Թովմասի մահէն վերջ Հաղբատի հայրապետական աթոռը կը բարձրանայ Գրիգոր «Ի Տփխեաց, Սուրկունեան մականուանեալ, որ եւ Պարոն տէր յորջորջեալ պատուոյ անուամբ ... Սա բազմաշխատ եղեւ ի ճոխացուցանել զայս մենաստան ամենայն կարեւորօք» (Յովհ. Ղրիմեցի, Թ. 239 էջ 124—125) ։ Անոր առեն քաղաքական կարեւոր անցքեր տեղի կ'ունենան հայ աշխարհի մէջ եւ ան պարագաներու համաձայն իրեն յանձնուած նաւը կը ղեկավարէ ։

Գրիգորի թաղումէն[19] յետոյ «Զաքարիա Պարթինեան ի քաղաքէն Տփխեաց ... յաջորդէ զառաջնորդութիւն ուխտիս անձամբ զրաւեալ զայն, զի ոչ ոք ի քահանայից, յիշխանաց եւ ի ժողովրդոց քաղաքին հաճ եւ հաւան էր ընդ առաջնորդութիւն նորա

[19] Ի Թիֆլիս՝ տապանագիր Գրիգոր առաջնորդի «Այս է հանգիստ աշխատաւոր սուրբ ուխտիս առաջնորդ Գրիգոր վարդապետի Թիֆլիսեցւոյ ի թուին ՌՄ» (1751, Թ. 239, էջ 127) ։

եւ ինքն իսկ չեւ եւս էր ձեռնադրեալ եպիսկոպոս: Այսու օրինակաւ եկաց նա ընդ ամս ինչ ի նմին իշխանութեան ընդդէմ կամաց հատարակութեան, մինչեւ ապա ի զօրանալ չփոթի եւ հակառակութեան ի մէջ նորա եւ ժողովրդեան, բռնութեամբ արտաքսեն զնա ի քաղաքէ անտի եւ նա չկարացեալ առնել ինչ եւ չկացեալ ուրեք ի մերձեկայս դէմ եդեալ գնայ ուղղակի ի հեռաւոր աշխարհ Պարսկաստանի» (Թ. 239 էջ 130): Հոն Քէրիմ խանին պաշտօնեաներէն մէկը բաժելով՝ անոր շնորհքին կ'արժանանայ եւ անկէ Յակոբ Կաթողիկոսին թուղթ մը կը ստանայ, որ զինքը եպիսկոպոս ձեռնադրէ: Կ'անցնի էջմիածին եւ կաթողիկոսը խանին բաղձանքը կը կատարէ: Զաքարիա իբրեւ եպիսկոպոս կը դառնայ Թիֆլիս, ուր կը ներկայանայ Հերակլ Թագաւորին, որ զինքը մեծապէս կը յարգէ: Այս տեսնելով Հաղբատացիները, մանաւանդ որ անոր հանդէպ եղած ատելութիւնն ու գրգռումն այ նուազած էր, զինքը կ'ընդունին իբրեւ հօտապետ: «Եւ նա այնպէս վարեաց զիշխանութիւն առաջնորդական մինչեւ ցմահ իւր, կացեալ յառաջնորդութեան ամս իբր տասն եւ ինն ի մահուանէ անտի Գրիգորի եւ ի ՌՄԺԹ Թուականին Հայոց. յամի Տեառն 1770 վախճանի ի քաղաքի անդ ի Տփխիս եւ թաղի ի կաթուղիկէ եկեղեցւոջ

հանդէպ բեմի սեղանոյն» (Թ. 239 էջ 132)։ Բայց դեռ երկու խօսք։

Զաքարիա առաջնորդը[20] «Կամէր յափըշտակել անիրաւութեամբ զԹեմս Սանահնոյ եւ Աղարծնոյ», բայց, Ղազախցիները Սիմէոն Կաթողիկոսին բողոք կը ներկայացնեն եւ բացայայտ կ՚ըսեն «թէ տայցես եւս զմեզ Զաքարիա վարդապետին, մեք նմա ոչ եմ ծառայելոց» (Դիւան Գ. էջ 138)։

Սիմոն կաթողիկոսը[21] թէեւ Ղազախցիները կը յորդորէ Զաքարիայի ընդդիմանալ եւ անոր մարդիկը չընդունիլ, սակայն յետոյ Զաքարիային, որ Հերակլ Թագաւորին սիրելին էր եւ անոր վրայ իր յոյսը դրած էր «Եւ եւ զօրբոյ Աթոռոյս Թեմի եւ զՍանահնոյ Թեմի առաջնորդութիւնս եւ զնուիրակութիւն ամենայն երկրին մինչեւ ցերիս ամս» (անդ էջ 533)։ Բայց այդ կ՚ընէր իբրեւ ուրո՛յն վանքի եւ ոչ թէ Հաղբատի ենթարկուած վանքի մը,

---

[20] Ճինարարական գործունէութիւն ունեցած է (Դիւան, Թ. էջ 215—217)։

[21] Զար լեզուներ կը գրպարտեն թէ «ԶՀախպատու արդիւնան զաւթել կամի սրբազան վեհն (Սիմէոն), (զոր ան կը հերքէ) եւ Փուսուլոյ եւս գրեաց առ սա սրբազան վեհն ասել արքային, զի վասն Հախպատու արդեացն զմէկ կարդեացէ զանձապետ, եւ կամ Առաջնորդին յանձնեացէ, զի զարդիւնն Հախպատու ժողովեալ առ ինքն պահեացէ, զի մի ոք ձեռնամուխ լիցի նմա եւ յետոյ ինքն որպէս կամիցի այնպէս արասցէ» (Դիւան Ը. էջ 284—285, հմմտ. էջ 593)։

ոստի եւ անոր անկախութիւնը կը պահուէր (անդ էջ 138, 268 եւ 710)։

Սիմէոն կաթողիկոսի կամքն էր նոյն իսկ, որ Զաքարիա Հաղբատի առաջնորդութեան տիտղոսէն հրաժարի եւ «տէրունի լիցի թեմն Հաղբատու, որովհետեւ այժըմ աւերակ կայր սուրբ վանքն (ըստ որում Աղէքսանդր սրբազան հայրապետն արարեալ էր տէրունի, վասն աւերելոյ վանիցն») եւ լոկ Թիֆլիզի առաջնորդ կոչուի։ Սակայն Հերակլ թագաւորը, Զաքարիա առաջնորդը եւ ժողովուրդը (Թիֆլիզի) «որք Հախպատու էին թէմ» այդ տրամադրութեան եւ որոշումին կը հակառակին. «Ասէին զանուն առաջնորդութեան Հախպատու ոչ կամիմք թէ պակասեսցի ի միջոյ մերմէ, այլ ի քաղաքս ի միջի մերում նստցի, որքան աւեր կայ սուրբ վանքն» (անդ էջ 532)։ Այս հարցը Յակոբ կաթողիկոսի ատեն ալ յարուցուած է (անդ էջ 532)։

Զաքարիայի մահէն վերջ Հաղբատի եւ Տփխիսի առաջնորդութիւնը կը ստանձնէ 1771ին Ռէթէոս, որ «այր հեզ եւ առաքինի» է եւ հինգ տարի պաշտօնավարելէ յետոյ կը քաշուի Էջմիածին, ուր ծեր հասակին մէջ կը մեռնի։ Անոր օրով Մխիթար քալանթար «Գայ նախ ի Հաղբատ՝ եւ մտեալ զառաջինն յաւագ եկեղեցին սուրբ Նշանի երկրպագէ ի նմա բարձրե-

լոյն Աստուծոյ եւ ապա հայեցեալ ի խրթնութիւն նորա եւ յանչքութիւն, զի այր աւազակաց էր լեալ ի բազում ժամանակաց հետէ յամայութեան կալով ... զի աղտեղեալ էին բովանդակ եկեղեցիք ուխտիս յաւազակաց անտի եւ բազմութիւնք բուսոց եւ թփոց խիտ առ խիտ բուսեալ զնոքօք ծածկեալ ունէին զգլուխս նոցա եւ զորմունս առհասարակ, փաղփաղակի հրամայէ բազմութեան արանցն սրբել եւ մաքրել եւ զամենայն բոյսս եւ տունկ առհասարակ յարմատոց խլել: ... շրջեալ ապա ի գնին համօրէն տեղեացն եւ անկեանց մենաստանիս եւ մատրանցն եւ խորանաց, գտանէ զերկոսին վերանխորանս սուրբ Գրիգոր եկեղեցւոյ լի անհամար գրչագիր եւ երկաթագիր հնագոյն մատենիւք, նոյնպէս եւ զչորեսին խորանս միջնայարկի զանգակատանն, յորոց զբազումս ի վայր բերեալ զննէ միասմի եւ անդէն ի տեղիս իւրեանց ամփոփէ ...» (Բազմ· 1956, էջ 108, Թ· 239, էջ 132—134):

Զաքարիա իր առաջնորդութեան ամբողջ շրջանին Տփխիս կը բնակի եւ որքան կ՚երեւի Հաղբատի վանքով շատ չի հետաքրքրուիր: Նաեւ Ռէթէոս հոն կ՚անցնէ իր տարիները եւ անկէ կը կառավարէ վանքը, որ գոնէ Մխիթար Քալանթարի նման անձի մը խնամքին կ՚արժանանայ:

Ութէթէոս անշուշտ ցաւով կը տեսնէ այն ասպատակութիւններն ու աւերումներն ու աւարումները, որոնք Նատըրշահի մահէն ետքը սկսան՝ եւ շարունակուեցան: Անոնց հարուածները հասան նմանապէս Հաղբատի եւ ան մնաց առանց առաջնորդի, զի առաջնորդը կամ ճշդագոյնս առաջնորդները, ինչպէս տեսանք, այդ շրջանին Տփխիս ընտրած են իրենց բնակութեան վայր (Հմմտ. Բազմ. 1956, էջ 108—109):

Ութէթէոս Աշտարակեցի Գօլօշեանցի կը յաջորդէ Աբրահամ Թէֆիրտաղցի 1777ին Հերակլ Թագաւորին հրամանով-զանիկա «Հաճեցուցեալ էր երեւելի ընծայիւք» (Բազմ. 1956, էջ 109 եւ Թ. 239, էջ 135—137): Ձեռներէց է եւ իր անունը կ՚ուզէ որ ապագայ սերունդը օրհնութեամբ յիշէ, ուստի եւ երեսուն տարի անխնամ մնացած եւ հետեւաբար շատ վնասուած վանքը կը ցանկայ վերանորոգել, մանաւանդ որ ժամանակն ալ նպաստաւոր էր, «Քանզի ի ՚նմին ժամանակի նուաղեալ էին արշաւանք եւ ասպատակութիւնք» (անդ էջ 109): Նորոգութեան համար կը գործածէ ժողովուրդէն ստացած նպաստները եւ իր անհատական սեպհական դրամները, բայց անոնք շուտ կը սպառին եւ դրամի կարիքը զինքը կը նեղէ եւ քանի մը ծրագիրներու գործադրութեան արգելք կ՚ըլլայ: Ան «Ձեռն ի գործ առնէ եւ շինէ

զկրկնայարկ առաջնորդարան գեղեցիկ ի հիւսիսակողմն նշխարատան հարուստ մի բացագոյն առ որմով հնագոյն սեղանատանն . . . եւ զայլ սենեակս ինչ յայլեւայլ պէտս :» Ապա դրամի պակասութիւնը զինքը կը ճնշէ եւ «Սկսաւ որոնել զպահարանս եւ զամենայն վայր եւ անկիւն բանալով եւ քանդելով առ ի գտանել զպահեստ ինչ երեւելի, Թաղուցեալ ի ժամանակէ անտի Սուրկունեան Գրիգորի, բայց ոչինչ կամ սակաւ ինչ չահէր անդուստ եւ ոչ որպէս ակն ունէր, բաւական ինչ յօժանդակութիւն գործոյն :» (անդ էջ 109) :
Անոր փնտռտուքներուն կ՚օժանդակէ իր Պետրոս սարկաւագ փոքրաւորը, որ ագահ ըլլալով եւ ճարպիկ, «Մոլեալ ի սէր գանձուց եւ տուեալ քան զվարդապետ իւր վառեալ ի խնդիր նոցա, ոչինչ վայր եթող, զոր ոչ բրեաց եւ ոչինչ շինուած, զոր ոչ խախտեաց, որոց խախտուածք երեւին մինչեւ ցայսօր» (անդ էջ 109) :
Երանի՛ թէ այսքանն ըլլար անոր անկուշտ ագահութեան վնասը : Շարունակենք ցաւով · «Այլ ոչինչ օգտեալ ձեռն արկանէ ապա ի բազմադարեան պահարանն կամ ի քարայրն գրոց եւ մատենից ուխտիս որ կայ յարեւմտից մենաստանիս . . . բացագոյն ի վանացս իբրու քառորդիւ ժամու, յորում էին ըստ պատմելոյ ականատեսից անհամար գրչագիր եւ երկաթագիր հնա–

*գոյն եւ ընտիր մատեանք մեծամեծք եւ փոքունք ի յոլով դարուց ժողովեալք, թող զմատեանսն որք կային ի վերնախո- րանս եկեղեցւոյն սրբոյն Գրիգորի եւ զան- գակատանն: Այս այն քարայր է, առ որ յաճախէր միշտ Յովհաննէս սարկաւագ վարդապետն յընթերցումն գրոց, որպէս գրէ Կիրակոս ի վարս նորա: Եւ ահա զայնչափ բազմութիւն մատենից, չգիտեմ յինչ պատճառս Աբրահամ վարդապետ ամսօրեայ ժամանակօք աշխատեալ ընդ սար- կաւագի խորում, բովանդակ ի վայր իջու- ցանէ եւ բերեալ ստա ի վանքս դնէ ի ներքնայարկն զանգատան եւ յոչ բաւեալ տեղւոյն զբովանդակն տանել, լնու եւ յայլ զանազան տեղիս ի խորանս եւ ի մատրունս, յորմէ օր ըստ օրէ պակասեալ ցրուեալ եւ յափշտակեալ ի գողոց եւ յա- մենեցունց, որոց միանգամ հասին ձեռք. այժմ եւ ոչ տետրակ մի ի նոցունց երեւի ի միջի չգիտեմ թէ զիա՛րդ կորեան կամ անհետ եղեն այնչափ անհամար մատեանք, մանաւանդ ստուարադոյնքն ի նոցանէ եւ առաւել մեծամեծքն: Ասի յականատեսից թէ վերոյիշատակեալ Պետրոս սարկաւագ զհոլովս ի մատենից անտի, որ փտեալք էին ըստ մասին կամ ցրուեալ ի թերթս թերթս եւ ի տետրակս, ժողովեալ առհա- սարակ հանդէպ զանգատան իբրեւ տասն կամ երկոտասան ոտնաչափ թանձրու-*

թեամբ, հուր չարկ եւ այրեաց զամենայն իբրեւ զանպիտանս» (անդ էջ 109—110, Հմմտ. նաեւ Արարատ 1887, էջ 68—69)։

Սիմէոն կաթողիկոսի մահուան եւ Ղուկաս կաթողիկոսի յաջորդութեան ժամանակաշրջաններու Աղուաններուն Իսրայէլ կաթողիկոսը «պարագաներէն օգտուելով կ՚անցնի Հաղբատ — գաղտնի դիտաւորութեամբ «զնա— Հաղբատ— ինքեան տեղի բնակութեան» ընելու (Դիւան Դ. էջ 17 եւ 39)։ Եւ իր նպատակին կը հասնի որոշ գիջումներով։ Բայց Գիօրկի Միրզա արքայորդին Ղուկաս կաթողիկոսին կը ներկայացնէ Դաւիթ Թիֆլիզցի վարդապետը փափաքելով որ զանիկա Հաղբատի վրայ եպիսկոպոս ձեռնադրէ։ Ղուկաս կը հաւանի, սակայն պահանջելով Իսրայէլի[22] մեկնումը։ Գիօրկի Միրզա իր խնդիրքը կը կրկնէ եւ էջմիածնի հայրապետը անոր «խաթեր» համար Դաւիթ վարդապետը եպիսկոպոս կը ձեռնադրէ եւ Հաղբատի առաջնորդ կը նշանակէ։ Դժբախտաբար անիկա արքայորդւոյն իր վրայ դրած յոյսերը չարդարացներ եւ իբրեւ վարձկան «ի յառնել Լէզկեացն» վանքը կը պարպէ եւ մինչ այդ առենները քայքայուած ու վնասուած ուրիշ վանքեր կը վերաշինուին, անիկա այլուր կ՚անցնէ իր օրերը։ Բնականաբար Ղուկաս կաթողիկոսը եղածէն դժգոհ՝ «զԴաւիթ սեւազ—

լուխն եւ զմիրր աբեղայն» իր կարգէն կը լուծէ (անդ էջ 579—583)։ Բայց յետոյ Հերակլի բարեխօսութեան ունկընդիր՝ զինքը առաջնորդութեան մէջ կը վերահաստատէ, միայն թէ իբրեւ պատիժ երկու տարի եպիսկոպոսական իշխանութենէ կը կախակայէ (անդ էջ 588—591)։ Կը ցանկայ որ վանքն ու իր թեմը վերատանան իրենց նախնական «բարեկրօն եւ բարեկեցիկ» վիճակը եւ Դաւիթ ալ երկու տարիէն ընդունի «Դարձեալ զպատիւ եպիսկոպոսութեան իւրոյ» (անդ 590—591 եւ հմմտ. Թ. 239, էջ 137—142)։

Դաւիթ դժբախտ առաջնորդ կ՚ըլլայ քաղաքական անհաճոյ դէպքերու պատճառներով եւ կը մեռնի 1796ին (Թ. 239 էջ 142)։[22]

Ղուկաս Կաթողիկոսէն Դաւիթի յաջորդ կը նշանակուի ՍԱՐԳԻՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՋԱԼԱԼԵԱՆՑ, որ Աղուանից Յովհաննէս կաթողիկոսին կրտսեր եղբայրն էր եւ Իսրայէլ կաթողիկոսին ալ ազգական (Դիւան Դ. էջ 6677—6696 Թ. 239 էջ 142)։ Անիկա «Եկաց յառաջնորդութեան ամս ութ, յորս վերանորոգեաց զերկուսին այգիս վանացս, որ ի

---

[22] Յովհ. Ղրիմեցի կը գրէ թէ ականատեսներու վկայութեան համաձայն «Իսրայէլ էր ըստ հանգամանաց անձին բարձրահասակ, փառահեղ, եւ գեղեցկադէմ, այլ եւ վեհանձն, քաղցրախօս եւ առատաձեռն» (Թ. 239, էջ 139)։

Հաղբատաձոր, որք էին աւերեալք եւ ամայացեալք» (Թ. 239 էջ 143)։ Նաեւ Հաղբատի կալուածական իրաւունքները կը պաշտպանէ Զալըէկի ոտնձգութիւններու դէմ (անդ էջ 48, հմմտ. եւ վարը)։

Սարգիսի յաջորդ կ'ըլլայ ՅՈՎՀԱՆՆԷՍ ԱԿՆՑԻ արքեպիսկոպոսը, որ նաեւ առաջնորդ էր «Հայոց Վրաստանու սահմանացն» (Դիւան Դ. էջ 605)։ Անոր հսկողութեան տակ Գրիգոր վարդապետը կը ձեռնարկէ վանքին վերաշինութեան (եւ որ սակայն նախապէս գովելի գործունէութիւն չէ ցուցաբերած, Դիւան Դ. էջ 545—546, 579, 605 եւ Դիւան Զ. էջ 108—111)։[23]

Յովհաննէս որ էր «Այր հանճարեղ, մեծագործ եւ առատաձեռն», կոչուած է «Կենդանի Նահատակ»։ Հազիւ երեք տարի առաջնորդութիւն կ'ընէ մեռնելով արդէն 1811ին, սակայն «Ի սակաւ միջոցի անդ փոյթ մեծ կալեալ նորա պայծառացուցանել զայս ուխտ ձեռն էարկ եւ վերանորոգեաց զգլուխ վերնայարկի զանգակատանն, որ քանդեալ կայր ի վաղուց ի գագաթան նորա կանգնեալ զխաչ գեղեցիկ եւ փառաւոր։ Շինեաց եւ զանգակարան փոքրիկ ի գլուխ արեւմտեան մեծ գաւթի աւագ տաճարին, որ ըստ բոլորովին քանդեալ։

[23] Գանձասարի Սարգիս կաթողիկոսը ժամանակ մը Հաղբատի առաջնորդութիւնը կը վարէ (Րաֆֆի, Խամսայի մելիքութիւնները, էջ 223)։

*Երաց ճանապարհ սայլի մեծ ծախուք ընդ ծոցն Խրամաձորոյ մինչեւ ի գետն Սեւուրդաց ձորոյն, որ այժմ կայ խափանեալ առ անխնամ մնալոյ»* (*Թ*. 239 *էջ* 144)։

*Նկատողութեան արժանի են Դանիէլ կաթողիկոսին Յովհաննէս արքեպիսկոպոսին գրած սա տողերը «Յորժամ առաքեացուք զկոնդակ առաջնորդութեան Հաղբատայ վիճակին նոր իմն թուի սոյն առաջնորդութիւն եւ իրաւն նոր է, քանզի եւ նորոգութիւն բարձրագոյն խորհրդարանի նոր է եւ վասն բարւոք կառավարութեան նորագունից պէտք են, զի հին օրըստօրէ նուազեալ յետին աստիճան խանգարման էած ոչ միայն զսուրբ վանսն Հաղբատ, այլ եւ զսուրբ կաթուղիկէն էջմիածին»* (*Դիւան Ե*. *էջ* 584)։ *Միեւնոյն Դանիէլ կ՚օրհնէ ու կը գովէ Զալ Դաւիթեան Բարաթով եւ անոր կինը, զի Հաղբատի վանքի նորոգութեան եւ պայծառութեան ձեռնարկած են* (*անդ էջ* 545—546, *հմմտ*. *եւ էջ* 583—584)։

«Աստուածատուր արքեպիսկոպոս *Արձախոյ, ձեռնասուն աշակերտ Ղուկաս կաթուղիկոսի յետ մահուն Յովհաննու առաքի ի տեղի նորա յԷփրեմայ սրբազնասուրբ կաթուղիկոսէ առաջնորդ Հաղբատայ եւ Տփխեաց»* (*Թ*. 239 *էջ* 145) *Բայց հազիւ երկու տարի պաշտօնավարած՝ նոյն կաթողիկոսէն կը յղուի Պոլիս, ուսկէ*

*վերադարձին* 1824*ին էջմիածնի մէջ կը մեռնի եւ փառաշուք յուղարկաւորութիւն կ'ունենայ :*

*Աստուածատուրի հեռանալէն յետոյ* Ներսէս արքեպիսկոպոսն Աշտարակեցի *«Յայգէ Կամսարականաց առաքի ի նոյն սրբազանագոյն կաթուղիկոսէ առաջնորդական պարտաւորութեամբ ... ի Թուականի Հայոց ՌՄԿԳ յամի Տեառն* 1814 *յամսեան Փետրվարի : Եւ սա կայ այժմ եւ վարէ զառաջնորդական տնտեսութիւն ինքեան յանձնեալ արխական քաջարթուն զիտողու–թեամբ»* (*Թ*. 239 *էջ* 146) : *Կը ձեռնակէ «ի նորոգութիւն եւ բարեզարդութիւն սրբին մենաստանի», գլխաւորաբար տանիք–ներու նորոգութիւնը զինքը կը գրաղեցնէ ինչպէս արտաքին պարիսպին ընդարձա–կումը : Լայն խորհողութեան եւ ուժեղ կամքի տէր անձ՝ կը ծրագրէ շատ բան ընել*, *բայց* 1827*ին յանկարծ ծագած պա–տերազմը իր ձեռքերը կը կապէ եւ կը ստիպուի սպասել անոր աւարտումին : Անոր առաջնորդութեան իններորդ տարին Եփրեմ կաթողիկոսը Հաղբատ կու գայ, «ուր տատւել քան զամս չորս» կը մնայ*[24]

---

[24] *Հմմտ. Ստ. Օրբէլեանի Պատմութեան* (*Ղու–կասեան Հրտ.*) *Յաւելուածը էջ* 539 : *Երբեմէ յառաջ եւ վերջ Հաղբատ կաթողիկոսական այցելութեան ար–ժանացած է — Սանահինի հետ* (*Հմմտ. Աբրահամ Կաթողիկոսի Կրետացւոյ Պատմագրութիւն անցիցն իւրոց... Վաղարշապատ* 1870, *էջ* 26) :

(Թ. 239 էջ 147—150, ուր եւ պատերազմի ընթացքին մասին մանրամասն տեղեկութիւններ) ։

Ներսէս Աշտարակեցիի առաջնորդութեան շրջանին Հաղբատի մէջ ապրած է Յովհաննէս Սուրէնեան Ղրիմեցին, որ իր ժամանակը կ՚օգտագործէ պրպտումներ ընելով եւ Հաղբատի պատմութիւնը գրելով։ Ան առենադպիրն եղած է Եփրեմ կաթողիկոսի եւ ապա Նոր Ջուղայի Ամենափրկիչ վանքի առաջնորդը ։

Երզնկեան «Արարատ»ի մէջ վերջին դարերու առաջնորդներու անուանացանկը կու տայ այսպէս՝ Ղուկաս կուսակրօն վարդապետ ի թուին Հայոց Ռ., Կիրակոս եպ. Հաղբատայ 1629, Բարսեղ արքեպ. Թումանեանց 1668, Աւետիս արքեպ., Նորաշէն պարխապի եւ կաթուղիկէի, Աբրահամ արքեպ, Հերակլի օրով վանքը կը պայծառացնէ, Դաւիթ արքեպ. Խէրոդինեանց որ կը նստի Թիֆլիս եւ 1779ին կը մեռնի, Սարգիս արքեպ. Կախէթի, ի թուին 1800, Զաքարիա Ծ. Վարդապետ 1810), Զաքարիա արքեպ. Գուլասպեան (անդ 1887, էջ 264—265, հմմտ. Արձ. Թ. 25) ։

Հարեւանցի ակնարկ մը կը ցուցնէ թէ որքան թերի է այս եւ նաեւ բաւական տարբեր ։

Զաքարիա արքեպիսկոպոսը Բէհրուդեան տոհմէն է եւ զբաղած է նաեւ գրելով: Անոր գրչէն են Քարոզգիրք, Վէպ Սեւանայ եւ ուրիշ երկեր[25] (տես Հաղբատի դպրոցը): Անոր մահէն վերջ ըստ նոր կանոնադրութեան Հաղբատի եպիսկոպոսական թեմը կը ջնջուի եւ կ'ըլլայ լոկ վանահայրութիւն, այս է՝ վանահայրը իշխանութիւն կ'ունենայ միայն վանքի միաբաններու եւ գիւղերու վրայ, բայց այս ալ ժամանակաւոր կ'ըլլայ — աւելի ճիշդը փոփոխական՝ պարագաներու պատճառով:

---

[25] Հաղբատի մէջ 1827ին կը գրուի Տաղարան մը (Աճառեան Հ., Ցուց. հայ. Ձեռ. Նոր Բայազէտի, Վիեննա 1924, էջ 52): — Զաքարիա Գուլասպեանի շիրմին վրայ արձանագրած է:

«Էին անեղին ժիր պաշտօնակիր
Տէր Զաքարիաս բարուն անպատիր,
Հովիւ քաջակիրթ աշխոյժ եւ ընտիր,
Արքեպիսկոպոս էջմիածնի ձիր:
Քարոզ սուրբ տառից անխոնջ անձանձիր
Փառաց Արամեանց յար խուզախնդիր
Զարմին Գուլասպեանց վեհ արձանագիր
Տոհմին Բեհրուտեանց ոստ փայլեշագիր
Այլ ահ եւ աւաղ տունկդ բարեգիր
Զխարդ գօսացար մորչ սաղարթակիր
Իններեակ հնգիւք տիօք ծաղկածիր
Ելեր ի կենացս կեանս յանախտակի
Ցեանորդք յարգութեամբ ելցեն ի խնդիր:
Աւաղ զի յարդեացս յանդէտս կացիր
Ողբով անդադար հեծէ վշտակիր
Ծառայ քո Գրիգոր եւ եղբայր կրասեր
Այլ եւ աղեխարշ գառն արտասուալիր
Ընծայէ դրուագս եւ գեղերագիր:

Ի 1835 ամի Ցունիսի 5 աւուրն» (Ազգր. Հանդ. 1901, Է—Ը, էջ 410):

Այդ տեղի կունենայ 1836ին (Հմմտ. Արարատ, 1887, էջ 265 եւ 1888 էջ 76)։

Հաղբատի առաջին վանահայրը կ'ըլլայ Եփրեմ Ծ. Վ. Երզնկեան, որ զայն կը շէնցնէ, ապա իրարու կը յաջորդեն Պետրոս Վ. Շինօղեցի, Աստուածատուր Վ. Շինօղեցի, Յարութիւն Վ. Վահրամեան Օձնեցի, Մովսէս Վ. Մաղաքեան, Թադէոս Վ. Յակոբեան Ախալցխեցի, Յովհաննէս Քհ. Երզնկեան, Հաղբատացի, Առաքել Վ. Քարուանսրեցի, Յովսէփ Վ. Խարազեան, որ թէեւ նոր սենեակներ կը շինէ ու դպրոց ալ կը բանայ, բայց անհոգ առաջնորդ եղած է. «Իր վերին աստիճանի անխոհեմութեան շնորհիւ նա քայքայել է վանքի հնութիւնները. գիւղացիները օգտուելով նրա թուլութիւնից, տարել են դարաւոր շինութիւնների սրբատաշ քարերը եւ իրանց տների վրայ գործ դրել։ Մի քանի խըրճիթների ճակատներում մենք տեսանք մինչեւ անգամ գեղեցիկ քանդակագործուած խաչերի եւ զանազան պատկերների բեկորներ» (Արձագանք 1888, էջ 571)։ Անոր յաջորդը կ'ըլլայ Գեղամ վարդապետը (անդ էջ 571)։ Շինարար առաջնորդ եղած է ՍԵՐՈՎԲԷ ԵՊ. ԱՐԱՐԱՏԵԱՆ, որ 1873ին Դէպէդի վրայ կամուրջ մը երկնցընել կու տայ (Արարատ 1887, էջ 265)։ Ասոնք եւ ասոնց յաջորդներէն ոմանք, որոնց անուանաչարքը հոս յառաջ չենք

բերեր, երբեմն աթոռէն հեռացած կամ հեռացուած են եւ վերստին եկած ու բազմած են անոր վրայ: Չեն ունեցած ակնբախ գործունէութիւն: Թէեւ ժամանակ մը էջմիածնի կաթողիկոսութիւնը մտածած է Հաղբատ վանահայր առաքել Ղազարոս Աղայեան, որ ուզած է վարդապետ ըլլալ, սակայն անիկա մերժած է Գուգարքի մէկ անկիւնը պաշտօնավարել (Արձագանք 1888, էջ 571): Մինչ Դաւիթ առաջնորդի օրով Հաղբատի մէջ կ՛առանձնանայ Սայեաթ Նովա, որ 1795ին կը նահատակուի (Հայ Նոր Վկաներ, էջ 616—618 եւ Ակօս 1957, Թ. 12 էջ 53):

Իբրեւ լրացուցիչ եւ կարեւոր յաւելուած հոս կը զետեղեմ Յովհ. Ղրիմեցիի՝[26]

«Գրակ առանձին

Միահաղոյն ի մի վայր չարակարգութիւն առաջնորդաց Հաղբատայ.

Կարգ անուանց առաջնորդաց ուխտիս յընթացս ճառից գոլով մատնատեալ եւ ի զանազան գլուխս ցրուեալ, պատշաճ դատեցաք աստէն յայս պրակ ի մի վայր չարադասել զնոսին, զի իբր յամփոփ ինչ տեսարանի միանգամայն երեւեսցին յանդ-

---

26 Առաջնորդներէն Նորատունկեան վարդապետը կը սպաննուի (Նոր Դար 1896, Թ. 153): Ալամդարեանի մասին հմմտ. Երիցեան, Կովկասի Հայք, էջ 650—651):

դիման աչաց. եղեալ հանդէպ խուրաքան-չիւրոցն զԹուականս նոցին եւ զամս ըստ կարգի:

Ա. ՆԽ–991 Սիմէոն առաջին վանահայր, որոյ ի յառաջնորդուԹիւն Հաղբատայ ի Խոսրովանոյշ Թագուհւոյ անդէն ի սկիզբն կամ յընԹացս հիմնարկուԹեան ուխտիս, որոյ անմիջական հոգաբարձուԹեամբն իսկ աւարտի շինուԹիւն սուրբ Նշան աւագ տաճարին ի ամին ՆԽ Թուականի Հայոց, յորմէ եւ անդր հաշուեալ ամք առաջնորդուԹեան նորա համարին չորեքտասան, իսկ ի հիմնարկուԹենէ անտի կամ իսկզբանէ շինուԹեան տաճարին աաւելում ամք նորա ցքառասուն եւ անդր:

Բ. ՆԾէ – 1008 – Յովսէփ երկրորդ վանահայր յաջորդէ Սիմէոնի, ամ յաջորդուԹեան անյայտ յիշատակի ի միում եւեԹ արձանագրի ընդ Թուականաւ ՆԾէ, զորմէ տես ի գլ. ԺԵ:

Գ. ՇԼԱ – 1082 – Սարգիս Ա. ձեռնադրի եպիսկոպոս եւ նստի առաջնորդ ի ամին ՇԼԱ Թուականի, յորում ժամանակի այս ուխտ հաստատեցաւ լինել աԹոռ մեծ եւ արքեպիսկոպոսանիստ, յայտնի ամք առաջնորդուԹեան սորին ի Թուականէ անտի ձեռնադրուԹեան նորա եւ անդր երեւին եօԹն կամ ուԹ, այլք յամացն անյայտք:

Դ. ՇՀ – 1121 Յովհաննէս Ա. յիշատակի ի տապանագրի իւրում որպէս եւ

յայլում միակ արձանագրի ընդ թուակա-
նաւս ՇՀ. որոյ վերջին թուագիր է եղծեալ, տես ի նոյն ԺԵ. գլ.:

Ե. ՈԺԵ – 1166 – Գէորգ, յիշատակի է տապանագրի իւրում եւ այն է առանց թուականի, իսկ յայլ արձանագիրս չիք զնմանէ յիշատակութիւն, այլ ի պատմութիւնս յիշատակի թղթակցութիւն նորա ընդ Շնորհալւոյն Ներսիսի շուրջ զթուականաւս ՈԺԵ եւ ի ՈԻԲ թուին. պատմի արարեալ ի նմանէ մեկնութեան Եսայեայ մարգարէութեան, ըստ որոյ յայտնիքն յամաց առաջնորդութեան նորա երեւին եօթն կամ ութ:

Զ. ՈԻԸ – 1176 – Բարսեղ Ա. յաջորդէ Գէորգայ. գտաւ ի մեծ ժողովն Հռոմկլայու որ եւ ասի ժողով Տարսոնի, որ եղեւ ի թուին ՈԻԸ եւ յարձանագիրս յիշատակի առաջնորդութիւն սորա մինչեւ ի թուականն ՈԼԸ ցամն Տեառն 1189, ըստ որոյ յայտնիքն ամաց առաջնորդութեան նորա ինն կամ տասն, այլ թէ ո՞րչափ են ամք նորա նախընթացք եւ հետեւորդք անյայտք:

Է. ՈԽԵ – 1196 – Յովհաննէս Բ. Խաչենեցի, յաջորդ Բարսղի ի ամին ՈԽԵ թուականի առաջնորդ Հաղբատայ գոլով գտաւ ի Հանդիսի նուակատեաց աւարտման շինութեան Գետկայ սուրբ Աստուածածնոյ եկե-

դեցուցն, որպէս պատմէ Կիր(ակոս), զորոյ զրանս տես ի գլ. ԺԵ.:

Ը. ՈԾԴ – 1205 – Գրիգոր Ա. որդի Տուտեայ Խաչենեցւոյ, յաջորդէ ի տեղի Յովհաննու վտարեալ զնա յաթոռոյ իւրմէ, ամ յաջորդելոյն անյայտ, այլ ի ամին ՈԾԴ. Թուականի զոլով առաջնորդ Հաղբատայ զատու ի ժողովն զոր գումարեաց Զաքարէ սպասալար ի Լօռի եւ ի ՈԾԵ թուին խոյս ետ յաթոռոյն. տես ի գլ. ԺԶ.:

ՈԾԵ – 1206 – Յովհաննէս Խաչենեցի, երկրորդ անգամ կարգի առաջնորդ յետ փախստեան Գրիգորի, ի ամին ՈԾԵ Թուականի. ամք առաջնորդութեան նորա յայս նուագ երեւին չորեքտասան կամ հնգետասան ըստ արձանագրաց. ամք նորա վերջին անորոշք:

Թ. ՈՀԶ – 1227 – Յովհաննէս Գ. քեռորդի իշխանացն Զաքարէի եւ Իւանէի, յաջորդէ զաթոռն զկնի Խաչենեցւոյն. ամ յաջորդելոյն անյայտ, ի ամին ՈՀԶ Թուականի յիշատակի առաջնորդութիւն նորա յարձանագրի իւրում ի Սանահին, եւ ի ՈՁԲ թուին, յամի 1233 չինեաց զբերդն Կայանոյ, ըստ որոց յայտնին չորեքտասան ամք առաջնորդութեան նորա առաջին եւ վերջին ամք նորա անորոշք:

Ժ. ՈՂԱ – 1242 – Համազասպ Անեցի իշխանազնեայ, յաջորդ Յովհաննու երրորդի,

յիշատակի առաջնորդութիւն սորա ի բաղում արձանագիրս սկսեալ ի ամին ՈՂԱ թուականէ մինչեւ ցՈՂԸ ցամն Տեառն 1249 եւ Կիրակոս ի թուին ՈՂԹ, յիշատակէ զնա եպիսկոպոս Հաղբատայ՝ ըստ որոյ ամք առաջնորդութեան նորա երեւին ութ կամ ինն։

ԺԱ․ ՈՂԹ – 1250 – Յովհաննէս Դ․ յաջորդէ Բագրատունեաց, յաջորդէ զաթոռն զկնի Համազասպայ ի ՈՂԹ կամ ի Չ թուականին, ամք առաջնորդութեան նորա երկու, ըստ որում զնէ Կիրակոս, որպէս եւ յարձանագրացն յորս Համազասպ յիշատակի, յայտնի երեւի։

ՉԱ – 1252 – Համազասպ դարձեալ, զկնի Յովհաննու Բագրատունւոյ նստի առաջնորդ ի ամին ՉԱ կամ ՉԲ թուականի, առաջնորդութիւն նորա յայս նուազ յիշատակի յարձանագիրս սկսեալ ի վերջին թուականէդ մինչեւ ցՉԶ, ցամն Տեառն 1257, ըստ որոյ ամք նորա համարին իբր հինգ։

ԺԲ․ ՉԶ – 1257 – Յովհաննէս Ե․ Արմանեցի, յաջորդէ զաթոռն յետ Համազասպայ ի թուի ՉԶ․ յիշատակի յարձանագիրս առաջնորդութիւն սորա սկսեալ ի ՉԷ թուականէ մինչեւ ցՉԻԲ, ցամ Տեառն 1273, իսկ եւ անդր մինչեւ ցթուականն ՉԽԳ ցամն Տեառն 1294 յիշատակի ի պատմագիրս, ըստ որոյ ամք նորա ձգին ցերեսուն եւ վեց․ վերջին ամք նորա անյայտք են։

ԺԳ․ ՉԾԶ – 1307 – Ղուկաս եւ Աստու-

ածատուր, յիշատակին ի միում եւեթ արձանագրի եւ այն է առանց թուականի, իսկ Ղուկաս երեւի եւ յայլում արձանագրի ընդ թուականաւ ՉԾԶ, ամք սոցա անյայտք:

ԺԴ. ՊԽԴ – 1395 – Յովհաննէս Զ. յիշատակեալ միայն ի տապանագրի իւրում ընդ թուականաւ ՊԽԴ. յաջորդ սորա եւ նախորդ եւ ամք առաջնորդութեան անյայտք:

ԺԵ. ՊՂ – 1441 – Գրիգոր Բ. զմանէ չիք ամենեւին յիշատակութիւն յարձանագիրս, այլ ըստ ցուցանելոյ պատմութեանց ի ամին ՊՂ թուականի գոլով առաջնորդ Հաղբատայ գտաւ ի մեծ ժողովն յայն գումարեալ ի սուրբ Էջմիածին վասն նորոգութեան այնր աթոռոյ. յաջորդ սորա եւս եւ ամք առաջնորդութեան անյայտք:

ԺԶ. ՋԽ –1491 – Պետրոս, յիշատակի միայն ի տապանագրի իւրում առընթեր զանգակատան ընդ թուականաւ ՋԽ, սորայն եւս յաջորդ եւ ամք առաջնորդութեան անյայտք:

ԺԷ. ՌԼԵ – 1586 – Մատթէոս, յիշատակեալ մի միայն արձանագիր ընդ թուականաւ, ՌԼԵ, իսկ յայլ արձանագիրս չերեւի յիշատակութիւն զնմանէ եւ ոչ իսկ ի պատմութիւնս. ուստի եւ ամք նորա անյայտք, յաջորդն հնար է թէ իցէ Կիրակոս:

ԺԸ. ՌՀԸ – 1629 – Կիրակոս, եւ սա միայն ի տանագրի խուրում յիշատակեալ ընդ Թուականաւ ՌՀԸ, ամք նորա անյայտք, նոյնպէս եւ յաջորդն:

ԺԹ. ՌՃ – 1651 – Աւետիս, յիշատակի ի կրկին արձանագիրս ի Թուին ՌՃ եւ ՌՃԴ, այլ եւ ի տապանագրի խուրում ի Թուին ՌՃԻԶ ըստ որոց ամք առաջնորդութեան յառաջնոյ Թուականէ հաշուեալ երեւին առ առաւելն քսան եւ վեց, իսկ ամք նորա նախընթացք քան զՃՌ Թուականն անյայտք:

Ի. ՌՃԻԶ – 1677 – Բարսեղ Բ. յազգէ Թումանեանց Մամիկոնեան, յիշատակի յարձանագրի խուրում ընդ Աւետիս եպիսկոպոսի եւ ի տապանագրի խուրում առանձինն ի Թուին ՌՃԾԲ յամի Տեառն 1703. Ժամանակ առաջնորդութեան սորա որոշակի դնի ի տապանագրի անդ նորին, որ են ամք քսան եւ եօԹն, ի մահուանէ անտի Աւետիսի:

ԻԱ. ՌՃԾԳ – 1704 – Թովմայ, յազգէ Թումանեանց դարձեալ, համարի յաջորդեալ յետ Բարսղի ի Թուին ՌՃԾԳ եւ կացեալ յառաջնորդութեան ամս իբր երկոտասան:

ԻԲ. ՌՃԿԵ – 1716 – Գրիգոր Գ. ի Տփխեաց, Սուրկունեան մականուանեալ, համարի յաջորդեալ Թովմայի ի Թուին ՌՃԿԵ, իսկ ի ՌՄ Թուին, յամի 1751

վախճանի, կացեալ յառաջնորդութեան ամս երեսուն եւ հինգ:

ԻԳ. ՌՄԱ – 1752 – Զաքարիա Պաթի-նեան, ի Տփխեաց, համարի ի ամին ՌՄԱ թուականի յաջորդեալ զկնի Գրիգորի, վախճան կենաց նորա ի թուին ՌՄԺԹ յամի Տեառն 1770 ըստ որոյ ամք առաջ-նորդութեան նորա հաշուին իբր տասն եւ ութ:

ԻԴ. ՌՄԻ – 1771 – Ոսկէթէոս Աշտարակեցի Գօլօշեան, նուիրակ սրբոյ Էջմիածնի ի Տփխիս յետ մահուն Զաքարիայ վարէ զառաջնորդութիւն ուխտիս ամս իբր հինգ եւ ապա դարձ առնէ ի սուրբ Էջմիածին եւ անդ վախճանի:

ԻԵ. ՌՄԻԶ – 1777 – Աբրահամ Թէ-քիրտաղցի, յետ գնալոյ Ոսկէթէոսի առնու զառաջնորդութիւն Հաղբատայ ի թուին ՌՄԻԶ եւ կացեալ ի նմին ամս իբր երեք գնայ ապա ի Սանահին եւ անդ նստի առաջնորդ:

ԻԶ. ՌՄԻԹ – 1780 – Իսրայէլ յաղգէ Զալալեանց, որ եղեւ կաթողիկոս Աղու-անից, առեալ զառաջնորդութիւն ուխտիս ի թուին ՌՄԻԹ եկաց ի նմին ամս իբր չորս եւ ապա հրաժարեալ գնաց յաշխարհ իւր յԱրձախ:

ԻԷ. ՌՄԼԳ – 1784 – Դաւիթ ի Տփխեաց Թաւէլղարով, յաջորդէ զաթոռն ի տեղի Իսրայէլի ի թուին ՌՄԼԳ եւ կացեալ

յառաջնորդութեան ամս իբր երկոտասան վախճանի ի թուին ՌՄԽԵ, յամի Տեառն 1796:

ԻԸ. ՌՄԽԷ – 1798 – Սարգիս Բ. Ջալալեան, նախ առաջնորդ ի թուին ՌՄԽԷ եւ կացեալ յառաջնորդութեան ամս ինն իբր թողու զայն եւ գնա(յ) յԱրձախ ի թուին ՌՄԾԷ:

ԻԹ. ՌՄԾԷ – 1808 – Յովհաննէս Է. Ակնցի, գոլով արդէն առաջնորդ Վրաստանայ Հայոց ի Տփխիս, առնու զառաջնորդութիւն Հաղբատայ ի թուին ՌՄԾԷ եւ միացուցանէ զվիճակ ուխտիս ընդ վիճակաց եւ թեմից սրբոյ Էջմիածնի հաստատեալ ընդ իշխանութեամբ միոյ առաջնորդի որպէս եւ էր վաղագոյն եւ կեցեալ ամս իբր երիս յետ միրելոյ առաջնորդութեան սորին վախճանի ի թուին ՌՄԿ՝ յամի Տեառն 1811:

Լ. ՌՄԿԱ – 1812 – Աստուածատուր յԱրձախոյ ձեռնասուն աշակերտ Ղուկաս կաթուղիկոսի յաջորդէ զառաջնորդութիւն Հաղբատայ եւ Տփխեաց յետ մահուն Յովհաննու ի թուին ՌՄԿԱ եւ յետ կալոյ յառաջնորդութեան ամս իբր երկուս, վերակոչի անդրէն ի սուրբ Աթոռն ի սրբազան Հայրապետէն ի թուին ՌՄԿԳ յամի Տեառն 1814 եւ առաքի գործով ծայրագոյն նուիրակութեան ի Կոստանդինուպօլիս եւ յետ ժամանակաց վերա–

*դարձեալ ի սուրբ էջմիածին ի ամին 1827 ամի վախճանեցաւ անդէն :*

*ԼԱ․ 1814 – ՌՄԿԳ – Ներսէս արքեպիսկոպոս Կամսարական յաջորդէ դաստիարդութիւն զկնի Աստուածատրոյ ի թուին ՌՄԿԳ առաքեալ ի սրբոյ Աթոռոյ անտի յՇփրեմայ սրբազնասուրբ կաթուղիկոսէ, որ եւ կայ այժմ, զգործ տեսչութեան ամենազգաստ արթնութեամբ վարելով եւ զբարեկարգութիւն սրբոյ Աթոռոյն ինքեան յանձն եղեալ գերահանճար խոհականութեամբ տնօրինելով, զորոյ զբազմարդիւն կեանս հաճեսցի Աստուած երկարաձգել եւ եւս ընդ հարուստ ամանակս յօգուտ եւ ի պարծանս եկեղեցւոյ խրում սրբոյ ամէն: (Աւարտ պատմութեան Հայրապետաց, Թ․ 239, էջ 156—162) :*

# ՀԱՂԲԱՏԻ ԴՊՐՈՑԸ

*Հաղբատի ամէնէն անուանի անդամնե-րէն եւ աչքառու մատենագիրներէն է* Յովհաննէս Սարկաւագ, *որ կը հռչակուի իբր «Մեծիմաստն գիտութեամբ ... քան զյոլովս եւ հանճարեղն ամենայնի, մտահարուստն, յոյժ իմաստուն ... սուրբ ... իմաստասէրն աստուածային ... Սոփեստէս»* (*Կիր. Պտմ. էջ* 64—65, *Վարդան, Պմտ. էջ* 122 *եւ Սամ. Անեցի, Ժամանակագրութիւն, էջ* 115)*: Քահանայական սերունդէ է. ծնած հաւանօրէն ԺԱ. դարուն առաջին կիսուն վերջերը Փառխոս գաւառին մէջ եւ մեռած ԺԲ. դարու առաջին կիսուն սկիզբները: Կը դաստիարակուի «առ սրբասնունդ քեռայն իւրոյ ի վանսն Հաղբատայ ... ուր սնաւ եւ վարժեցաւ»* (*Յովսէփեան, Յիշատ. Ա. էջ* 342)*:*

*«Յովհաննէս Հաղբատում կրթութիւնն աւարտելուց յետոյ եկել է Անի եւ այն տեղ դպրոց հիմնել, որը ինչպէս երեւում է շատ խոշոր դեր է խաղացել միջնադարեան Հայաստանում: Ըստ կենսագրի վկա-*

յութեան Անիից Յովհաննէսի հուշակը տարածուել է շատ հեռուները» (Աբրահամեան Ա. Յովհաննէս Իմաստասէրի մատենագրութիւնը, Երեւան 1956 էջ 25, հմմտ. Էջմիածին, ամսագիր, 1949 Թ. Ե—ԺԲ. էջ 50)։

«Եւ ծաղկաւէտեալ արձակեաց բողբոջս եւ բուսոյց բոյսս արդիւնաբար։ Շուրջ բակ բոլորեալ զմանկունս զիւրեաւ խոնարհաբար եւ անխորժելի սիրով ուսուցանէր զխրթին եւ զխորին իրս ... եւ ամենայն նսեմացեալ եւ խամրացեալ գիտութիւնք որ ի տգիտութենէ եւ ի ծուլացելոց եւ խաւարելոց մտաւք ծածկեալ աղաւաղեցան՝ որ ի նախնեացն, նորին աշխատաջան երկովք եւ արագութեամբ մտաց զարդարեցան, ցնծացան անձինք տեսանէր եւ լսանէր արանց» (անդ էջ 25—27)։ Անոր աշակերտներէն ոմանց անունները հասած են մեզի՝ Երեմիա Անձրեւիկ, Սամուէլ Անեցի, Սարգիս, Խաչատուր, Գրիգոր եւ Յովհաննէս Անեցիները, իսկ անոր ընկերներէն եղած են՝ Գրիգոր Թոքակերի որդի եւ Դաւիթ Ալաւկայ որդի։

Կը խորհիմ թէ եղած են լուրջ պարագաներ, որոնք ստիպած են Յովհաննէս Սարկաւագ, որ թողու լքէ Անիի իր ծաղկած դպրոցն ու կրթարանը եւ քաշուի վերստին Հաղբատի վանքը, զի երբեք

կարելի չէ մտածել որ անոր մահէն յետոյ աճիւնը փոխադրուած ըլլայ հոն, մանաւանդ երբ ունինք վկայութիւնը Կիրակոս Գանձակեցիին, որ կը հաղորդէ «Բարի քաղաքավարութեամբ կացեալ՝ յաշխարհէ փոխեցաւ ի Քրիստոս աշխատասէրն» (Սարկաւագ) ի Հաղբատ եւ թաղեցին զնա յարեւելից կուսէ եկեղեցւոյն մեծի առ դուռն փոքրագոյն եկեղեցւոյն» (Պատմ. էջ 65, հմմտ. Յովսէփեան, Յիշատ. Ա. էջ 342)։ Այս՝ կը հանդիպի «ի հինգ հարիւր եօթանասուն եւ ութ թուականին (Կիր. Պատմ. էջ 66), որ է ըսել 1129ին (հմմտ. Ոսկեան, Մատենագրական Քննութիւններ, Վիեննա 1922, էջ 19—20, Աբեղեան Մ. Հայոց հին գրականութեան պատմութիւն Բ. Երեւան 1946, էջ 534)։

«Հայագէտներից ոմանք (Ալիշան, Օրմանեան, պրոֆ. Տէր Մինասեան եւ ուրիշներ) ենթադրել են որ Յովհաննէսը Հաղբատի վանքի վանահայր է եղել ... Սակայն Յովհաննէսի Հաղբատի վանահայր լինելու փաստը սկզբնաղբիւրներով չի ճշդւում։ Մենք չունինք ուղղակի եւ միջանկեալ ոչ մի յիշատակութիւն նրա վանահայր լինելու մասին» (Աբրահամեան Ա. Յովհ. Իմաստասէրի մատենագրութիւնը, էջ 30 եւ Ոսկեան, Մատենագրական քննութիւններ էջ 6—7)։ Կարեւոր է հոս նաեւ

նշել որ Յովհ. Ղրիմեցին ալ գինքը Հաղբատի առաջնորդներու շարքին մէջ չէ օղակած:

Յ. Ղրիմեցին Յովհ. Սարկաւագի գրութիւններու մասին կ՚արտայայտուի «Իսկ զոր աշխատասիրեաց նա ի գիրս՝ են այսոքիկ Մեկնութիւն ի վերայ Տումարական իրաց, որ է կարգաւորութիւն տումարի Հայոց համեմատութեամբ այլոց ազգաց, պատմութիւն Հայոց յոյժ ընտիր: Գովեստ ի վերայ մեծին Ներսէսի, Սահակայ եւ Մեսրոպայ եւ Տրդատայ Թագաւորին, նաեւ ի վերայ սրբոց Ղեւոնդեանց, յորոց վերայ յօրինեաց եւ գշարականն Պայծառացան այսօր եւ այլն: Գրեաց եւ ճառս պանծալիս ի վերայ պէսպէս իրաց եւ Թուղթս խրատականս ի վերայ բազմաց: Յօրինեաց եւ քանի մի աղօթս, ընդ որս եւ զՅիշեա Տէրն, որ ասի հանապազօր յեկեղեցւոջ» (Ջեռ Թ. 239 էջ 92): Ունի դեռ ուրիշ շատ մը գրութիւններ, որոնցմէ յատուկէն յիշելու է «Բան իմաստութեան ի պատճառս զրօսանաց առ ձայն ... որ կոչի Սարեկ» (Յովհ. Սարկաւագի կեանքի ու երկերու մասին հմմտ. վերոյիշեալ գրութիւնները, մանաւորապէս Աբրահամեանի գիրքը, հմմտ. նաեւ Արարատ 1901 էջ 340—344, ուր ան կը հռչակուի իբրեւ երկրորդ հիմնադիր Հաղբատի,

բայց լաւագոյն կ'ըլլար եթէ կոչուէր Հաղբատի դպրոցի առաջին հիմնադիրը)։

Յովհ. Դրիմեցի կը գրէ «Իբր ի մէջն անդ երկոտասան դարու երեւելի եղեւ ի Հաղբատ եւ վարդան վարդապետ ժամանակակից Ներսիսի Շնորհալւոյ[1], որ «ի ծերութեան խորում աղաչեաց զնա ինքն զՇնորհալին, զի մեկնեսցէ նմա զձառ Խաչին, զոր արարեալ է Դաւթայ Անյաղթին, այն է զձառն Բարձրացուցէք եւ նա կատարեաց զխնդիրն նորա, մեկնեալ զայն եւ յղեալ առ նա, զոր ընթերցեալ Վարդանայ ուրախ լինէր յոյժ եւ յետ սակաւուց հասանէ նմա փախձան կենաց, փոխի առ Քրիստոս ի թուին ՈԻ յամի Տեառն 1171 եւ թաղի ի վերոյիշատակեալ գերեզմանատան։ Տապանագիր նորա համառօտ երեւի ի խաչարձան անջատեալ ի տապանէ նորին փորագրեալ օրինակ զայս Թուին ՈԻ Վարդան» (Թ. 239, էջ 93)։ Հ. Ակինեան այս թուականին համար կ'արտայայտուի «Դժբախտաբար արձանագրութիւնս միայն Յովհ. Դրիմեցին տեսած ըլլալով դժուար է ճշգրել թէ թուականին այս ՈԻ փոխանակ ՈԽ ընթերցուածն հաւաստի՞մ է, վասն զի դիւրաւ կրնային չփոթուիլ ՈԻ եւ ՈԽ (1191, գրութիւնք»

---

[1] Գէորգ առաջնորդի մասին տե՛ս վերը «Հաղբատի առաջնորդները»։

(Մատենագրական Հետազօտութիւններ Ա. Վիեննա 1922 էջ 74)։

Վարդան Հաղբատացին, որքան կ՚երեւայ, աւելի ուսուցչական, քարոզչական եւ արտաքին գործունէութիւն ունեցած է եւ գրական քիչ վաստակ թողուցած (անդ էջ 68—84)։

Հ. Ակինեան Վարդան եւ Պետրոս վարդապետներու աշակերտ կը համարի Դաւիթ Քոբայրեցի վարդապետը (հմմտ. իմ գրութիւնս Քոբայրի վանքի մասին), որ իր ժամանակաշրջանին եռուն գործունէութիւն կ՚ունենայ միջամուխ ըլլալով եկեղեցական խնդիրներու։ Հիւսիսային վարդապետներու առ Գրիգորիս Կաթ. Տղայ ուղղուած գրութեան ստորագրողներէն է եւ մէկը Լօռիի եւ Անիի ժողովականներէն։ Ներսէս Լամբրոնացին զինքը չի գովեր եւ Հաղբատացիներու համար կ՚ըսէ «Իսկ Հաղբատացիքն վարժքն այնքան կուրացեալք ի միմեանց նախանձուէ, մինչ զի ի բան խօսել միայն եւ միւսայն ունչ առնելն ամենայն վանականացն կատականք եւ ծաղր։ Ջսեամբ տաճարին ոչ կոխեն իբրեւ զանարժանս եւ զմեր սպասաւորելս առանց ճանաչելոյ երդիծանեն։ Սոյա ոչ կամեցաք խօսակից լինել գրով եւ ոչ ընդունելութիւն ունել բանիւ» (Նամականի Գր Տղայի, Վենետիկ 1865, ուր Թուղթ

Ներսէս Լամբրոնացւոյ էջ 223—224, հմմտ. նաեւ անդ էջ 225—232):

Թէ Դաւիթ Քոբայրեցի ե՞րբ մեռած է, չենք գիտեր, բայց իր գերեզմանը կը ցուցուի Հաղբատի մէջ[2]: Թողուցած է Յոբայ մեկնութիւնը, գուցէ նաեւ մեկնութիւն Եսայեայ եւ ուրիշ մանր մեկնութիւններ, Ներբողեան ի սքանչելի վկայն Քրիստոսի Յովսէփ պատանի (որ Հաղբատ եւ Սանահին եւս գտնուած է, հմմտ. Տաշեան, Մայր Ցուց. էջ 89 եւն), Լուծմունք եւ պատճառք Գրիգոր Աստուածաբանի ճառից, (հմմտ. մանրամասնօրէն Ակինեան, Մատ. Հետազօտ. Ա. էջ 44—68):

Անոր ժամանակակից է Թորոս «Ի սահմանացն Մելիտինոյ ... այր հեզ եւ խոնարհ, առաքինի եւ աղքատասէր յոյժ, որ եւ ի ծերութեան պարարտութեան յաւելաւ առ հարսն իւր եւ կայ թաղեալ ի հռչականուն վանքն Հաղբատ ի գլուխ վանացն, ի գերեզմանս եպիսկոպոսացն եւ վարդապետացն» (Կիր. Պատմ. էջ 113): Թէ գրական ինչ վաստակ կատարած է չենք գիտեր, բայց անշուշտ արժանիք ունի, որ Յովհ. Ղրիմեցին զինքը Հաղբատի նշանաւոր անձերու շարքին մէջ աղուցած է (Թ. 239 էջ 93—94):

---

[2] «Հայր մերոյ հոգեւորի Դաւթայ վարդապետի Քոբայրեցոյ է տապանս, յիշեա ի Տէր սուրբս» (Թիւ 239, էջ 93, Brosset... էջ 40, Արարատ 1887, էջ 71):

Միեւնոյն անձը՝ Յովհ. Ղրիմեցի Հաղբատի նշանաւոր դէմքերու կարգին կը յիշէ նմանապէս Վարդան վարդապետ Արեւելցին, որուն համար կ՚ըսէ թէ «Գերեզման նորա աւանդի լինել աստէն ի Հաղբատ, ի գերեզմանատան անդ նշանաւոր վարդապետաց, այլ չունելով տապանագիր ի կարգի անդ անգիր տապանաց» (Թ. 239 էջ 96)։ Այնպէս կ՚երեւայ թէ Անդրէի վանքը մերձ ըլլալով Վարդանի մարմինը յարմար դատուած է հոս բերել եւ ամփոփել։ Անիկա Հաղբատի Յովհաննէս, Համազասպ ու Գրիգոր առաջնորդներու եւ անուանի վարդապետներու հետ ջերմ յարաբերութիւններ ունէր եւ անոնց խնդրանքներու ընդառաջելով ըրած է Ս. Գրքի քանի մը մատեաններու մեկնութիւններ (հմմտ. Ոսկեան Հ. Հ. Յովհաննէս Վանական եւ իր դպրոցը, էջ 63[3])։

Հաղբատի վանքին մէջ իր կեանքի վերջին օրերը անցուցած է Յովհաննէս Երզնկացի հոյակապ մատենագիրը, որ հոն ալ կը թաղուի՝

[3] Վարդանէն շատ յառաջ «Գրեցաւ աստուածային տառս այս (ամփոփումն մեկնութեանց) ձեռամբ նուաստ գրչի Գրիգորոյ ի մայրաքաղաքիս Հաղբատայ ի յառաջնորդութեան Տեառն Տեառն Բարսղի, զոր սկիզբն արարաք զԱրարածոց մեկնութիւնն զոր ումն ի վարդապետաց եկեղեցւոյ համառօտեալ էր։ Ընդ նմին եւ զՂեւտականն եղաք յայլ եւ այլ աւրինակի» (Բազմավէպ 1954, էջ 306 հմմտ. անդ եւ էջ 286, ուր Բարսեղի համար կ՚ըսուի թէ Ներսէս Շնորհալիի ժամանակակից Հաղբատի առաջնորդն ըլլայ։

«Արձանս մահու Երզնկացւոյ
Յօհաննիսի Ծործորեցւոյ.
Սա ժիր մշակ եկեղեցւոյ
Սուրբ վարդապետ ազգի մերոյ,
Արդ մականուամբ Պլուզ կոչի
Աստ ի Հաղբատ կենաց զրաւի
Իսկ ի զալ աստ Տեառն Եփրեմի
Հայոց մեծի Հայրապետի,
Վասն հոգւոյ յիշատակի,
Կանգնէ զտապանս յայսմ ամի,
Թուին 1326 մահն, թիւ նորոգման
տապանիս 1824։»
(Թ. 239 էջ 97—98, Արարատ 1887,
էջ 73)։

Եղած է ժրաջան հեղինակ եւ թողուցած է արժէքաւոր գրութիւններ (Զարբհանէլեան Հ. Գ. Պատմ. հայկ. Դպրութեան էջ 752 եւ Քիպարեան Հ. Կ. Պատմ. հայ դրականութեան, էջ 343)։

Յովհ. Ղրիմեցին այս մատենագրին մասին խօսելէ յետոյ ցաւով կը յաւելու «Սոյն ինքն Յովհաննէս Երզնկացի եղեւ վերջինն ի կրօնաւորս Հաղբատայ, որք ծաղկեցան եւ ջահաւորեալ փայլեցան յեկեղեցին Հայոց հռչակաւոր եւ մեծիմաստ գիտութեամբ եւ վարուք քաղաքավարութեան եւ ոչ եւս ետես Հաղբատ զայսպիսի մինչեւ ցայսօր եւ ոչ իսկ զայնչափ բազմութիւն կրօնաւորաց, զոր ի վաղ ժամանակս ունէր,

ուստի այժմեան միաբանութիւն բաղկանայ ի քանի մի ծերունի կրօնաւորաց եւ այլոց դղերաց եւ պաշտօնէից ոմանց, որոց գործ է պարապիլ հանապազօրդեան աղօթս եւ ի սաղմոսերգութիւնս հասարակականս եւ առանձնականս, յետ պաշտելոյ զկարեւորսն մարմնաւոր պիտոյից եւ կառավարութեանց վանացն եւ անձանց» (անդ էջ 98): Ստուգիւ աղաւաղելի վիճակ վանքի մը, որ երբեմն բազմաթիւ միաբաններ ունէր եւ զարգացած դպրոց մը (Ասողիկ, Պատմ. էջ 181 եւ Թ. 239 էջ 90—91[4]):

Մեր Մատենադարանին Թ. 617 Ձեռագիրը ունի շատ ընդարձակ եւ կարեւոր յիշատակարան մը, յատկապէս Թուրբնեան տան համար արժէքաւոր: Անոր մէջ կը գրուի թէ ինչպէս Լեւոն Թագաւորն Լամբրոնացիի Սաղմոսաց մեկնութիւնը Հաղբատ կը յղէ: Ահա Հաղբատի վերաբերեալ տողերը «... անմոռաց բաղձանօք միշտ ի մտի ունելով արքայս մեր Լեւոն զվանորայս եւ զեկեղեցիս եւ զբարեձեւ

[4] Հարկաւ թէ Մատթէոս Հաղբատացին որոշ արժէք մը ունէր որ Պետրոս Գետադարձ զինքը հետը Բիւզանդիոն կը տանէր (Մ. Ուռհ. Պատմ. էջ 123): — Հաղբատի դպրոցի անդամ կարելի է համարիլ Ջաքարիա արքեպ. Գուլասպեան Բէհրուզեանց, որ էր Բարուն անպատիր, հովիւն քաջակիրթ, որ կը գրէ Վէպ Սեւանայ, Քարոզգիրք, Գովեստ ի Խաչն եւ ի Ս. Կոյս (Արարատ 1887, էջ 265, հմմտ եւ Հաղբատի առաջնորդները):

կրօնաւորս եւ զկարգս արեւելեան կողմանց, որ ի մեծ Հայք, որով եւ հանապազ պարծէր առ ամենայն ազգս եւ լեզուս քրիստոնէից եւ միշտ գովէր եւ ամենայնի իբրու հանապազ ժառանգ եւ մանաւանդ քան զբազում տեղիս զմեծ եւ զհռչակաւոր երկնահաւատար սուրբ ուխտն զմայրավանքն զՀաղբատ, յորում կամէր անմոռաց յարձանացուցեալ զինքեան յիշատակ բարի ի Քրիստոս, նուիրօք եւ պատարագօք, վասն որոյ եւ ընդ այլոց թագաւորական ընծայից, զոր միշտ առաքէր եւ զգիրքս զայս Մեկնութիւն Սաղմոսաց Դաւթի, որ ի նախատացեալ սուրբ հօրէն Ներսիսէ յազգայնոյն արքայից մերոց յարմարեալ տեսանելով, զի չգոյր եւ չէր դեռ ընաւ ուրեք տարածեալ յաշխարհն արեւելից: Սա սկիզբն եւ պատճառ լինելով բարեաց նորոգ ընծայ առաքեալ պարգեւեաց սուրբ ուխտին Հաղբատայ ի վայելումն մանկանց նորա եւ յիշատակ ինքեան անմոռաց եւ ամենայն աշխարհին եւ վանօրէից արեւելից օրինակ գաղափարի եւ պատճառ տարածման ի բոլորսն» (Ոսկեան Հ. Համ. Մայր ցուց. Թ. 617, անտիպ. հմմտ. Տաշեան, Ցուց. էջ 333 եւ Հայապատում, Գ. էջ 6, հմմտ. Արարատ 1878, էջ 99):

Այս մեկնութեան յարաբերութեամբ կը յաւելում թէ Յովհաննէս Գառնեցի կը

Հանդիպի Հաղբատ եւ Սարկաւագի Սաղմոսարանի վրայէն արտագրութիւն կ՚ընէ. «Այլ ես նուաստս Յովհաննէս Գառնեցի ... գնացի ի մայրաքաղաքն մենաստան ի Հաղբատ եւ որոնել գտի ի Թարգմանչացն գրած մագաղաթ սաղմոսարան մի, զոր առեալ սուրբ վարդապետին Սարկաւագ կոչեցեալ ... եւ նա սերմանեաց զայս ուղիղ եւ զուղորդ սաղմոսս» (Տաշեան, Մայր ցուց. էջ 184, 463, 778):

Գարեգին արքեպ. Յովսէփեան կրնայ անվարան արտայայտուիլ թէ «Իրաւամբ ԺԳ. դարում արեւելեան Հայաստանի գրչութեան եւ մանրանկարչութեան արուեստների գլխաւոր կենդրոններից մէկը պիտի համարել այդ վանքը», այսինքն Հաղբատ (Նիւթեր եւ Ուսումնասիրութիւններ հայ արուեստի եւ մշակոյթի պատմութեան, Պրակ Ա. Երուսաղէմ 1935, էջ 68): Այս տողերը կը գրէր նկատի առնելով Հաղբատի դպրոցի «մի գլուխ գործոցը՝» Գետաշէնի Աւետարանը, որ Էջմիածնի Մատենադարանին սեպհականութիւն կը դառնէր (անդ էջ 41—75): Ան մեծադիր Աւետարան մըն է մագաղաթի վրայ բոլորաձեւ գրով գրուած:

Յիշատակագրութիւնը կարեւոր տեղեկութիւններ կը հաղորդէ անոր գրութեան եւ ուրիշ պարագաներու մասին:

«Եւ արդ գրեցաւ սա եւ ծաղկեալ կազմեցաւ յամի յորում էր թիւ համարոյն թուականութեանս Հայոց հարիւրոց վեցից եւ նոյնքանեաց տասանց: Իսկ նորոյ շրջանի միոյ հարիւր քսան եւ ութեակ թուով (1211) ի սուրբ ուխտս Հաղբատայ գծագրեցաւ ձեռամբ Յակովբայ յառաջնորդութեան Տեառն Յոհաննիսի սրբասիրի . . .»: Ստացողը կ՚ըլլայ Սահակ կրօնաւոր, «որ է աշակերտ սուրբ ուխտիս Հաղբատայ, ազգաւ եւ տոհմիւ ի մեծ մայրաքաղաքէն յԱնւոյ, սնեալ ի սրբարան ուխտիս ի Հաղբատ» (անդ էջ 42):

Մեծարժէք է այս ձեռագիրը իր մանրանկարչութեան համար, զորոնք գծած է Մարգարէ եւ զորոնք մանրամասնօրէն նկատողութեան առարկայ ըրած է Յովսէփեան (անդ էջ 45—60):

Հաւանօրէն Հաղբատի մէջ գրած եւ թերեւս նաեւ նկարած ըլլայ Առաքել քահանան 1209ին Եսայիի մարգարէութիւնները եւ Պօղոսի ԺԴ թղթերը իրենց նախադրութիւններով, սակայն «Ոչ չքեղ նկարազարդուած, բայց բաւական՝ տեսնելու նորա գրչութեան եւ մանրանկարչութեան ազնուութիւնը» (անդ էջ 71):

Հաղբատի վանքին մէջ գրուած են բաւական թուով Ձեռագիր մատեաններ, ինչպէս մեր գրութեան ընթացքին մէջ

տեսնուեցաւ։ Ձի հոն յատուկ փոյթ կը տարուէր — մանաւանդ առաջին շրջաններուն — գրականութեան, Ս. Գրքի մեկնութեան, գրչագրութեան եւ մանրանկարչութեան։ Կար բծախնդրութիւն անխախտ գրութեան, եւ նախնիներու աւանդած գեղեցիկ կտակներու պահպանութեան եւ այս պատճառով հոն կը գտնուէին սրբագրիչներ, գրողներ. նմանապէս փոյթ եռանդն էին գրքեր հաւաքելու[5] եւ զանոնք խնամելու, ինչպէս եւ վտանգներու դէմ պահպանելու։ «Հաղբատ ունեցած է եօթը պահեստի տեղ։ Երկու վերնախորան բուն տաճարում, չորս խորան զանգակատան

---

[5] «Ի առաջնորդութեան Ակնցի Մինաս վարդապետին եւ աթոռակալ նորին Թիֆլիսցի Գրիգորի վարդապետին ես Ասոլս ի գիւղէն Ջիթհանքու եկի ի Ախպատու վանքն սուրբ Նշանին երկրպագութիւն, տեսա զայս սուրբ Աւետարան առի ինձ եւ իմ կողակցուն Տահրխատնին, որ առ Քրիստոս փոխեալ է անջնջնջելի յիշատակ ի դառն եւ ի նեղ օրերս որ կանք ժամանակս խանութեան Բադարին, որ է որդի Վախթանք խանին, որ գնացեալ ի Սպահան, այսօր կուգա վաղն կու գա այսպիսի միջումն էին, ես Ասօս եկա ի վանք Ագըրատ, գեղջէն Ջիթահանքու, որ եմ որդի Սարգսին ի ՌՃԿ եւ Ը. թվին, տեսայ զայս Աւետարանս նորոգած էր, առի ինձ յիշատակ ի հալալ արդեանց եւ արդար վաստակոց իմոց, գնեցի զնոր կազմուած սուրբ Աւետարանս Ագըրատա, այլ եւ տուի Ագըրատա սուրբ Նշանին վասն յիշատակի հոգւոյ իմոյ եւ ծնօղաց իմոյ հօրն իմոյ Սարգըսին եւ մօրն իմոյ Սինդուխին եւ կողակցին իմոյ Տահրխատնին, որ այսմ ամի առ Քրիստոս փոխեցաւ» (Ակինեան, Հաւաք. Յիշատ. Երեւան, 207, հմմտ. Ծաղիկ, 1891—1892. էջ 439. ուր եւ Աւետիս առաջնորդը կը յիշատակուի — իբրեւ չինարար)։

վերնայարկում, մի մեծ պահեստի ջրա- ղացի ձորի քարայրում» (Բազմավէպ 1956 էջ 107—108)։ Ցափշտակող եւ ջնջող ձեռքերէ ազատելու համար անոնք երբեմն պահուած են ուրիշ սրբութիւններու եւ հնութիւններու հետ, Կայենոյ բերդի մէջ, Աչառանց կամ Ցաջառանց այրին մէջ, (նաեւ Զառնէ կամ Զարեհ այրին մէջ Դիւան Թ. էջ 243 եւ 509, Զալալեան, Ճամբ. Ա. էջ Ազգր. Հանդ. 1898 Գ. էջ 322—328, Արարատ 1887, էջ 68—69, ուր կ'ըսուի թէ «Ձեռագիրներէ մաս մը փոխադրուած է Թիֆլիս»)։ Բայց պահելը միայն բաւ չէ, հարկ է անոնց վրայ գուրգուրալ եւ զանոնք միշտ խնամել։ Սակայն ցաւալի է որ վերջին շրջաննե- րուն անոնց — կը չեշտենք — պէտք եղած հոգը չէ տարուած եւ անոնք տաշնորդնե- րու եւ միաբաններու անփութութեան, անմտութեան, տգիտութեան եւ նմանա- պէս ագահութեան պատճառով սեպհակա- նուած, գողցուած, ցրուած, փոշիներու տակ փճացած, խոնաւութեան մէջ ապա- կանած ու փտած, եւ նոյն իսկ այրուած են հա՛յ արիւն ունեցողէ, ա՛յն Ձեռագիր- ները, որոնք այնքան աչքերու լոյս պա- հանջած են, դրամ արժած են եւ հայ մշակոյթի ու գրականութեան համար, ջահեր ու ճրագներ էին (հմմտ. Պետրոս սարկաւագի հայերէն ձեռագիրներու հրկի-

*գումը, հմմտ. նաեւ Բազմավէպ 1956, էջ 110) :*

## ՀԱՂԲԱՏԻ ՊԱՏՄԱԳԻՐԸ

*Նոր Ջուղայի Ամենափրկիչ վանքի գաւիթին հիւսիս–արեւելեան անկիւնը 1956 Օգոստոս 18ին կը կարդամ ու կ'արտագրեմ սա տապանագիրը.*

*«Տապան նորուն բարձր սրբազնութեան Տեառն Յովհաննու ապետափառ արքեպիսկոպոսի Սուրէնեանց Ղրիմեցւոյ եւ գերապատիւ եւ բարեջան առաջնորդ սրբոյ վանացն Ամենափրկչի, որ եւ գկնի վեցամենայ առաջնորդութեան խրում հանգեաւ ի Տէր ի յ13 Դեկտեմբերի թիւն 1848 ամի» :*

*Կը յիշեմ գինքը օրհնութեամբ: Ջի ան Հաղբատի Պատմագիրն է, որ եկած եւ հոս գտած է իր մշտնջենական հանգիստը :*

*Յովհաննէս Սուրէնեանց՝ Փօթիշանէն է, բայց ծանօթ է Ղրիմեցի յորջորջանքով: Անդամակցած է էջմիածնի եւ մասնակցած ժամանակակից եկեղեցական իրադարձութիւններու: Կողմնակից եղած է Դանիէլ Սուրմանցիի կաթողիկոսութեան եւ ապա գործակից՝ Եփրեմ Երեւանցի կաթողիկոսին: Ընտրուած է նախ Կառավարիչ Ս. Ժողովի դրադիր եւ յետոյ նոյնին ատենադպիր, ինչպէս նաեւ Եփրեմի եւ Ներսէս*

Աշտարակեցիի քարտուղար։ Կազմած է «Առաջնական ձեւակերպութիւն Կարգադրութեան յաղագս կառավարութեան գործոց եկեղեցականաց Հայոց ի Ռուսաստան»։

Երբ Եփրեմ կաթողիկոսի երեք անգամ հրաժարումէ յետոյ Յովհաննէս Ը․ Կարբեցի անոր կը յաջորդէ եւ կը սկսի ադիկամի Հայրապետական գործերը յառաջ վարել ու կարգադրութիւնները ընել՝ Էջմիածնի Միաբանութիւնը եւ սինոդական Կառավարութիւնը, որուն ժամանակակից հարցերով եւ ազգային խնդիրներով լրջօրէն զբաղող անդամներէն էր նաեւ Յովհաննէս Ղրիմեցի, որ միանգամայն ատենադպիրը՝ «Յայտարարութիւն» մը կամ բողոքագիր մը կը ներկայացնէ անոր։ Այդ հարցը բաւական երկար կը տեւէ (Դիւան Բ․ էջ 202—311)։

Յովհաննէս տարիներ յետոյ Նոր Ջուղայի առաջնորդ կ՚ըլլայ։ Տէր Յովհաննեան անոր Պարսկաստանի մէջ ունեցած գործունէութեան մասին կը գրէ․ «Տէր Յովհաննէս եպիսկոպոս Սուրէնեան Ղրիմեցի Ռուսաց նշանակիր եւ ասպետ, գիտնական եւ բանադէտ 14 Օգոստոսի 1841 ամի կոնդակաւ Յովհաննէս կաթուղիկոսի հաստատի առաջնորդ եւ ի 1842 ամի[6] հա-

[6] «Բազմավէպի» մէջ թիւի ետառաջութիւն մը տեղի ունեցած է՝ 1842 եղած 1824 (1956, էջ 107)։

սանէ ի Ջուղայ: Մեծամեծ յուսատութեամբ խոստանայ պաղգօղուտ բարեկարգութիւնս հաստատել, այլ կա՛մ ժամանակն անյաջող կա՛մ պակասիլն կենաց նորա թողին զայն ամենայն խոստմունս նորա անկատար: Յամի 1843 հիմնեաց զդպրոց հոգեւորական որ սակս պակասութեան դրամոյ ոչ կարելով պահել զշարունակութիւն իւր խոնարհեցաւ: Սա ունէր զբարեկամական հաղորդակցութիւն սիրոյ ընդ գերապանցեալ կոմս Մէդդէմ դեսպանին Ռուսաց, որ ի Թէհրան եւ միջնորդութեամբ նորին արժանացաւ կայսերական պարգեւի ի 1846 ամի, որ էր պնակէ փրկչական չուրջանակի ականակուռ: Սա շինեաց վասն վանին զտուն կոչեցեալ Սիմէօնեանց կամ քեալանթար Ղուկասէնց եւ անդ եբաց զդպրոցն հոգեւորական, շինեաց եւ զայգին կոչեցեալ վախիմ: ... Ի վերջին ժամանակս կենաց իւրոց սակս թուլութեան ընդ երկար ժամանակ մնաց յանկողնի եւ վախճանեցաւ ի 13 դեկտեմբերի 1848 ամի» (Պատմութիւն Նոր Ջուղայի որ յԱսպահան Բ. էջ 79—80):

Յովհ. Ղրիմեցի Եփրեմ կաթողիկոսի հետ 1822ին կը հասնի Հաղբատ, ուր կաթողիկոսը «աւելի քան զամս չորս» կը մնայ: Անոր հետ նաեւ՝ Յովհաննէս, որ իր թանկագին ժամանակը կը գործածէ Հաղ-

բատի վանքի պատմութիւնը գրելու եւ կը յաջողի (Թ. 239, էջ 149—156)։

Անկէ լաւ օրինակ մը կայ Նոր Ջուղայի Ամենափրկչեան Մատենադարանին մէջ։

Ծանօթանանք Ձեռագրին եւ անոր բովանդակութեան.

ԹՈՒՂԹ՝ (92 էջք 184)։ — ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 25·5 × 20։ — ԳՐՈՒԹԻՒՆ՝ 20 × 13 միասին։ — ՏՈՂՔ՝ 31 (երբեմն 32)։ — ՆԻՒԹ՝ թուղթ։ — ԿԱԶՄ՝ բաղկացած է ութը տետրակներէ, որոնք իրարու միացուած են ասեղաթելով։ — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ լաւ մնացած։ — ԳԻՐ՝ նոտրագրի մերձ շեղագիր, փոքր եւ յստակ։ — ՍԿԶԲՆԱՏԱՌՔ՝ պարզ։ — ԼՈՒՍԱՆՑԱԶԱՐԴՔ, ՆԿԱՐՔ՝ չունի։ — ԴԱՏԱՐԿՔ էջ 10 եւ 70։ — ԳՐԻՉ՝ գուցէ հեղինակը։ — ՍՏԱՑՈՂ՝ թերեւս հեղինակը։ — ՏԵՂԻ՝ Հաղբատ։ — ԺԱՄԱՆԱԿ՝ - ՌՄՀԶ (1827)։ — ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆ - կը գտնուի Նոր Ջուղայի Ամենափրկչեան Մատենադարանի մէջ, զոր տեսայ 1956ին եւ զոր գրաւէր եւ կարող բժիշկ Կար. Մինասեան հաճեցաւ ամբողջապէս ձրիաբար լուսանկարել տալ եւ ինծի ղրկել - Բէյրութ։ Յարգելի Դոկտորին հրապարակաւ կը յայտնեմ իմ անկեղծ շնորհակալութիւնս իր այս այնքան գեղեցիկ եւ հաճելի ընդառաջումին եւ Ձեռագրի մասին տուած քանի մը տեղեկութիւններուն համար։ Նոյն Մատենադարանին մէջ կայ

*մինչեւ Նորա գործքն ուրիշ օրինակ մը եւս Թ. 251:*

*Մատեանս է՝ «Պատմութիւն հուչակաւոր վանից Հաղբատայ սուրբ Նշանին, հիմնեալ յարձանագիրս նախնեաց: Աշխատասիրեալ Յովհաննու վարդապետի Փօթիշանցւոյ Դրիմեցի վերաձայնելոյ, ձեռնասուն աշակերտի եւ նօտարի աստուածապատիւ Տեառն Տեառն Եփրեմի արժանաժառանգ գերընտիր եւ վեհափառ սրբազնասուրբ կաթուղիկոսի ամենայն Հայոց, ի միաբանութենէ լուսահիմն բարձրագոյն Աթոռոյ սրբոյ Էջմիածնի: Յաւուրս գերիշխանութեան նորին իսկ վեհափառ Օծութեան եւ յառաջնորդութեան ամենապատիւ Տեառն Ներսիսի առաքելավայելչ բարձր սրբազան Արհի Եպիսկոպոսի եւ ծայրագոյն կառավարչի հոգեւորական գործոց Հայոց Վրաստանեայ եւ այլոց, կայսերապապակեալ Ասպետի սրբոյն Աղէքսանդրոյ Նեւսկւոյ: Յամի Փրկչին 1827, ի Թուականի Հայոց ՌՄՀԶ ընդ հովանեաւ նորին սուրբ Նշանին:*

*Էջ Ա. Աստուածարեալ Քահանայապետութեան Տեառն Ներսիսի առաքելաշաւիղ բարձր սրբազան արքեպիսկոպոսի եւ ծայրագոյն կառավարչի հոգեւորական գործոց Հայոց Վրաստանեայ եւ այլոց. Նախադահ անդամոյ սուրբ ժողովոյն բարձրագոյն խորհրդարանի սրբոյ Էջմիածնի եւ ասպետի Ռուսաց կայսերապարգեւ նշանաց կրողի.*

խոնարհաբար ընծայումն. Ողորմածագոյն Տէր, Ի դղունս անհամեմատ փութոյ եւ ճգանց բարձր սրբազնութեան ձերոյ ընթացս անցեալ պատերազմի Ռուսաց ընդ Պարսից ի պատճառս ազատութեան...:

Կը ստորագրէ՝ Ամենախոնարհ հպատակ ծառայ Յովհաննէս նուաստ վարդապետ:

Ապա կայ Մի գքեւ անցցէ պատմութիւն հնադունից, զի եւ ինքեանք ուսան ի հարց իւրեանց: Սիր. Ը. 11:

էջ 1. Յառաջաբան. Ըղձալի համօրէն բանեղինաց ճանաչումն ճշմարտութեան առաջացուցական սկզբամբք եւ ի ճանաչման անդ բերկրութեան անդուդական իմն զոլ...:

էջ 3. Հանդամանք արձանագրութեանց եւ նոցունց գաղափարութեան եւ որ այլ ինչ դիտելի: Եւ արդ թերեւս հեչտին իմն թուեսցի որոց են անփորձ անախայ վերծանութեամբ գաղափարումն արձանագրաց:

էջ 11. Պատմութիւն Հաղբատայ ի սկզբանէ շինութեան նորա ցամն Տեառն 1827: Առաջիկայ ճառիս բովանդակութեան զողջիր իբրու ըստ երից մասանց նկատի նախ ըստ տեղագրութեան եւ որչափութեան բովանդակեալ կալուածոց Հաղբատայ:

էջ 12. Գլուխ Ա. Անուն Հաղբատայ: Անունս Հաղբատ ի պարսիկ լեզու ստուգաբանեալ:

Էջ 15 · Գլ. Բ. Կալուածք Հաղբատայ եւ դանադան տեղիք ի նմա ։

Էջ 22 · Գլ · Գ · Ջուր եւ օդ Հաղբատայ ։

Էջ 29 · Գլ · Դ · Բերք Հաղբատայ ։

Էջ 34 · Գլ · Ե · Գիւղորայք եւ կալուածք զորս ի վաղ ժամանակս ունէր այս մենաստան եւ զոր այժմ ունի ։

Էջ 42 · Գլ · Զ · Թէ ո՞յք իցեն պարոնք Հաղբատայ եւ դի՞արդ կալան եւ ունի զտէրութիւն ի վերայ նորա ։

Էջ 51 · Գլ · Է · Ս · Նշան աւագ տաճար եւ զաւիթ նորա արեւմտեան կամ ժամատուն ։

Էջ 58 · Գլ · Ը · Տեղի եւ ժամանակ եւ հեղինակ շինութեան սուրբ Նշան աւագ տաճարին ։

Էջ 63 · Գլ · Թ · Հիւսիսային եւ արեւելեան գաւիթք սուրբ Նշան աւագ տաճարին եւ որ ի նոսա են խորանք եւ արձանագիրք եւ տապանագիրք ։

Էջ 68 · Գլ · Ժ · Զանգակատուն Հաղբատայ, Համազասպ, Սբ · Գրիգոր եւ Սբ · Աստուածածին եկեղեցիք եւ այլ շինուածք վիմարդեանք ։

Էջ 76 · Գլ · ԺԱ · Մնացորդ արձանագիրք եւ տապանագիրք որ ի ներքս եւ որ արտաքոյ Ս · Նշան աւագ տաճարին եւ արեւմտեան մեծ գաւթին ։

Էջ 83 · Գլ · ԺԲ · Եկեղեցիք եւ մատրունք եւ խաչարձանք արտաքոյ մենաստանիս ի

սահմանս կալուածոց Հաղբատայ տան եւ անդ :

Էջ 90 · Գլ · ԺԳ · Ծաղկեալ կրօնաւորք Հաղբատայ ընդ դարս դարս գիտութեամբ եւ վարուք քաղաքավարութեան եւ այժմեան միաբանութիւն :

Էջ 98 · Գլ · ԺԴ · Թեմորայք Հաղբատայ եւ ճոխութիւն ըստ պատուոյ :

Էջ 105 · Գլ · ԺԵ · Առաջնորդութիւն Սիմէոնի մինչեւ յՅովհաննէս Երկրորդ :

Էջ 111 · Գլ · ԺԶ · Առաջնորդութիւն Գրիգորի առաջնոյ այս է Տուտէորդւոյն մինչեւ յՅովհաննէս չորրորդ :

Էջ 118 · Գլ · ԺԷ · Առաջնորդութիւն Համազասպայ եւ այլոց մինչեւ յԹովմաս :

Էջ 124 · Գլ · ԺԸ · Առաջնորդութիւն Գրիգորի Երրորդի :

Էջ 130 · Գլ · ԺԹ · Առաջնորդութիւն Զաքարիայ, Պաթինեան մականուանելոյ եւ Թէթէոսի եւ Աբրահամու :

Էջ 137 · Գլ · Ի · Առաջնորդութիւն Իսրայէլի եւ այլոց մինչեւ յԱստուածատուր :

Էջ 145 · Գլ · ԻԱ · Առաջնորդութիւն սրբազան Ներսէս արքեպիսկոպոսի :

Էջ 156 Պրակ առանձին · Միահաղոյն ի մի վայր չարակարգութիւն առաջնորդաց Հաղբատայ :

Էջ 162 · Աւարտ պատմութեան Հաղբատայ :

Էջ 163 · Յաւելուած · Ծարակարգութիւն տասնորդաց ուխտին Սանահնի հանդերձ արձանագրութեամբ նորին ։ Յընթացս պատմագրութեան Հաղբատայ յինչ ինչ տեղիս յիշատակեալ մեր եւ վասն Սանահնի, որպէս եւ յարձանագրաց նորին ըստ հարկին պահանջման յառաջ բերեալ ի տեղիս տեղիս · · · ։

Յովհ · Ղրիմեցի իր այս գրութեան մէջ ի յայտ կը բերէ պատմագրի մը բոլոր յատկութիւնները ։ Յարգած է աւանդութիւնը, սակայն անոր երկրպագու չէ եղած ։ Ուսումնասիրած է պատմագրութիւնները, նկատած է ականատես եւ ականջալուր ծերունիներու տեղեկութիւնները, արձանագրութիւններու վրայ խոնարհած՝ ճշմարտութիւնը փնտռած, եւ ջանացած արժէքաւոր գործ մը ներկայացնել ։ Կ՚արժէր որ այդ գրութիւնը հրատարակուէր, ինչպէս լոյս ընծայուած է Ջալալեանի Ճանապարհորդութիւնը ։ Նիւթական պակասը արգելք եղած է, ինչպէս Տէր Յովհաննեանի վերոյիշեալ խօսքերէն կարելի է եզրակացնել ։ Անոր մէջ եղած արձանագրութիւնները հրատարակած է Բրոսսէ ։ Այդ՝ մեր գրութեան ընթացքին տեսնուեցաւ ։

# ՀԱՂԲԱՏԻ ԿԱԼՈՒԱԾՔՆԵՐԸ

Հաղբատի կալուածներու եւ հողերու մասին Յովհ. Ղրիմեցի կը գրէ՝ «Կալուածք Հաղբատայ կամ հող նորա ի բնէ անտի սեպհական նմա բովանդակապէս առեալ սահմանի ի հարաւոյ եւ յարեւլից կալուածովք գաւառին Ղազախու եւ ըստ մասին արեւելեան կողման դարձեալ կալուածովք Շինողայ, որ է գիւղ մեծ գաւառին Փօռչալուի: Ի հիւսիսոյ կալուածովք գիւղօրէից Ջոջկանայ եւ Արծահանքին, որ Ախթալայն կոչի: Իսկ յարեւմտից կուսէ կալուածովք Մարցայ եւ Ոռնակայ եւ Սանահնի գիւղից. եւս եւ կալուածովք Պղնձահանքին նորոյ, զոր Մադանն կոչեն:

Շրջապատ կալուածոյս Հաղբատայ ըստ ամենայն վերջին եզերաց նորա առեալ պարունակէ զտարածութիւն իբր չորեքտասան կամ հնգետասան ժամուց ճանապարհի հետեւակ մարդոյ որ է շրջապատեալ ըստ մեծի մասին ի գօտեաց բարձրաբերձ, անտառալից եւ ապառաժուտ

լերանց եւ ինքն իսկ այս կալուած դրեթէ բովանդակ բաղկանայ ի մեծամեծ լերանց եւ յանտառաց, ի ձորոց եւ ի ծործորոց, ի բլրոց եւ յառապարաց. ուստի սակաւ ուրեք տեսանին ի նմա սատ եւ անդ տեղիք ըստ ամենայնի հարթհաւասարք, բայց են ի նմա մարգաստանք յոլովք եւ անդաստանք իբրեւ չորս հազար օրավարաց եւ աւելի. թէպէտ որք վարինն յայժմ ի բնակչաց սակաւ են յոյժ, նաեւ յոլովք ի նոցանէ են ծածկեալք յանտառաց ի ժամանակս յամայութեան:

Բաժանի այս կալուած ընդհանրապէս յերիս դաւառակս կամ ի վիճակս: Առաջինն կոչի ի Հաղբատացւոց Սար, զոր մեք ի գիրս յայս կոչեմ Սարաւանդակ կամ Մարգագետին: Երկրորդն Հաղբատատափ լսի ի բնակչաց, զոր եւ մեք ի գործածեմք իբրեւ հարազատ բարբառ հայկական...: Իսկ երրորդն է մասն ձորոյն կոչեցելոյ ի նախնեաց Ձորոյգետ Սեւորդեաց կամ Սեւորդեաց ձոր, այլ եւ ձորն Ջրաղացից...» ապա մանրամասնօրէն կը խօսուի անոնց վրայ[1] (Թ. 239 էջ 15—22):

Հաղբատի վանքը, ինչպէս յատկապէս արձանագրութիւններէ կը տեսնուի, նուէր ընդունած է չարժուն եւ անշարժ ինչքեր ու կալուածներ: Հայ ու վրացի

---

[1] Հաղբատի վերաբերող Հաղբատաձորը ունէր դեղեցկատունկ այգիներ (Արարատ 1887, էջ 218):

արքունիքներու եւ ազնուական դասին նախասիրուած վանքերէն էր Սանահինի հետ: Նմանապէս հայ եկեղեցականին ու աշխարհականին սրտերուն շատ մօտ էր[2]:

Յովհ. Դրիմեցի կը գրէ. Բազում են յոյժ գիւղորայք այսպիսիք, եւ կալուածք, զորս ունէր յառաջին ժամանակս այս ուխտս հռչակաւոր, որոց իւրաքանչիւրոյն անուանք եւ հանգամանք եւ տեղիք հանդերձ անուամբ անձնիւր ընծայողաց նոցին թագաւորաց Հայոց եւ իշխանաց յոլովից, որպէս արքայից Վրաց եւս պատճէնք հրովարտակացն եւ ձեռագրաց իւրաքանչիւրոց նոցա գտանին արձանագրեալ միաժամի որոշակի ի հնագոյն ատուար մատեան յիշատակարանաց այսր մենաստանի ըստ վկայելոյ ծերունեաց ոմանց, որոց տեսեալ է զայն մատեան, որ արդէն չէ ի միջի» (Թ. 239 էջ 34—35): Շատ կարեւոր են այս խօսքերը, ո՛րքան շող ու լոյս պիտի սփռէր այդ մատեանը Հաղբատի պատմութեան վրայ: Շատ իրաւացիօրէն կարելի է խորհիլ թէ յափշտակողները (հողերու եւ գոյքերու) ջնջած են կամ այրած զայն, որպէս զի իրենց յափշտակութիւնը վայլել կարենան:

Բարեբաստօրէն արձանագրութիւններէն բաւական մեծ մաս մը դեռ փրկուած է

---

[2] Արղու խաթուն կը նուիրէ ծածկոյթ մը (Կիր. Թամ. էջ 111):

եւ ահա աւանդեմ քանի մը հատ միայն, գրութիւնս չծանրացնելու համար:

Ի ճակատ որմոյն մեծի տաճարին արտաքոյ արեւմտեան դրան, որ ի ժամատանէ յարեւելս. Ի ժամանակս ինքնակալ արքային Դաւթի Անհողին Գուրգենայ որդւոյ Բագրատունւոյ թագաւորին եւ Տիթվասան որդի Արասայ արքային եւ ամուսինն իմ Ռուսուդան գընեցի իմ հալալ ընչիւքն Ուքանի որդեացէն Անագէթն, Սամխուտն, Բաղէնքն, Բերդկայ. այգին, որ Ջրանցի արխի տակն է եւ Ծորթոլանց տունն եւ Աւէտն իւրեանց հայրենիքն գանձագին արարի եւ ետուն իմ սուրբ Նշանիս ընծայ եւ այլ արդիւնք. առաջնորդ հայր Սիմէաւն եւ միաբանքս սահմանեցին տարին երեք քառասունք կատարեն անխափան: Ով խափանէ կամ հանել հնարի յիմոց կամ յաւտարաց մասն Յուդայի եւ Կայենի առցէ, իմ մեղացս եւ ազգի մեղացն տէր է եւ մի տեսցէ զփառս Որդւոյն Աստուծոյ, իսկ կատարիչքն աւրհնին ի Տեառնէ, ամէն Թիւն ՆԽԵ (996)»: (Արարատ, 1886, էջ 551):

Արձանագիր կամարաձեւ փորագրեալ ի վերայ հիւսիսային դրան (Ս. Նշանի) արտաքուստ. Ի ՆԿԵ թուականի (1016) Ես Մուկն որդի Հոնովարս շնորհիւն Աստուծոյ նոր նորոգեցի զսուրբ Կաթուղիկէն, որ աւերեալ ի սաստիկ շարժմանէ եւ ետու

*ղաղարակ իմ գանձով գնած վասն... մեղաց թողութեան... եւ պարտին ինձ յամենայն տարի զՎարդավառին... քառասունք անխափան եւ որ պակասցնէ եւ հանէ նզոված է* (Թ. 239, էջ 45, *Արարատ* 1887, էջ 35, *Ջալալեան*, էջ 68, Brosset, էջ 3):

*Յաւագ տաճարին ի ներքս անդ ի վերայ հիւսիսային որմոյ նորա յարեւմտից դրան հիւսիսոյ. ի ՆՀ* (1021) *թուին Հայոց Ես Ապլղարիպ որդի Գրիգորոյ ետու զԱրծուերոյնն ի Հաղբատ գանձագին արարեալ վասն Յովանիսի արեւշատութեան եւ ինձ մեղաց թողութեան եւ պարտական են յամենայն ամի Բ. քառասունք առնել ինձ: Արդ եթէ ոք զիմ ուխտս խափանել ջանայ նզովեալ լիցի յամենակալ բերանէ Աստուծոյ* (Թ. 239 էջ 76, *Արարատ* 1886 էջ 489, *Ջալալեան*, էջ 75 *եւ* Brosset, էջ 26):

*Ս. Նշան աւագ տաճարին արեւմտեան դրան ճակատին վրայ, արտաքուստ. Ի ժամանակս ինքնակալին արքային Դաւթի բարեպաշտի եւ յաղթողի որդւոյ Գիորգեայ որդոյ Բագրատայ... որ տիրեաց գաւառս եւ ագինս... եղեւ խնամող Հաղբատայ եւ Սանահնի... ընթացեալ քաղցր եւ բարեսէր աստուածապաշտութեամբ... զՀաղբատս ի մթութենէ աւերութեանն ազատեաց, գրով եւ վճռով ընծայեաց ի սուրբ*

եկեղեցիս զայգիս ... զգիւղն ... եւ ամենայն հողով եւ վիճակովն ... զեղեալ կալուածս ամենայն վերահաստատեաց ... (Ով) ձեռնամուխ լինի կամ խափանէ նզովի ի բանէն Աստուծոյ եւ մի տեսցէ զփառս նորա ... գրեցաւ գիրս այս յարքեպիսկոպոսութեան ... առաջնորդի Հաղբատայ, որ է եղբայր Գրիգորի : : : : ի թուին ՇՀ (եւ այսքան, զի եղծեալ էր տառէն թուագիրն վերջին) (Թ. 239 էջ 35—36, Արարատ 1886, էջ 530, Brosset էջ 4. Համմտ. Մելիքսէթ-Բէկ, Վրաց աղբիւրները Հայաստանի եւ Հայերի մասին, Երեւան 1955, Գ. էջ 87):

Ի ճակատ դրան նշխարատան. Ի թուին ՈԻԸ (1179) յանուն Աստուծոյ ես Արամս որդի Համազասպայ յիշեցի զբազում յանցանս իմ եւ եղի զյոյս իմ ի սուրբ Նշանս եւ եկի կրաւնաւորեցայ աստ եւ ետու զիմ հայրենիք այգին որ առաջի էկեղեցւոյ ի դրատունս Հաղբատայ յիշատակ հոգոյ իմոյ եւ ետուն ինձ երկու ժամարար ի տաւնի սրբոյն Անտոնի: Արդ որ զիմ այգին յայսմ տանէս հանել ջանայ յիմոյ կամ այլ ոք զԿայենի եւ զՅուդայի նզովսն առցէ: Եւ ես Կուտս իմ հոգոյս պաշար զիմ այգին յայս դրատունս ետու: Ես Սիմարս զիմ այգին ետու եւ ես Սարգիս որդի Ջիւին զիմ այգին ետու: Ով հակառակի զմերոյգրեալ նզովսն առցէ (Թ. 239 էջ 65, Արարատ 1887, էջ 69—70, Brosset, էջ 16):

Ի ճակատ դրան դաւթին. Կամաւք եւ ողորմութեամբ Աստուծոյ հզաւրի եւ Միածնի Բանին եւ ամենասուրբ Հոգւոյն այս գիր արձանագրեցաւ կտակ մշտնջենաւոր յամս օծելոյ Աստուծոյ թագաւորաց թագաւորին Գորգեայ որդւոյ մեծի թագաւորին Թամարին, որոյ ժամանակս ես Աստուած ի ձեռս երկու հարազատացս Զաքրէի եւ Իվանէի զանփական դղեակն մեր զբերդն զչինեալն ի նախնեաց մերոց եւ զայլ բազում ամրոցս. արդ ես Մանդատուրթախուցէս Ամիր սպասալար Շահնշահ Զաքարիա որդի բարեպաշտ իշխանաց իշխանին որդւոյ Սարգսի ետու ի սուրբ ուխտս Հաղբատայ գեղօրայն զհայալչէն եւ զվանս եւ զի այս գեղերս հեռի էին ի Հաղբատայ, փոխեցի եւ ետու հայրենիք Դաւթի որդւոյ Շոթոռկայ եւ առի զգիւղն երկու փոխն զՀաղբ հայրենիքն եւ ետու ընծայ սուրբ Նշանիս Հաղբատայ ամենայն սահմանօք եւ նոցա բնական եղեալ է հողով եւ ջրով, խոտամարգերով, մայրիւք եւ ջրաղացով եւ գոմատեղիւ, լերամբ եւ դաշտով վասն երկար կենդանութեան թագաւորին եւ արեւշատութեան որդւոյ իմոյ Շահնշահի եւ եղբօր իմոյ Իվանէի եւ որդւոյ իւրոյ Աւագին եւ յիշատակ մեզ եւ ծնողաց մերոց եւ այս գեղ ազատ ամենայն հարկէ ի պարոնաց, ի ձեռնաւորաց, ի դալ աւա–

գայ եւ եդի լուծ ի վերայ սոցա այս, որ ի մեծ եկեղեցին զաւագ խորանին պատարագն յիմ Զաքարէի անուն մատուցանել յայամ հետէ որ թիւ Հայոց այս է ՈԾԹ (1210) մինչ զալուստն Քրիստոսի, եթէ հակառակլի ոք եւ զմեր յիշատակն խափանել ջանայ յիմոց կամ յօտարաց մեծ կամ փոքր Վրաց կամ Հայոց, ի Լաւռոյ տէրանց, եպիսկոպոսաց, ի քահանայից կամ աշխարհականաց կամ յայլոց[3] յետ առնէ զիմ պատարագն խափանէ նզովլի Ամենակալէն Աստուծոյ, աւանդօղ հոգւոյ նորա սատանայ (Ջալալեան, էջ 58—59, Թ. 239 էջ 37—38, Արարատ 1886 էջ 525, Brosset, էջ 6—7):

Յարեւմտեան որմն զաւթին, արտաքոյ· Կամաւք ամենակալին Աստուծոյ Հաւր եւ Որդւոյ եւ Հոգոյն սրբոյ ես Մխարգցել Ճահնչահ որդի Զաքարիայի եւ ամուսին իմ Նաղովդ դուստր աթաբէկ Սաթունին եւ մեք ըստ նախնեաց մերոց միաբանեցաք եւ տվաք... ՈՃ ապխտակ սուրբ Նշանխս մամայլին յամէն տարի եւ եկեղեցոյս նափորտանի եւ կանթեղք արծաթիք վասն արեւշատութեան Իւանէի հաւրեղբաւր իմոյ եւ որդոց մերոց եւ ծնողաց մերոց եւ մեղ եւ մեր խնդիրն այս է յեպիսկոպոսէս եւ միաբանացս, որ Վարդավառին

---

[3] Թ. 239 էջ 38 կամ Հայրատս· կան դեռ ուրիշ տարբերակներ:

շաբաթ աւրն նոցա եւ կիւրակէն ինձ ժամ առնեն ամէն եկեղեցիքս. կատարողքն աւրհնին յԱստուծոյ եւ խափանողքն դատի Քրիստոս Աստուած (Ունի շատ տարբերակներ այսպէս Նազովդ դուստր աթաբէկ Սաթունին կարդացուած է Աննա դուստրը Աթաբէգին Գրիգորոյ եւն եւն. Թ. 239 էջ 80, Արարատ 1886 էջ 526, Ջալալեան էջ 59 Brosset, էջ 31 եւ Mélg. Asiat. Bibl. d'Acad. impr. de sciences St. Pét. 1863 t. IV. ի. 618):

Այսքանը բաւ: Դեռ կան շատ մը արձանագրութիւններ, որոնք կը հաւաստեն տրուած նուէրներն ու նպաստները եւ դրուած փոխադարձ պարտականութիւնները:

Կալուածներն եղած են արգասաբեր եւ վարձահատոյց քրտնաթոր ճակատներու, զի ունէին առատ ջուր եւ առողջ կլիմայ: Անդաստաններու մէջ կը յաջողէին ցորենն ու արմտիքներ եւ բանջարեղէններ, իսկ անտառները լի էին զանազան ծառերով որոնցմէ ատաղձագործութեան յարմար փայտեր եւ տախտակներ կը պատրաստուէին: Գետերուն մէջ կը գտնուէին համեղ եւ առատ ձկներ (Թ. 239 էջ 29—34):

Հաղբատ ունէր նաեւ ընդարձակ թեմ: Օրբէլեանի վկայութեան համաձայն Յուրտաւայի Մովսէս եպիսկոպոսին թեմը կը ժառանգէ Հաղբատ (Պամ. էջ 105): Յովհաննէս Ղրիմեցի կը գրէ «Գլուխ ԺԴ.

*Թեմորայք Հաղբատայ եւ ճոխութիւն ըստ պատույ։ Յայտնի է բազմութիւն եւ ընդարձակութիւն Թեմից եւ վիճակաց ուխտիս Հաղբատայ մանաւանդ ի յետին դարուց։ Ականատեսք եւ ընթերցօղք մատենին յիշատակարանաց ուխտիս վկայեն զոլ արձանագրեալ ի նմին բովանդակ Թեմից եւ վիճակացն, զորս ի սկզբանէ եւ այսր ունէր այս մենաստան, բայց Թէ որչափ իցեն ճշգիւ չգիտեն ասել։ Վկայեն եւ ականատեսք հնագոյն ձեռագրին երից Թագաւորաց[4] Տփխեաց, Կախէթու եւ*

---

[4] *Երից Թագաւորներու կամ մեծամեծ կայսերաց այս Թուղթը հասած է մեր ձեռքը (Հրատ. Լումայ* 1898 *Ա. էջ* 260—264 *եւ Մեղու* 1860, *Թ.* 10)։ *Բովանդակութենէն եւ լեզուէն դատելով կեղծուած բան մըն է, սակայն Հաղբատի կալուածներու եւ Թեմերու համար արժէքաւոր։ Անոր մէջ կը կարդանք «Եւ այս երկու կաթողիկոսքն ընծայեցին յատուկ իւրեանց վիճակիցն բազում վիճակս ի ծառայութիւն մեծ վանիցն Հաղբատայ հրամանաւ եւ կամակցութեամբ բոլոր արքայիցն եւ մեծամեծ իշխանացն Հայոց եւ Աղուանից։ Բարսեղ կաթողիկոսին վիճակիցն Ալատեանցն Տաշիրն եւ ամբողջն Լօռի իւրեան բոլոր Թէմիւն, Բազանց տաղտն իւրեան բոլոր Թէմիւն, Խօրնուտակատն իւրեան Թէմիւն, Հայունեաց եւ Ծանկունեաց տախտն իւրեան Թէմիւն, Օձնու տախտն իւրեան Թէմիւն, Թիֆլիզ քաղաքն վերն Գօրի Սամշվէրդէն Դմանիսն եւ Բուղամու ձորն իւրեանց Թէմիւն, վերի Ցխեւլվան Թամարէշնն Զօրնիսն Զիխօրն Սամծուէրն եւ Մծօվրէթն իւրեանց Թէմիւն, Բրինձն Նարատէվն եւ այլն Սուրամն Ղօգիցին տաէնն Դեղումն. Կախէթն Շաքին Վարխոանն Զուրրաթի ծայրն, բոլոր Սումխէթայ տանն Նախէ դուռն, Ճապալայն Տալավէրն զոր ինչ Վրաց արքայի վիճակումն Հայք գտանին Գրիգոր Լուսաւորչու դատանութեամբն բոլորն Հաղբատայ ծառայօղ լինին. Վրաց արքայից Բագարատայ եւ Գէւորգեայ նուիրեալն այս է Ախալքալաքն Սամցխէն*

Ախալցխայ, թէ սոքա եկեալ յուխտ ի սուրբ Նշանս ընծայեցին ի վիճակս մենաստանիս իւրաքանչիւր զիւրեանց տէրութիւնս յորս էին Հայք բազումք: Ապաքէն անտարակոյս է թէ յետ չինութեան մենաստանիս յատկացան նմա ի Թագաւորաց այնր ժամանակի որպէս գիւղօրայք եւ կալուածք, նոյնպէս եւ թեմորայք, զոր օրինակ եւ Սանահնի ի Սմբատայ արքայէ: Նոյն ընդ թեմորայք նորա ապա սկսան ընդարձակիլ ի ժամանակէ անտի յորում այս մենաստան եղեւ եպիսկոպոսանիստ յաւուրս կաթուղիկոսութեան Գրիգորի Վկայասիրի եւ Թագաւորութեան Կիւրիկեայ արքայի Բագրատունւոյ, որ նստէր ի Լօռի...:

Յետ այնորիկ ապա ի հոլովիլ դարուց որպէս երեւի տասեալ եւս ընդարձակեցաք թեմորայք մենաստանիս, ուստի բովանդակ Վրաստան, այսինքն Տփխիս, Կախէթ, Թելաւ, Քարթուլ եւ այլք համօրէն իւրեանց վիճակօք եւ Իմէրէթ... եւ աշխարհն Գուգարաց, բաց ի գաւառէն Տաշրաց այսինքն

ի Մօզդին Սաջուախօն, Ջաւաէն, Իմէրէթ Զարզանուճն Բուլբուլեանն, Քօրուլեանն, Սվանտալէն Թատումն Ածողվէրն եւ այլ նորին վիճակքն մեծի Յովհաննու հրամանաւն եւ մեր Հայոց ազգս ետուք սրբոյ Նշանին Հաղբատայ վիճակն Աղուանից Տայօղն Գօրականն Զորադեղն, Կայեանն Կայեծօնն Աղէստաֆէն Խօջաբաղարն Մահկանն, Գաքէն Շամքօրն, Շաքեն եւ մերս թէմից Գուագէնն Բարամն իւրեան թէմիւն՝ Մանասն իւրեան թէմիւն մինչեւ ի Վօղամած իւրեան հրջակայ գիւղօրէիւքն չէնիւքն եւ անչէնիւքն... (Լումայ 1898 Մ. էջ 262—263):

Սոմխէթ որ Թարգմանէ Հայաստան, մասն գաւառին Պօռչալուի, եւ գաւառն Ղազախու այլովքն հանդերձ էին Թեմորայք եւ վիճակք Հաղբատայ ընդ արքեպիսկոպոսութեամբ առաջնորդի սորին մինչեւ յայս յետին դար: (Թ. 329 էջ 98—9):

Ափխազաց երկրին Հայերն ալ Հաղբատի առաջնորդին իրաւասութեան ենթակայ էին:

Դարեր յետոյ 1808ին «Իբրեւ եթող առաջնորդ Սարգիս զայս աթոռ (Հաղբատայ) հրաժարեալ առաջնորդութենէ առ հարկի, . . .Յովհաննէս արքեպիսկոպոս Ակնեցի միաբան սորոյ էջմիածնի որ առաջնորդն էր Տփխեաց յայնմ ժամանակի հաւանութեամբ ժողովրդեան ընդ իշխանութեամբ իւրով գրաւեաց զառաջնորդութիւն ուխտիս եւ յայնմ հետէ բովանդակ Թեմորայք սորա միացեալ ընդ աչրունի Թեմից եւ վանքն իսկ գլխովին համօրէն կալուածովք իւրովք անկան եւ են մինչեւ ցայսօր ընդ կառավարութեամբ կամ ընդ առաջնորդութեամբ առաջնորդաց առաքելոց ի սրբոյ աթոռոյ անտի էջմիածնի ի Տփխիս քաղաք[5], ուստի եւ այժմ

---

[5] Թիֆլիսի մէջ եւ անոր շրջակայքը կանգնուած են քանի մը «վանքեր»՝ Ս. Գէորգի, Փաշի, Ս. Սարգսի, Կուսանաց, Մակարայ, Բեթանիայի, Խօջավանք (Հմմտ. Օրբէլեան, Պատմ. էջ 378, Ջալալեան, Ճամբ. Բ. 58. 74, Արարատ 1911, էջ 118, Բանասէր 1903, էջ 356, Ծոցիկեան Արարատ–Կովկաս. Բ. էջ 274—275. Արեւելք 1890 Թ. 4471): — Մատուռ մը Բարալէթ գիւղի մօտ կոչուած է Ս. Ստեփանոսի վանքը եւ ուրիշ

Ներսէս սրբազան արքեպիսկոպոսն գոլով առաջնորդ Տփխեաց եւ համօրէն Վրաստանի եւ այլոց ընդ տեսչութեամբ նորա է եւ մայրավանքս ամենայն Թեմիւք իւրովք եւ ունի զսեպհական եկամուտ սորա առանձին առ-մարաւ առ ի պէտս շինութեան եւ նորոգու-թեան սորին եւ կառավարութեան» (Թ. 239 էջ 100) :

Այսպէս՝ կը տեսնուի որ դարերու ըն-թացքին Հաղբատ վանքը կը ստանայ շատ մը կալուածներ եւ հողեր՝ իր շրջակայքը եւ Գուգարքի մէջ. նաեւ կ'ունենայ առաջնորդա-կան Թեմ իր շրջակայքը եւ մինչեւ հեռաւոր տեղեր եւ անոնց մէջ ալ կալուածներ ու հո-ղեր, բայց նաեւ կ'ունենայ անոնց համար հարցեր ու խնդիր եւ շատերէն կը զրկուի, մինչեւ որ կ'իյնայ Թիֆլիսի եւ էջմիածնի իշխանութիւններուն ներքեւ :

Ինչպէս՝ Ղուկաս Կարնեցի կաթողիկոսը կ'արտայայտուի թէ Սանա՛ինցիներու եւ Հաղբատցիներու մէջ Թեմի տարածութեան եւ իրաւասութեան նկատմամբ կռիւներ ու վէճեր անպակաս եղած են (Դիւան Դ. էջ

---

մը Ախալքալաքի ձորին մէջ՝ Ծգնաւորի վանք (հմմտ. Լալայեանց Ե. Ջաւախք. Թիֆլիս 1897, էջ 31 եւ 261) : Ասոնց եւ դեռ ուրիշ քանի մը վանքերու մասին՝ այլուր, ինչպէս նաեւ (հայ—) յունական եւ վրական վանքերու (այսպէս՝ Պղնձահանք կամ Սպլինցահան վանքը, հմմտ. Ակինեան Հ. Ն. Սեմէոն Պղնձահանեցի եւ իր Թարգմանութիւնները վրացերէնէ, Վիեննա 1951, էջ 1). նկատմամբ (հմմտ. անդ էջ 31—32) :

209) ։ Անիկա իր տհաճութիւնը կը յայտնէ որ Թիֆլիսի Սահակաշէն Ս. Աստուածածին եկեղեցին Հաղբատի ենթարկելու համարձակողներ կան (անդ էջ 164) ։ Նոյն կաթողիկոսի օրով Սիմէոն Գեանջեցի վարդապետը կը ծրագրէ Լոռիի Ս. Յովհաննէս Օձնեցիի վանքը վերաշինել, սակայն անոր վրայ տարածած էին Հաղբատ եւ Սանահին իրենց իրաւասութիւնը, հետեւաբար անիկա կը ցանկայ որ վանքին վերաշինութեան եւ անկախութեան արտօնութիւնը շնորհելէ յառաջ կանխէ քննութիւն մը թէ ի՞նչ տուեալներու վրայ յեցած՝ այդ զոյգ վանքերը Օձնեցիի վանքին վրայ կը բռնանան (անդ էջ 205—11) ։

Նոյն մեծ վանքերը շատ կանուխէն իրարու հետ հողային հարցեր կ'ունենան եւ անոնք դարերու ընթացքին ալ կը շարունակուին (հմմտ. Աւետիք առաջնորդի խնդիրը)[6] ։ Նման հարց, ինչպէս նաեւ թեմական հարց, Հաղբատ կ'ունենայ Հաղարծին վանքի հետ եւ Սիմէոն ու Դաւիթ կաթողիկոսները մըտքերը կը հանդարտեցնեն վէճի նիւթ եղած վայրերու կէս առ կէս բաժանումով (Դիւան Դ. էջ 387 եւ Զ. 182—3. կալուածի ուրիշ հարց մը՝ հմմտ. անդ Ը. էջ 215—7) ։

Հաղբատի կալուածներուն եւ գիւղերուն շատ մեծ մասին կը տիրանան Պարաթեան

[6] Conybeare, Cat. Brit. Mus. էջ 302 ։

պարոնները, որոնց նախահայրը հողերուն սեպհականութիւնը ապահովելու համար քրիստոնէական հաւատքը կ'ուրանայ եւ Շահ Աբաս Բ.էն կը ստանայ յափշտակածները կամ գրաւածները։ Անոր ժառանգներու սպառումի պարագային անոր զարմէն Դաւիթի ընկերակիցը Սիմոն («յազգէն Օրբէլեանց») կը յաջողի նոյնպէս տիրանալ եւ ապա Զալբէկ (Թ. 239 էջ 42—51, Գլ. Զ. Ո՞յք իցեն պարոնք Հաղբատայ եւ զի՞րդ կալան եւ ունին զաէրութիւն ի վերայ նորա)։

Կալուածներու, բայց յատկապէս շէնքերու կարեւոր վնասներ կ'ունենայ Հաղբատ պատերազմներու, արշաւանքներու եւ աւերումներու միջոցին ու պատճառով, այսպէս՝ 1105ին, 1110ին, 1151ին, 1181ին, 1315ին, ԺԷ. դարուն, եւն եւն (Համմտ. Կիր. էջ 60, Արարատ 1886, էջ 451, 1915, էջ 880, Էջմիածին, ամսագիր, 1950, Է—Ը. 56—7)։ Երկրաշարժ մը 1668ին մեծ վնասներ կը պատճառէ Հաղբատի (Յակոբեան Վ. Ա. Մանր ժամանակագրութիւններ, Երեւան 1951, էջ 251)։

Հաղբատի հարուստ վանքը այս դարուս սկիզբը ունէր 2 այգի, 51 դեսիատին հող, 1500 դեսիատին ալ արօտատեղի եւ անտառ, որոնց համար դատի մէջ էր (Ազգ․ Հանդ. 1901 Է—Ը. էջ 419 եւ Նոր Դար 1896, էջ 153)։

Այս մենաստանին մուտքի մէկ աղբիւրն ալ էր Ս. Նշանը, զոր տարին երկու անգամ

*կը հրջեցնէին Ղազախի մէջ: Զայն Թշնամիէն ազատելու եւ ապահով պահելու համար կը դնէին Կայենոյ բերդին մէջ, բայց դերուած ու տարուած եւ վերստին ետ բերուած է* (*Արարատ* 1887 *էջ* 250—61 *եւ Նոր Դար* 1891, *Թ*. 153): *Անոր պահարանին Թիկունքին վրայ կայ «Ցետ աւերման աշխարհին Վրաց ի Պարսիկ տղայ Մահմատ խանէն ի Թուին Հայոց ՌՄԽԳ* – 1794) *հրամանաւ Ռուսաց կայսրուհւոյն Եկատարինէի ընդ զօրաց նորին եկի ի հայրենի աշխարհն իմ սակս օգնութեան եւ չոքայ ի երկրպագութիւն վանօրէիցն մերոց Հաղբատու եւ Սանահնու տեսի զամայու-Թիւնս նոցա եւ յափշտակութիւն սուրբ Նշանին Հաղբատու, ուստի կազմեցի զպա-հարանս եւ եդի ի սմա զիմ ճշմարիտ մասն ի կենաց փայտէն եւ զայլ մասունս սրբոց եւ ընծայեցի Հաղբատու սուրբ Նշանի վանից յիշատակ ինձ յելից ատի եւ նախնւոյն իմոյ Զաքարիա Ամիր Սպասալարին Հայոց եւ Վրաց, նաեւ ծնողացն իմոյ Շիօշ բէգին եւ պատրոն Բէթեւանին եւ իշխանազնեայ եղ-բարցն իմոց Մովսիսին, Բէժանին, Փարսա-դանին եւ բարեշաւիղ որդւոցն եւ դստերաց նոցին: Իսկ որ կարդայք յիշեցէք յաղաւթս զՍանահինեցի Երկայնաբազուկ Արղութեանց Յովսէփ արքեպիսկոպոս առաջնորդ Ռուսաց երկրի ամենայն Հայոց ազգին, Հիմնադիր երկուց քաղաքաց Նոր–Նախիջեւանի եւ Գրի-գորուպօլսու յամին Տեառն 1779ն, ի Թուին*

Հայոց ՌՄԽԶ, ի Մոսկով, ձեռամբ Դաւթի Մատուրեանի (Արարատ 1887, էջ 260)։

Ունէր դեռ ուրիշ մասունքներ, զորոնք յարգողները իրենց նուէրները չէին խնայեր։ «Ընդ մէջ դրանց խորանացն հիւսիսային գաւթի. ի թուին ԶԻԹ (1280) յիշխանութեան տեղւոյս Սաթունին եւ Պածած որդի Իլպարտի եւ ամուսին իմ Դուդայ յազգէ Մամիկոնենից միաբանեցաք սուրբ Նշանիս Հաղբատայ[7] եւ զսուրբ Գրիգորի Լուսաւորչին որ վկայաւք ստոյգ նորա ճկոյթն առ մեզ է նախնեւք գայն ի խնդրոյ եպիսկոպոսիս եւ սուրբ միաբանացս ընծայեցաք ի սուրբ կաթուղիկէս եւ այլ արդիւնս։ Տէր Յովանէս եւ միաբանքս սահմանեցին տաւն սուրբ Գրիգորի Ծակամըտին չարաթ աւրն եւ պշարաթ եւ զկիրակէն զամէն եկեղեցեաց պատարագն մեզ

[7] Աւետարանի մը Յիշատակարութեան մէջ կայ. «Զվերջին կազմող սորին Թ. ՊԽԶ (1397) ...բերաւ սա ի Կիլիկիոյ գաւառէն յաստուածապահ դղեկէն որ կոչի Մըլէվոն, ձեռամբ Յովանէս Նուիրակիս եւ կազմեցաւ սուրբ անապատս, որ կոչի Գուգարաց վանք ընդ հովանեաւ սուրբ Յովհաննէս Մկրտչին եւ մաւր լուսոյ Աստուածածնիս, աղաչեմ զի եւ սպասաւորքս սուրբ անապատիս զՍերովբ կրօնաւոր եւ զՄկրտիչ կրօնաւորն եւ զԿարապետ հարպետն եւ զայլսն յիշեցէք ի Քրիստոս (Նոտարք էջ 9—10, Խաչիկեան ԺԴ. դարի հայ. Ձեռ. Յիշատ. էջ 619)։ Հոս Հաղբատ կամ Սանահին չեն ակնարկուած, այլ Ս. Երկրի Գուգարաց վանքը (հմմտ. Անաստաս վարդապետի վասն վանօրէից Հայոց, որ յԵրուսաղէմ, էջ 6)։ Նշենք որ Պրոկոպիոսի վկայութեան համաձայն Յուստինիանոս «Նորոգեց Պետրիոս եւ Գուգարք կոչուած վանքերը» (Հանդ. Ամս. 1891, էջ 193)։

*տանեն ։ Եւ ետուն մեզ տուն եւ այգի, զինչ էլ մխարանից ։ Կատարիչքն աւրհնին յԱստուծոյ»* (Թ․ 239 էջ 66, *Արարատ* 1887 էջ 31, *Ջալալեան*, էջ 71 *եւ* Brosset էջ 17) ։

*Սադուն հոն կը դնէ Ս․ Բարթուղիմէոսի Աջը* (*Մաղաքիա արեղայ*, *Պատմ․* էջ 41) ։

*Հաղբատ վանքը դեռ կանգուն է ։ Կը պատմէ իր արդիւնաւոր անցեալը ։ Կը ծրագրէ՞ արդեօք Զարթօնք մը անապաստելի ։*

# ՍԱՆԱՀԻՆԻ ԵՒ ՀԱՂԲԱՏԻ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Հայաստանի վանքերն ու եկեղեցիները իրենց պատմութիւնը իրենց դռներու ճակատներուն, ներքին եւ արտաքին պատերուն եւ կամարներուն, ինչպէս նաեւ շրջապակերուն մէջ գտնուած շիրմաքարերուն վրայ մեզի ստէպ աւանդած են : Այս է՝ անոնք օժտուած են զանազան արձանագրութիւններով, որոնց մէջ յիշատակուած են անոնց շինութեան թուականները, իրենց յարակից պարագաներով եւ բարերարներով ու անոնց ըրած նպաստները, դարձեալ փոխադարձաբար ընդունած հողեր ու բարոյական բարիքները, մաղթանքները ու հակառակէն նզովքները : Անոնք նոյնիսկ իրենց սիրուն տառերով եղած են յաւերժագիրները գեղեցկութեան եւ դրաւչութեան :

Սակայն ինչպէս բնութիւնն ու մարդը թուղթին եւ գրքին երբեմն ակամայ եւ երբեմն ալ ուզելով՝ վնասած, այնպէս ալ՝ ժամանակի հոլովոյթի եւ թաւալումի ընթացքին արձանագրութիւններէ շատեր եղծուած ու ապականած են : Աղետալից դէպքեր եւ

երկրաշարժեր, թշնամիներու ասպատակութիւններ ու ատելութիւններ, նոյն իսկ տէրերու շահասիրութիւններ եւ անփութութիւններ քանի՛ քանի՛ վանքեր եւ եկեղեցիներ աւերակներու կոյտերու վերածած են, արձանագրութիւններ կրող քարեր հողերու տակ ծածկած, ցրած, աստին անդին տարած, ուրիշ շինութիւններու կառուցումին կիրարկած եւ կամ ոտքերու տակ մաշեցուցած՝ առանց խիղճ ընելու թէ ի՛նչ ծախքերով եւ ի՛նչպիսի նպատակներու համար անոնք կոկուած, քանդակուած ու գրուած են: Բայց բարեբախտօրէն գտնուած են անձեր, որոնք զանոնք գնահատած ու պահպանած են իբրեւ նախնիներու անդարձներ ու մասունքներ: Նմանապէս անձեր, — յաւէտ երախտապարտ մնալու ենք անոնց — որոնք յօգնութեան ու տաժանքի յանձնառու՝ այդ արձանագրութիւնները կարդացած են եւ զանոնք թուղթի ու մամուլի յանձնելով կորուստէ ազատած եւ հանրութեան մատչելի ըրած:

Սանահինի եւ Հաղբատ վանքերու արձանագրութիւնները կարդացած ու մեզի աւանդած կամ հրատարակած են.

1. Յովհաննէս Ղրիմեցի – Պատմութիւն հռչակաւոր վանից Հաղբատայ սուրբ Նշանին, թ. 239 Ձեռագիր Նոր Ջուղայի:

2. Բրոսսէ Մ. որ հրատարակած է վերոյիշեալին երկին մէջ գտնուած արձանագրութիւնները կցելով դիտողութիւններ (հմմտ.

Description des monastères Arméniens d'Haghbat et Sanahin. S. Pétersbourg 1863 :

3. Յ. Ոսկերիչեան Յ. — Թ. 513 Ձեռագիր Վիեն. Մխիթարեան Մատենադարանի (Հմմտ. Տաշեան Հ. Յ. Մայր ցուցակ Վիեն. Մխիթ. Մատ. էջ 984) Հրտ. Կռունկ Հայոց աշխարհի 1890, Գ. էջ 305 :

4. Ջալալեան Ս. Վ. Ճանապարհորդութիւն ի Մեծն Հայաստան, Տփխիս, Ա. 1842 եւ Բ. 1858 :

5. Երզնկեանց Ռ. — Հնախօսական տեղագրութիւն Հաղբատայ ... Վաղարշապատ 1886 (օղտուած եմ Արարատ ամսագրէն, 1886–8) :

5. Լալայեանց Ե. — Բորչալուի գաւառ (Ազգր. Հանդէս 1901, Է—Ը) :

7. Յարութիւնեան, Սանահին (Ազգր. Հանդէս 1898, Գ.) :

8. Քաջբերունի, Ճանապարհորդական նկատողութիւնք (Արձագանք 1884) :

9. Յովսէփեան Գ. արքեպ. — Նիւթեր եւ ուսումնասիրութիւններ հայ արուեստի եւ մշակոյթի պատմութեան, Ա. Պրակ Երուսաղէմ 1935 :

10. Ղաֆադարեան Կ. — Սանահինի վանքը եւ նրա արձանագրութիւնները, Երեւան 1957[1] :

---

[1] Կ. Ղաֆադարեանի այս կարեւոր գրութիւնը նաեւ յետադային Հ. Եղիազարեանի չահեկան յօդուածաշարքը «Էջմիածին» ամսագրի մէջ (տեսած 1958

11. Կոստանեան Կ. – Վիմական տարեգիր, ցուցակ ժողովածոյ արձանագրութեանց Հայոց, Պետերբուրգ 1913:

12. Եղիազարեան Հ. – Սանահին (Հմմտ. էջմիածին ամսագիր 1958):

Կոստանեանի հրատարակութիւնը, որ բաղձալի էր՝ թէ կատարեալ հաւաքածոյ մ'ըլլար, գժբախտաբար ունի բաւական թերութիւններ (հմմտ. Ղափաղարեան, Սանահնի վանքը... էջ 70) եւ յոյժ ցանկալի է հայ բոլոր արձանագրութիւններու լիակատար համեմատական հաւաքածոյ մը: Մենք կազմեցինք Հաղբատի եւ Սանահինի բոլոր արձանագրութիւններու քննական համեմատական լիակատար հաւաքածոյ մը, որ մեր այս գրութեան ամէնէն կարեւոր ու դժուարին մասը կազմեց, սակայն հրաժարեցանք անոր հրատարակութենէն Ղափաղարեանի վերոյիշեալ հրատարակութենէն վերջ՝ յուսալով որ ինչպէս Սանահինի արձանագրութիւնները այնքան բծախնդիր հրատարակութեան արժանացան, նաեւ Հաղբատի արձանագրութիւններն ալ լոյս կ'ընծայուին:

Արձանագրութիւններու ընթերցումը կարծուածին չափ դիւրին չէ: Յաճախ անոնք շատ դժուարին տեղեր գրուած են եւ բարձր

Օգտուէ, Թ. Ը) Սանահինի եւ անոր արձանագրութիւններու մասին՝ շատ ուշ տպուած ըլլալով, չեմ կրցած այս ուսումնասիրութեանս մէջ անոնցմէ հարկաւոր չափով օգտուիլ եւ անոնց վարկածներու նկատմամբ արտայայտուիլ: — Մանաւանդ Եղիազարեանինը՝ չափազանց ուշ:

*կամարներու վրայ, որպէս զի մարդուն ապականող ձեռքը դիւրաւ չմերձենայ, բայց դժբախտաբար աւելի ստէպ ցած ու աչքի զարնող տեղեր, որպէս զի աչքը տեսնէ եւ սիրտը յիշէ: Դարձեալ գրուած են իրարու շատ մօտ եւ կցուած տառերով եւ զարդերով, որով դժուարընթեռնելի: Ժամանակն ալ դրած է իր ապականարար դրոշմը, մարդուն ոտքն ու ձեռքը կատարած են իրենց աւերիչ դերը, մաշեցուցած, կոտրած, ու սրբած: Ուստի զանոնք կարդալու համար հարկ է ունենալ յոգնելու տրամադրութիւն, ուղիղ դիտաւորութիւն, ծանօթութիւն հնագրութեան, եւ հնախօսութեան, հմտութիւն պատմական անցքերու եւ անձերու:*

*Մասնաւորելով մեր խօսքը Գուգարքի վանքերու եւ յատկապէս Սանահին ու Հաղբատ մենաստաններու արձանագրութիւններու վրայ, կ'իւրացնենք Գ. Սարգսեանի սա խօսքերը.*

*«Կոստանեանցի կատարած աշխատանքը — Վիմական Տարեգիրը — Բարձրաքաշի (կը յաւելում Սանահինի եւ Հաղբատի) վիմագրութեան նկատմամբ որ եւ է արժէքից զուրկ է, որովհետեւ օգտուելով Ջալալեանից, հարազատ չէ մնացել սկզբնաղբիւրին, քմահաճ կերպով ուղղել է արձանագրութիւնները, կրճատել է դրանք, բաց է թողել ամբողջ հատուածներ եւ այսպիսով արժէքազրկել*

իր բերած նիւթը։ Ինչ վերաբերում է Ջալալեանի պէտք է ասել որ նրա վերծանութիւնները շատ սակաւ բացառութեամբ սխալներ եւ տարբերութիւններ ունեն վիմագրերի տեքստի համեմատութեամբ, մանաւանդ յատուկ անունների ընթերցման մէջ»[2] (Էջմիածին, ամսագիր, 1951, Թ–Ժ. էջ 40)։ Տարիներ առաջ Քաջբերունի Ջալալեանցի սխալներն երեւան կը հանէր եւ կը հաղորդէր թէ Հաղբատի ու Սանահինի մէջ իրեն ըսած կ՚ըլլան թէ Ջալալեան ինքը անձամբ իր յառաջ բերած արձանագրութիւնները չէ կարդացած։ «Այլ ուղղակի օրինակել է Շնողեցի Յարութիւն եպիսկոպոս Տէր Բարսեղեանի ձեռագրից, որ ինչպէս ասում են առնուած է Ղրիմեցի Յովհաննէս վարդապետի Ձեռագրից որ կազմել է վերջինս Եփրեմ կաթողիկոսի այս տեղ եղած ժամանակ» (Արձագանք 1884 էջ 628)։ Ղափադարեան ապացոյցներով կը հերքէ այս արտայայտութիւնը եւ կ՚եզրակացնէ «Ջալալեանց Ղրիմեցուց չի արտագրել իր արձանագրութիւնները, այլ ինքնուրոյն կերպով պատերից ընդօրինակել»․ (Սանահինի վանքը․․․ էջ 67)։ Իսկ Յովհ․ Ղրիմեցույ համար կ՚ըսէ «Աւելի հարազատ է մնացել արձանա–

---

[2] Հետեւաբար զգուշութեամբ եւ կասկածով մերձենալու է արձանագրութիւններու ընթերցումներուն եւ անոնց հարազատութեան (Հմմտ. Արձագանք 1888, էջ 645 եւ Mélanges Asiatiques... Bul. Acad. de S. Pétersbourg 1863, t. IV, p. 612)։

գրութիւնների բնագրին եւ քմահաճ կերպով կրճատումներ եւ միացումներ չի արել (անդ էջ 67)։

Սանահնի վանքի արձանագրութիւններէն ներկայիս ծանօթ են մեզի 189 հատ, որոնց ոմանց լուսանկարումով եւ ուրիշներու լոկ ընթերցումով քննական ու մասով մը համեմատական հրատարակութիւնը կը պարտինք Կ. Ղաֆադարեանի, որ ճիգ չէ խնայած իր երկը կատարեալ ընելու հնարաւոր սահմաններու մէջ (հմմտ. վերը)։

Այս հրատարակութեան վրայէն լոյս կ՚ընծայենք հետեւեալ արձանագրութիւնները, որոնց ակնարկութիւնը ըրած ենք իրրեւ տեղիք (մեր գրութեան մէջ)։

Թ. 1 Ի ՇԺԲ թուին (1063) Հայոց ի հայրապետութեան Տեառն Դէոսկորոսի, ի թագաւորութեանն Կիւրիկէի եւ Սմբատայ, ես Հրանուշ թագուհի դուստր Դաւթի արքայի, շինեցի զնշխարատունս եւ զեկեղեցիս եւ ետու զնորաշէնքս ի Սանահինս վասն իմ մեղաց թողութեանն եւ իմ եղբարցն արեւշատութեան։ Արդ առաջնորդ որ նստի ի Սանահնիս պարտական է առաջի Աստուծոյ, որ յիմ եկեղեցիս ժամ ինձ առնէ։ Եւ եթէ ոք զնորաշէնքն ի Սանահնէս հանէ կամ զիմ ժամն խափանէ, ի փառաց սուրբ Երրորդութեան. եւ յերեք սուրբ ժողովոյն նզովեալ լիցի անլուծելի (անդ էջ 187)։

Թ. 2. Եւ ի ՈԻԷ թուին (1178) ես Գրի-

զոր վարդապետ քուերորդի պատրոնացն նոր շինեցի զայգին եւ կանգնեցի զխաչս յառաջնորդութեան հայր Յովհաննիսի վասն յիշատակի նորա եւ ինձ, որք երկրպագէք յիշեցէք ի Քրիստոս Յիսուս: Եթէ ոք յետ մեր զայգիս հանէ յԱստուածածնէն նզոված է յԱստուծոյ եւ ի խաչէս (անդ էջ 188, ուրիշ մը 1197 Թուականէն, անդ էջ 111, Ջալալեան, էջ 16, Թ. 239, էջ 171):

Թ. 3. Ի Թուականիս Հայոց ի ՈԾԴ (1205) ի Թագաւորութեանս Վրաց Թամարին, ի յամիրսպասալարութեանս Զաքարի եւ Իւանէի եղբարց հարազատաց որդեց մեծին Սարգսի, ես հայր Յոհաննես զաւառաւ Խաչինէցի, եկել բնակեցա ընդ հովանեաւ սրբոյ Աստուածածնիս եւ շինեցի զհիւրատունս վասն փրկութեան հոգւո իմո եւ արեւշատութեն տէրանց մերոց Զաքարի եւ Իւանէի եւ էտու ի հիւրատունս զԿոշաձորին այգին ու զՈւռնազոմուց կէսն եւ կանգնեցի զխաչս: Արդ, որ զմեր ըղորդածն խափանէ դատի ի Տէ եւ կատարիչքն աւրհնեսցին ի Քրիստոսէ, ամէն (անդ էջ 183–4):

Թ. 4. Ի ՈԿԳ: (1214) Կամաւն Աստուծոյ ես Վասակ, որդի Սմբատայ, ետու յԱստուածածնիս իմ ամուսնոյն հոգւոյն Ափային ի Բերդիկ զՏիկնաքարին այգին եւ զփոքր այգին զԳորբոնոնք շինական յաղատ ի զԱրէսալմանց հաւղն ամէն չահ ու զէնով: Ով զիմ տուածս յԱստուածածնէս հանէ, ի սուրբ

հայրապետացն նզոված է եւ Յուդայի մասնակից: Ընկալաք մեք առաջնորդ սուրբ ուխտիս Փիլիպոս հայր եւ Գրիգոր վարդապետ, ամէն միաբանութս, զՎասակա խնդիրն եւ հաստատեցաք Ափային զամէն էկեղեցիքս մինչ ի կատա(րած) աշխարհի զվարդավառն, բարէկենդան կիւրակէ աւրն: Զունի ոք հրաման խափանել. ով յանդգնի զվ(երո)գրել նզովն առնու: Կատարողք դրոյդ աւրհնին (անդ էջ 122–3):

Թ. 5. Ի թվին ՈՁԳ (1234) Ես Աբրահամ վարդապետ, աշակերտ Ածնիս, ետու յԱծածինս զիմ Թագաւորական եւ զտրունական սուրբ նշանս մեծածախ պահարանով եւ զիմ մատնարկն, որ բազում աշխատութեամբ շինեցի ի գրատունս: Ընգալա ես Գրիգոր վարդապետ, առաջնորդ Սանահնիս, ամէն միաբանութս հաստատեցաք սուրբ Յակոբա կիրակին տաւն սուրբ նշանիս եւ զամէն եկեղեցիքս զպատարագն Աբրահամ վարդապետին առնել մինչ ի կատարած աշխարհի: Արդ որ զսուրբ նշանն յեկեղեցոյս հանէ զայգին ի գրատանէս եւ կամ զայս տաւնս խափանէ Յուդա եւ սատանա է առաջի Աստուծոյ եւ կատարողքն աւրհնած են յԱստուծոյ եւ սրբոց նորայ: Ի յայս ժամէս որ գրած է Գ պատարագ Նանաին արարէք վասն Աստուծոյ (անդ էջ 161–2):

Թ. 6. Թվ. ՈՀ (1221) Ես Հասան եւ Վախախ ամուսին իմ տվաք ի Սանահինս ի

Ծաղերոյն զՇատարեւանք ամէն չահով մին աւրավար հող: Եւ տէ Յոհանս, միաբանքս տվաք յերեւման խաչի զամէն եկեղեցիքս պատարագել: Ով խափանէ դատի յԱստուծոյ (անդ էջ 133):

Թ. 7. Ի Թուին ՈՀԸ (1229) Անուամբն Աստուծոյ ես Համլիկ, որդի Սմպատա, յազգէ Համազասպանց, ետու մեծաւ յուսով յԱստուածածինս զԿոկուաչէն իւր եռան-դամբ, մին արտ եւ Լմն հող ի Կարմիր քարէն: Ով զայս որ տուեր եմ յԱստուածած-նէս հանէ Յուղաի եւ Կաենի նզովիցն տէր է, նզովս առցէ յԱստուծոյ ամէն սրբոց: Եւ Գրիգոր վարդապետ առաջնորդ Սանահնիս, միա(բա)նաւք ընկալաք զՀամլկան ընծայս եւ հաստատեցաք նոցա զամէն եկեղեցիքս պա-տարագ Բ աւր Յոհաննու յախնայքն, չարաթն աւրն Համլկան, կիրակէին Մամքանա: Ով խափանէ զվերոգրեալ նզովս առցէ, որ կա-տարէ աւրհնի յԱստուծոյ (անդ էջ 130—131):

Թ. 8. Կամաւն Աստուծոյ, ես Դուղա, մայր Վահրամա եւ Քրդին, միաբանեցա Աս-տուածածնիս, էտու արդիւնս: Առաջնորդ սուրբ ուխտիս Աւէտիս վարդապետ եւ միա-բանքս տուաք նմա Բ պատարագ ի տաւնի աւրհնին յԱստուծոյ: Ի ՈՁԹ (1240), (անդ. էջ 132):

Թ. 9. Ես ամիրսպասալար Մխայ․գրձէլս, որդի Շահնշահի, յայս ժամ զիս սարրդամից արար եւ զերկիրս յաւր եր էկի վանքս ու

զտեղս անմարդ գտաք որ ի մուհասլաց, եւ առաջնորդէ եւ այլ հարկէ աւերած էր եւ էկեղեցիքս փակած: Ես զայս խաւարս տեսաք, մահու չափ տրտմեցաք, յաւագ զատկին զվ(ար)դ(ապետն)երն ի քաշ են արարել եւ այլ նախատինք: Եւ արդ ես ամիրապատլար Մխարգրձելս եւ Թագաւորացն ամուսին իմ Վանենի, ուխտ դրաք Աստուծոյ եւ Աստուածածնիս եւ մեր պապերէ զմեծ արձանս փորեցաք եւ զեկեղեցիքս ամեն հարկէ ազատեցաք, յայսմ հետէ ոչ մուհասիլ եւ ոչ այլ հարկահան Սանահինս չմտանէ: Եւ այս բանիւս կարացաք զմխար(ան)քս յետ ժողովել եւ հաստատեցաք որ էթէ մեք կամ եղբարց մեր կամ ազգէ կամ վանեցո հայր կամ այլ ով էք խափանել ջանա, ի Աստուծոյ դաւանութենէն որոշել լիցի — անձին ընդ Նեռին, ընդ Յուդաի, ընդ խաչահանուն, ընդ հերձւածողսն, ընդ Արիոսի անիծել լիցի, զէդել ուխտս մեր խափանէ: եւ արդ առաջնորդ սուրբ ուխտիս հայրս Կիրակոս միաբանքս աստուածասէր պարոնացն զհոգեւոր պարգեւիւքս հաստուցաք յանուն մեր: Ենաւք Պ... ես (անդ էջ 125. Ջալալեան էջ 22 շատ տարբեր ընթերցում ունի, վերջին տողը կը կարդայ Պարգեւս հաստատեցաք, Թուին ՉԽԹ (այս է 1300): Կիրակոս ստէպ կը յիշուի արձանագրութիւններու մէջ հմմտ. Ղափադարեան, անդ էջ 108, 152, 153, 154, 157, 160 եւ 162):

Թ. 10. ՋԿԹ (1520) Կամաւն Աստուծոյ ես Աղէս չինեցի զջաղացն Անկիպճկի, տվի վախմ սուրբ Աստուածածնիս յիշատ(ա)կ հոգո իմոյ: Ես Դաւիթ արեղայս, թոռն պր. Աղին, որդի պր. Սօլաղին ... յետոյ նորոգեցի զջաղացն յիշատակ հոգո իմո եւ ծնաւղաց իմոց, ամէն. Առաջնորդութեամբ Ղուկաս արհեպին (անդ էջ 145):

Թ. 11. Կամաւ Աստուծոյ ես Թումանի որդի Մանուչարս նորոգեցի եկեղեցիս, իսկ հայրն Սարգիս եւ միաբանք ուխտիս հաստատեցին զատկի պատարագն յիշատակել ինձ եւ ամուսինն իմ Մարիամ անխափան: Թվ. ՌՃԵ (այս է 1656, անդ էջ 150–1):

Թ. 12 տես անդ էջ 136–7 եւ Ջալալեան, էջ 31, Թ. 239 էջ 184 Բրոսսէ էջ 66):

Թ. 13. տես անդ էջ 175 եւ Թ. 239 էջ 184 ու Բրոսսէ 67):

Տառերու եւ գրութեան ձեւերու մասին Ղափադարեան կը գրէ «Սանահնի վիմական արձանագրութիւնները լաւ չեն պահպանուել եւ մեծ մասամբ դժուար են կարդացւում:

Գծագրական ոճի տեսակէտով Սանահինն եւ Հաղբատը խիստ կերպով ինքնուրոյն են եւ շատ են տարբերւում Շիրակից, Արագածոտնից, Սիւնիքից եւ Կոտայքից: Արձանագրութիւնների ոճով Սանահինն ու Հաղբատ միմիանց հետ մի ամբողջութիւն են կազմում եւ միեւնոյն դպրոցի կենդրոններ են հանդիսանում: ...Արձանագրութիւնների

գրերն ուղղաձիգ են, Նրանց ձախակողմեան ելուստները ուղիղ… Գրերի ստեղները մի– մեանց հետ միանում են կանոնաւոր եւ գեղե– ցիկ կիսաշրջան կամարով։ Գրերի լայնքը զուսպ է, բայց գրեթէ ամենուրեք հասկնալի։ …Հազուադէպ են կրկնակի ապաթարցով կրճատուած բառերը։ Սանահինի ինչպէս նաեւ Հաղբատի եւ Լոռւայ արձանագրու– թիւնների մէջ նկատելի է գրերի ձեւերի միօրինակութիւն գրեթէ երեք հարիւր տարիների ընթացքում» (անդ էջ 72–3)։ «Սանահնի բոլոր 189 արձանագրութիւննե– րից իրենց վրայ թուական ունեն 90ը»․ (անդ էջ 73)։

Յովհաննէս Ղրիմեցին Հաղբատի արձա– նագրութիւններու մասին սա կարեւոր տե– ղեկութիւնները կը հաղորդէ․

«Հանդամանք արձանագրութեանց եւ նոցունց գաղափարութեան եւ որ այլ ինչ ինչ գիտելիք․

Եւ արդ թէրեւս հեչտին իմն թուեսցի որոց են անփորձ անսխալ վերծանութեամբ գաղա– փարումն արձանագրաց, բայց է ստուգապէս մի ի դժուարին եւ ի տաժանաւոր գործոց, որոց կամք իցեն գաղափարել զայնս անվրէպ ստուգութեամբ, եւ ոչ վեր ի վերոյ հայեցիւք․ որպէս եւ տեսանեմք արդիս զոմանս, որոց գաղափարեալ արձանագրութիւնքն զորս ունիմք առ մեզ են լի անհամար սխալանօք։ Վասն զի մեծ մասն արձանագրութեանց են

յայնպիսեաց անտի, որոց տառք են իբր ի բազումս խորթք եւ անհեթեթք, եւ անսովոր աղխաղխութեամբ ընդ իրեարս զնշանակութիւն բառիցն վայրապար խրթնացուցեալ: Այլ եւ յոլովից ի նոսին տառք եւ բառք ոմանք յիւրաքանչիւր տողս, որպէս եւ բազում ուրեք ամբողջ իսկ տողք են եղծեալք եւ աղաւաղեալք, է որ ըստ բոլորովին, եւ է որ ըստ մեծի մասին: Եւ ոմանց արտաքին մակերեւոյթք այնչափ են քերեալ եւ մաշեալք մինչ հազիւ յետ ընդ երկար զննութեան ընդ տեսութեամբ աչաց գալ տառիցն եւ որ զարմանալին է, այլապէս երեւիլ հայիլ անդ ի նոսա լուսով արեգական եւ այլապէս լուսով ճրագի: Դարձեալ այլազգ յորժամ շառաւիղք լուսոյ արեւուն կամ ճրագի ուղղակի ի նոսա հարկանին եւ այլ եւ այլ ձեւով, յորժամ կողմնակի յաջմէ կամ ընդ յահեկէ: Ի սոցունց սակի են եւ այնք յարձանագրաց որոց մակերեւոյթք ըստ մասին կամ ըստ բոլորին իսկ առ հասարակ են ծակոտեալք եւ փոսորարկեալք ըստ օրինակի ոսկերչացն խորոփեաց· որպէս եւ այլոց բազմացն գլխովին մամռակալեալք կամ ծածկեալք քարանման կարծրացեալ մամռովք: Եւ եւս զատն արձանագիրք ինչ, որոց մակերեւոյթք դարձեալ գոլով կակղացեալ կամ լուծեալ յանձրեւոյ թափանցելոյ ի նոսա յորմէ եւ ըստ մասին ինչ եղծեալ, ի չօշափելն իսկ եւ իսկ փխրեցան եւ այլքն ի մնացորդ տառից: Զոր օրինակ դի–

պաւ ինձ յարձանագիրս ինչ մեծի գաւթին կամ ժամատանն, զի նախ ընթերցեալ եւ գաղափարեալ ըստ կարի ապա կամեցեալ լաւագոյն եւս վերծանել մատեայ սանդխովք ի սրբել եւ ահա ջնջեցան տառք յորս թափանցեալ էր անձրեւոյ :

Ուստի գործ մեծ է դայապխի եւ դայաչափ աղաւաղեալ եւ խառնափնդորեալ արձանգիրս ըստ ամենայնի անվրէպ իսկութեամբ գաղափարել եւ պահանջի աշխատասիրութիւն եւ փոյթ մեծ առ անձանձիր երկայնմտութեամբ հասու իսկական նշանակութեանց բառիցն լինել եւ տառանիշ գծից : Թողում ասել թէ եւ որոց միանգամ գործ է ընթեռնուլ եւ օրինակել դայապխի արձանագիրս պարտ է ունել գէթ զչափաւոր ինչ տեղեկութիւն պատմութեանց եւ ժամանակագրութեանց, որ որչափ նպաստս սովոր է ընծայել լուսաւորեալ զմիտս առ իմացումն խրթնացեալ եւ անյայտացեալ նշանակութեանց բառից եւ իմաստից այնչափ ընդհակառակն պակասութիւն նորա կարէ առաջնորդել ի սխալումն :

Այլ իմ ջան եղեալ ամենայն իրօք առ անվրէպ ստուգութեամբ գաղափարել զիւրաքանչիւր արձանագիր յանձին կալեայ զաշխատութիւն յոլով, բազում անգամ հայելով ի մի եւ նոյն արձանագիր աղաւաղեալ եւ դըժուարիմաց եւ անխոնջ երկայնմտութեամբ զննելով զիսկութիւն իմաստից թագուցելոց,

*գիտելով չափ թէ այսպիսի արձանագրութիւնք հնոց որչափ են յարգի, այնչափ ունին պէտս անվթար ստուգութեամբ գաղափարութեան, ապա թէ ոչ կորնչի նոցին յարգութիւն կամ գէթ նուազի:*

*Եւ առ ի յաճախել ըստ կարի զարձանագիրս յայս վէպ կամ յօրինել զարձանագրական տեղեկութիւնս եւ միանգամայն ի ստորագրել զզանազան մատունս սփռեալս աստ անդ, աշխատասիրեցաք ոչ սակաւ շրջելով ստէպ նաեւ ի բացակայ վայրս կալուածոց Հաղբատայ ի լերինս եւ ի բլուրս, ի ձորս եւ ի ծործորս, յորս գոյին մատունք եւ խաչարձանք եւ արձանագրութիւնք ի նոսա: Սակայն եւ զբաղումս ի բաց թողաք յարձանագրութեանց անտի, որք միանգամ անպիտանք էին կամ եղծեալք ըստ մեծի մասին եւ կամ անվերծանելիք մեծագոյն մասամբ: Եւ եթէ թիւ բովանդակ արձանագրաց Հաղբատայ աւելի քան զհարիւր թող զհամառօտ զմխարառ տապանագիրս: Թող եւ զՍանահնի եւ զայլոց տեղեաց արձանագրութիւնն, զորս ուրեք ուրեք յընթացս գործոցս յառաջ բերաք եւ յորոց զմեծ մասն եղաք ի կարգս առաջնորդաց նորին Սանահնի: Սակայն զարձանագիրս Սանահնի զբովանդակն չեղաք ձեռնհաս անձամբ գաղափարել կամ սրբագրել, վասն որոյ եթէ թերութիւնք ինչ կամ վրիպակք յօմանս ի նոցանէ յայտնեսցին, հայցեմ ներողամիտ լինել:*

Իսկ եւ արտաքոյ արձանագրաց առ լրումն գործոյս հարկեցաք քաղել ինչ ինչ տեղեկութիւնս եւ ի զանազան պատմագրաց եւ հնագոյն յիշատակարանաց, նաեւ յարժանահաւատ ծերունեաց ոմանց եւ անձանց, որք միանգամ ունէին զտեղեկութիւն իրաց եւ անցից Հաղբատայ կամ ականատեսք գոլով կամ յականատեսից լսելով յորոց ի պատմութեանցն քաղեցաք ինչ ինչ կարեւոր որչափ մարթացաք եւ եղաք յայս գիրս իւրաքանչիւր իսկութեամբ, առանց ինչ աւելադրութեանց յանձնէ:

Գիտելով իմ քաջ թէ կարի իմն ախորժական եւ զուարճալի եղիցի բազմաց նաեւ իսկատիպ պատկեր հռչակաւոր ուխտիս, փոյթ կալայ նկարել եւ զկրկին պատկերս սորա ընդ որս եւ զպատկեր Սանահնի Ամենափրկչին եւ զպատկեր եւ զձեւագրութիւն նախնաչէն բերդին Կայենոյ իւրաքանչիւրսն պահելով ըստ կարի զհամեմատութիւն մասանցն ըստ պահանջելոյ կանոնաց նկարչութեան, զորս եւ ի ձեռն հմտագոյն նկարչի ուղղագոյն եւ յստակագոյն նկարեալ եդաք աստէն ի զուարճութիւն տեսողաց:

Առ պահելոյ զյարգ արձանագրաց հոգ յանձին կալաք զիւրաքանչիւրն ըստ իւրեանց բուն եւ իսկական տառից գաղափարել եւ դնել յայս գիրս, այսինքն զտառս զայս երկբարբառս, զի գործ ածեալն ի նախնեաց ոչ փոխելով ի օ են: Այլ ուր ուրեք յաւելեալ

էին տառք ինչ ի համառօտութեան սակս, որ դոն ի Թուակ կամ ի Թվ. ի Թ. Հ. Գրիգորո, Հաղբատա, եկեղեցո կամ եկեղեցոյ եւն, այսպիսի ամբողջ եւ բացայայտ նշանագրել պատշաճ դատեցաք. այսպէս ի Թուականի կամ ի Թուին, ի Թուին Հայոց, Գրիգորոյ, Հաղբատայ, եկեղեցւոյ եւն: Դարձեալ յարձանագիրս անդ ուր ուրեք ի տողամէջսն պակասէր բառ մի եւեթ առ եղծեալ գոլոյ ի սպառ, եդաք ի տեղւոջն կէտս երեք, իսկ ուր պակասէին բառք երկու կամ աւելի եւ կամ ամբողջ երկու տող եդաք կէտս չորս: Թուականքն իւրաքանչիւր արձանագրաց քանզի էին Թուականք Հայոց, կարեւոր դատեցաք առ իւրաքանչիւրսն յաւելուլ ի մէնջ եւ զփրկչականն...» (Թ. 239 էջ 3–7):

Յովհ. Ղրիմեցիին Հաղբատի աձանագրութիւններու մասին այս էական հարցեր շօշափող տողերուն վրայ կը կրկնեմ բաղձանքս եւ մաղթանքս որ՝ Հաղբատի վանքի արձանագրութիւններն ալ Սանահնի վանքի արձանագրութիւններու բախտին արժանանան եւ շուտով հրատարակուին լուսանկարներով, կարդացուելով եւ համեմատուելով[1]:

---

[2] Հմմտ. Ղաֆատարեան, Յովհաննավանքը եւ նրա արձանագրութիւնները, Երեւան 1948 «Ցառաջարանի փոփարէն»:

# ՑԱՆԿ ԱՆՈՒՆՆԵՐՈՒ

## ՈՒՂՂԵԼԻՔ

| Էջ | Սխալ | Ուղիղ |
|---|---|---|
| 17 | Ս. Սարգսեան | Գ. Սարգսեան |
| 27 | 1857 | 1957 |
| 50 | Թուսուդանս | Թուսուդանս |
| 106 | Ղրիմեցի | Ղրիմեցիի |
| 114 | Վարդան Բ. | Վարդան Ա. |
| 136 | Եզանս | Եդանս |
| 138 | Էփէկենց | Փէփէկենց |
| 211 | Զաքարէի | Ջաքարէի |
| 214 | Յովհաննէս Ա.[1] | Յովհաննէս Բ. |
| 223 | Յովհաննս | Յովհաննէս |
| 228 | Արդադեղին | Աքաւթարար Արեղադեղին |
| 251 | Ոչ եմ | ոչ եմք |
| 258 | 6677–96 | 677–79 |
| 311 | Սեմէոն | Սիմէոն |

---

[1] Հաղբատի եւ Սանահինի Յովհաննէս անուն առաջնորդներու յաջորդութեանց եւ գործունէութեանց մէջ շփոթութիւն կայ (էջ 100–22, 201–40). փարատելու համար հմմտ. Աճառեան Հ. Անձնանունների բառարան Գ. հատ. էջ 573–616 եւ Յովսէփեան Գ. արքեպ. Նիւթեր եւ ուսումնասիրութիւններ... պրակ Ա. էջ 61–75)։

